# ՖԱՈՒՍՏ

## ԹԱՏՐԵՐԳՈՒԹԻՒՆ ԿԷՕԹԷԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
ՄԵՍՐՈՊ ՆՈՒՊԱՐԵԱՆ





ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՔԷՇԻՇԵԱՆ
ԶՄԻՒՌՆԻԱ
1909


ՈՂԲԱՑԵԱԼ
ԲԱՐՍԵՂ ՔԷՇԻՇԵԱՆԻ
(«Արշալոյս»ի տնօրէնատէր)
ՍԻՐԵԼԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ
կը նուիրեն եղբայրները
ՏԻԳՐԱՆ ԵՒ ՍԱՐԳԻՍ ՔԷՇԻՇԵԱՆ

# ՖԱՈՒՍԹ

## ԹԱՏՐԵՐԳՈՒԹԻՒՆ ԿԷՕԹԷԻ

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԵՂԻՆԱԿԻՆ

Ժան-Ուօլֆկանկ Կէօթէ Գերմանացի մեծանուն հեղինակը Ֆրանքֆորթ-Սիւր-Լը-Մէյնի մէջ 1749ին ծնած և Ուէյմարի մէջ մեռած է 1832 Մարտ 22ին։ Իր ընտանիքը թէև հարուստ և պատուաւոր՝ այլ ազնուապետական դասի չէր վերաբերեր։ Լէյբցիկի մէջ իրաւագիտութիւն սորվելով՝ Սթրազպուրկ քաղաքը վարդապետութեան աստիճան առաւ։ Թէև փաստաբանութեան սահմանուած՝ այլ Լէսինկի գըրուածներէն խանդը վառուած բորբոքուած՝ նախամեծար սկսեց գրականութեան նուիրուիլ։ Նախ և առաջ Կէօձ տը Պերլիխինկեն թատերգութիւնը հրատարակելէ վերջը՝ 1774ին Վերթերի վէպով նշանաւոր եղաւ՝ զոր սիրահարութիւն մը ներշնչած էր իրեն։ Այս վէպը որ ԺԸ դարու թուլցած հոգիներուն վիշտերը նկարագրելով՝ Գերմանիոյ այն ժամանակուան բարոյական վիճակն ընթերցողին առջև կը պարզէ, մեծ ընդունելութիւն գտաւ թէ՛ Գերմանիոյ և թէ՛ ընդհանուր Եւրոպայի մէջ։ Վերթերի վէպին հրատարակութեան վրայ՝ Շարլը-Օկիւստ Վէյմարի երիտասարդ դուքսը՝ մեր հեղինակն իր պաշտպանութեան տակ առաւ։ Նախ դեսպանատան խորհրդական անուանուելով՝ յետոյ առանձին խորհրդոյ անդամ կարգուեցաւ։ Այս ծանր պաշտօններու զբաղելով հանդերձ՝ Կէօթէ հետզհետէ շատ մը տարբեր գործեր հրատարակեց.

որոնց մէջ նշանաւոր են Քլավիկօ, Ստելլա, Իֆիժենի ի Թորիս, Թասսոյ, Էկմոն կոմս թատերգութիւնները, Ուիլհելմ Մէյսթեր վէպը, Հերման եւ Տօրոթէ քերթուածը, Բոյսերու կերպարանափոխութիւնը, Հռովմէական Եղերերգութիւնները և վերջապէս 1898 ին Ֆաուստ թատերգութիւնը, փիլիսոփայական և կրօնական երկասիրութիւն՝ ուր հեղինակին իր զգացումները, մտախոհութիւնները և սրտի ներքին պայքարները կը պարզէ, և որմէ վերջը ոչ ոք համարձակեցաւ իրեն հետ մրցիլ: Մինչդեռ գերմանական հայրենասիրութիւնը մեծ պայքարի մը կը պատրաստուէր Գաղղիոյ դէմ, և ամէնքը ի զէն կը վազէին՝ նա հանդարտօրէն կը հրատարակէր Ընտրական Ցանկութեանց վէպը և իր յիշատակարանները՝ Ճշմարտութիւն եւ Բանաստեղծութիւն խորագրով: Իր ցուցուցած անտարբերութեան չնայելով՝ Վէյմարի դուքսը 1815 ին պետութեան պաշտօնեայ ընտրեց զինքը: Կէօթէ մինչեւ 1828 այդ պաշտօնով մնաց: Թէեւ բաւական տարիքն առած՝ այլ դարձեալ մէկ շատ գործեր հրատարակեց. Արեւելեան Դիւան (1819), Ուիլհելմ Մէյսթերի շարունակութիւնը, Ֆաուստի երկրորդ մասը (1829), սիրուն բանաստեղծութիւններ և ֆիզիքական գիտութեանց այլ և այլ ճիւղերու վրայ բազմաթիւ յիշատակարաններ: Այս ամէն երկասիրութիւններէն վերջը՝ մեռաւ Կէօթէ Վէյմարի մէջ՝ 83 տարեկան և առանց ցաւ մը քաշելու: Գարնան առաջին օրերն էր, տեսնելով որ պատուհանին վարագոյրները լոյսը կ'արգիլէին՝ մեր պոէտը՝ տխրած՝ զանոնք մէկդի քաշել տուաւ՝ ըսելով. «Լո՜յս, միշտ աւե՜լի լոյս»: Ասոնք եղան ահա Կէօթէի արտասանած վերջին խօսքերը, այն վեհ ու մեծ մարդուն՝ որ միշտ աշխատած էր լուսագոյն եւս տեսնել ու հասկնալ, և որու բուռն ու անյագ հանճարը՝ խանդի իշխելով՝ ջանք դրած էր յաւէտ ճանչնալ զաշխարհ համաձայնիլ՝ որչափ կարելի է՝ ընդարձակ բնու-
ան հետ:

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ֆաուստը Հայ ընթերցողաց առջեւ դնելէ յառաջ՝ կարեւոր կամ մանաւանդ թէ անհրաժեշտ կը համարինք սոյն անմահ ու եզական թատերգութեան պատմութեան, պարունակած իմաստներուն և ունեցած գրական բարձր արժէքին վրայ ընդհանուր գաղափար մը ընծայել՝ Ժերար տը Ներվալ Գաղղիացի գրագէտին՝ որու ընտիր և գերազանց թարգմանութիւնը մեզ առաջնորդ բռնած ենք, հրատարակած կրկին յառաջաբաններէն կարեւոր և ի հարկէ փոքր ինչ երկար քաղուած մը ընելով, և՝ ամփոփ կերպարանք մը տալու համար՝ որոշ յատակագծի մը վրայ ի մի ձուլելով զանոնք։ Այս յառաջաբաններէն մին Ժերար տը Ներվալի թարգմանութեան առաջին տպագրութեան կը վերաբերի, միւսը՝ երկրորդ տպագրութեան։ Իսկ չորրորդ տպագրութեան մէջ տեսնուած մէկ նոր յառաջաբանէն՝ որու գլխաւոր նպատակը նոյն թարգմանութեան Ֆաուստի մեծանուն հեղինակին առջեւ ո՛րչափ նպաստաւոր կերպով գնահատուած ըլլալը ծանօթացնել է, քանի մը տող միայն փոխ պիտի առնենք, ուզելով մեզ իբր բնագիր ծառայող գործին արժէքը և կարեւորութիւնը ճանչցնել Հայ ընթերցողաց։ Սոյն ներածութեան ընթացքին մէջ ինչ ինչ դիտողութիւններ և գիտելիքներ մեր կողմէ եւս աւելցուցած ենք ի հարկին։

«Ահա Ֆաուստի երրորդ թարգմանութիւն մը Ֆրանսերէն, կ՚ըսէ Ժերար տը Ներվալ, և սակայն անժըխտելի ճշմարտութիւն մըն է թէ այս երեք թարգմանութիւններէն և ոչ մին պիտի կարենայ ըսել տալ թէ Ֆաուստ թարգմանուած ըլլայ... զարմանալի գործ մըն է Ֆաուստ՝ որ անյաղթելի դժուարութիւնն

կ՚ընծայէ թարգմանութեան տեսակէտով»։ Այս մասին Պ. Ներվալ քանի մը խորհրդածութեանց մտնելէ վերջը, երկու գրագէտներու՝ Պ. Սէնդ-Օլէրի և Ա. Սթարքերի՝ իրմէ յառաջ երկասիրած թարգմանութեանց իրարու հետ ունեցած տարբերութիւնները և զանոնք յատկանշող ոգին կը բացատրէ՝ առաջինին աշխատութիւնը քաղցր և ներդաշնակաւոր՝ այլ ոչ հաւատարիմ և ստէպ թերի գործ մը գտնելով, իսկ երկրորդինը՝ թէև հարազատ՝ այլ քաղցրութեան դէմ փոքր ինչ մեղանչող։ Պ. Ներվալ լաւագոյն կը համարի այս վերջինիս շաւղին հետևիլ, և՝ արդա՛րև գովութեան արժանի յաջողակութիւն՝ միևնոյն ժամանակ կարող կ՚ըլլայ քաղցր և սահուն ոճ մը տալ իր թարգմանութեան, որու այս կրկին նպաստաւոր հանգամանքները մեծ յարգ ու հռչակ ստացած են առ հասարակ բանասիրաց առջև։ Ասով մէկտեղ Պ. Ներվալ կը զգուշացընէ իր Ֆրանսացի ընթերցողներն՝ որպէս զի մտքերնին չդնեն թէ կատարեալ կերպով գաղափարած ըլլան Ֆաուսթի վսեմ բնագիրը, որ ատեն ատեն և գրեթէ կամովի՝ անիմանալի ձև մը կ՚առնէ, և որու վրայ համառօտ և քննական քաղուած մը ընելէ յառաջ՝ արժան կը դատենք տիկին Սթալի հետևեալ նշանաւոր գնահատումը մեր ընթերցողաց առջև դընել, որ Ֆաուսթի արժանի և իրապէս ձեռնհաս քըննութիւն մըն է՝ մեծանուն հեղինակուհւոյն «Գերմանիա» գրքէն քաղուած։ Այն ազգայինք՝ որ Ֆաուսթի վրայ ընդարձակագոյն գաղափար ունենալ կը փափաքին՝ կրնան այդ գեղեցիկ գործին դիմել։

«... Անտարակոյս Ֆաուսթի մէջ ո՛չ ճաշակ փընտ-
«ռելու է, ո՛չ չափ և ո՛չ այն արուեստը որ գիտէ ըն-
«տրել և վախճան մը տալ մէկ գործի, այլ ինչպէս որ
«նիւթական քաոսը նկարագրած են ստէպ՝ եթէ երևա-

«կայութիւնը մտաւորական քաոս մը կարենար գաղա-
«փարել, Կէօթէի Ֆաուսթը պէտք էր ա՛յն ժամանակ
«շարագրուած ըլլալ։ Մտածումի յաւակնութեան մա-
«սին անկէ անդին երթալ կարելի չէր, որով այս
«գրուածիս մարդուս մտքին մէջ թողուցած յիշատակը
«ցնորքի նմանող բան մըն է միշտ։ Այս թատերգու-
«թեան դիւցազնը սատանան է. հեղինակը՝ իբր նողկա-
«լի ճիւաղ մը՝ ինչպէս որ սովորաբար մանկանց կը
«ներկայացնեն՝ յղացած և նկարագրած չէ զայն, այլ
«իբր գերազանց չար մը, եթէ կրնանք մեր միտքը
«այսպէս բացատրել, այնպիսի չար մը՝ որուն քով
«միւս չարերը նորընծայ համբակներ միայն կրնան
«սեպուիլ՝ Մեֆիսթօֆէլէսի (Ֆաուսթի բարեկամ հան-
«դիսացող դեւին անունն այս է) հազիւ ծառաներն
«ըլլալու արժանի։ Այս իրական և միանգամայն մտա-
«ցածին անձին մէջ՝ Կէօթէ կ՚ուզէ յայտնել ամենէ
«դառն կատակը՝ զոր արհամարհանքը կրնայ ներշնչել,
«և սակայն ատով մէկտեղ զուարթ յանդգնութիւն մը
«տուած է անոր՝ որ միեւնոյն ժամանակ կ՚զբօսցնէ
«զմարդ։ Մեֆիսթօֆէլէսի խօսքերուն մէջ դժոխային
«հեգնութիւն մը կայ՝ որ բոլոր Արարչագործութեան
«վրայ կը տարածուի և տիեզերքը կը դատէ իբր յոռի
«մատեան մը՝ որուն Սադայէլը գրաքննիչ կը հանդի-
«սանայ։

«Եթէ Ֆաուսթի թատերգութեան մէջ փիլիսոփա-
«յական կծու կատակներ տեսնուէր միայն՝ հնարին էր
«Վոլթէրի գործերուն մէջ նմանօրինակ ոգի մը գտնել.
«այլ սակայն բոլորովին այլազգ երեւակայութեան մը
«կը հանդիպի մարդ այս գրուածիս մէջ, ուր չէ թէ
«միայն բարոյական աշխարհը՝ ինչպէս որ է՝ ոչնչա-
«ցած կը տեսնուի, այլ նաեւ անոր տեղ դժոխքը

«դրուած։ Կախարդութեան զօրութիւն մը կայ հոն,
«յոռի տարրին մտածումը, չարին արբեցութիւնը,
«մտածումի մոլորումը, որ թէ՛ սարսուռ թէ՛ ծիծաղ
«և թէ՛ արտասուք կը պատճառէ։ Կարծես թէ պահ
«մը երկրի կառավարութիւնը դեւին ձեռքն անցած
«ըլլայ։ Կը դողաս՝ վասն զի բոլոր ինքզինքնէն գոհ
«ինքնասիրութիւնները կը նուաստացնէ ու պզտիկ
«կը ձգէ, կ'արտասուես՝ վասն զի մարդկային բնու-
«թիւնը՝ դժոխքի խորութիւններէն այս կերպ տես-
«նուած՝ ցաւագին արգահատանք մը կը ներշնչէ։

«Միլդոն մարդէս մեծ ըրած է սատանան. Միշել
«Անժ և Տանդէ անասունի զզուելի կերպարանք տը-
«ւած են անոր՝ մարդկային դէմքի հետ խառն։ Կէօ-
«թէի Մէֆիսթօֆէլէսը քաղաքակրթեալ սատանայ
«մըն է։ Նա արուեստով կը բանեցնէ այն նենգութիւ-
«նը՝ որ ըստ երեւոյթի թեթեւ՝ այլ անհնարին անըզ-
«գամութեան մը հետ կրնայ համաձայնիլ ըստ ամե-
«նայնի. ամէն զգայուն բաները յիմարութեան կամ
«արուեստակութեան տեղ կ'անցնին իր առջեւ. իր
«դէմքը չար է, գռեհիկ և կեղծ. տմարդի է նա ա-
«ռանց վեհերոտութեան, արհամարհոտ է առանց գո-
«ռոզութեան, կանանց քով տեսակ մը քաղցրութիւն
«կը կեղծէ՝ քանզի ա՛յս պարագայիս մէջ միայն հրա-
«պուրելու համար խաբելու պէտք ունի, և հրա-
«պուրել ըսելով՝ ուրիշի մը տռփին ծառայել կը
«հասկնայ՝ սէրը կեղծել իսկ չկրնալով, վասն զի միայն
«ա՛յդ կեղծաւորութիւնը ի գործ դնելու կարողութիւ-
«նը չունի նա»։

Դժուարին էր, ինչպէս կ'ըսէ Ժէրար տը Ներվալ
Մէֆիսթօֆէլէսը աւելի ճիշդ կերպով նկարագրել, այլ

Ֆաուսթի վսեմ հանգամանքը ո՛ւրտեղ աւելի լաւ կըրնայ յայտնուիլ՝ բայց եթէ այս գործիս մէջ, այս խորունկ մտածումներուն մէջ՝ որոնց փայլը արձակ թարգմանութեան մը տկարութենէն չէ եղծուած խապառ: Ո՞ր վեհանձն հոգին մարդկային մտքի այդ վիճակը փոքր ի շատէ չէ զգացած, վիճակ՝ որ աստուածային յայտնութեանց կը տենչայ անդուլ անդադար, որ՝ եթէ կարելի է այսպէս խօսիլ, իր շղթային բոլոր երկայնութեամբը կը ձգտի, մինչեւ որ պաղ ճշմարտութիւնը իր ցնորքներուն կամ յոյսերուն յաւակնութիւնը ի դերեւ հանէ, և Ոգիի ձայնին նման՝ նետէ զինք վերստին իր փոշեղէն աշխարհին մէջ...:

Ֆաուսթ գիտնականը մարդկային հանճարի և մտքի իբր ամենակատարեալ տիպարը ներկայացուած է հեղինակէն. նա ամէն գիտութիւն իր վրայ կը բովանդակէ. ամէն կարծիք ամէն գաղափար կշռած է, և չկայ բան մը երկրի վրայ՝ զոր տեսած ու սորված չըլլայ. հետեւաբար՝ մարդկային սովորական փափաքներու անձուկ շրջանակի մէջ այլ եւս չկրնալով ապրիլ՝ իր իղձերը գերմարդկային իրաց ծանօթութեան դարձուցած է միայն: Ուստի իր առաջին մտածումը կ'ըլլայ անձնասպան ելնել աշխարհէ, այլ Զատկի զանգակները և երգերն ականջին հասնելով՝ թունալի բաժակը ձեռքէն գետին կը նետէ: Կը յիշէ թէ անձնասպանութիւնը արգիլուած է Աստուծմէ, և կ'որոշէ կեանքի համակերպիլ՝ մինչեւ որ Տէրը հաճի զինքն իր քով կանչել: Տխուր և մտախոհ՝ Զատկի իրիկունը՝ ժխորալի բազմութեան մը մէջ իր աշակերտին հետ կը ճեմէ. ետքը վերջալոյսի պահուն՝ ամայի դաշտին մէջ առանձին կը գտնուի անոր հետ: Հո՛ն ահա իր [illegible] աշակերտին սրտին մէջ կը [illegible]

իր ներսը բնակող երկու ոգիներու վրայ կը սկսի խօսիլ, որոնցմէ մէկը՝ խոնարհող արեգակին ետեւէն վազելու փափաք կը յայտնէ, և միւսը երկրի գռեհիկ կապերուն մէջ կը մաքառի տակաւին։ Զինքը փորձելու համար՝ տխրութեան և մտախոհութեան այս գերագոյն ժամու ահա՛ կ'ընտրէ սատանան։ Շան մը կերպարանքն առած իր քով կը սողոսկի. անոր գրասենեակը կը մտնէ, և զայն հանդարտ չթողուր կարդալ Սուրբ Գիրքը՝ ուր գիտնականը կ'ուզէ տակաւին իր սփոփումը գտնել։ Անդէն ուրիշ ձեւով մը երեւելով և Ֆաւստի վսեմ հետաքրքրութենէն օգուտ քաղելով՝ ունեցած բոլոր մոգային ու գերբնական զօրութիւններն անոր տրամադրութեան ներքեւ կը դնէ, առանց իրական կեանքը դադրեցնելու՝ ապագայ կեանքին հրաշալիքներուն զեղչումն ընել ուզելով՝ եթէ կարելի է այսպէս ըսել։ Այս ակնկալութիւնս ծերունի գիտնականը կը հրապուրէ, որ խիստ զօրեղ, յանդուգն և հպարտ ըլլալով՝ չէր հաւատար որ սատանային հետ այսպիսի դաշինք մը պիտի կրնար երբեք պատճառ ըլլալ իր կորստեան։ Ան որ պատրաստ էր նոյն իսկ Աստուծոյ հետ մաքառիլ իր հանճարով՝ այն վստահութիւնն ունէր որ չար ոգւոյ որոգայթներէն ինքզինքը փրկելու հնարը պիտի գտնէր ետքէն։ Ուստի կ'ընդունի դաշինքը՝ որ ոգիներու օժանդակութիւնը և նիւթական կեանքի բոլոր վայելումները կը շնորհէ իրեն, մինչեւ որ տաղտկանալով՝ ըսէ իր յետին ժամուն. «Ո՛հ, եկո՛ւ ինձ, գեղեցիկ կը գտնեմ զքեզ»։ Այսպիսի ընդարձակ խոստումէ մը մեծ վստահութիւն առած՝ հուսկ յետոյ կը հաւանի այս սակարկութիւնս իր արիւնով կնքել։ Սոյնօրինակ անբա- խոստումով միայն կրնար հրապուրուիլ Ֆաւստ, որ

անխոնջ կամքի մը մտացածին հաճոյքներով քիչ ժամանակէն նոյն իսկ սատանան պիտի տագնապէ ու չուարեցնէ։ Այս վերջինին բաղդէն՝ ծերունի գիտնականն՝ իր բոլոր կեանքը գրասենեակին մէջ փակուած՝ մարդկային կեանքի և աշխարհի ուրախութիւններէն բան մը չգիտեր, զորս ուսմունքով միայն կը ճանչնայ ու չէ թէ փորձառութեամբ։ Իր սիրտը սիրոյ և վշտի համար բոլորովին նոր ըլլալով՝ զինքը շուտով մը յուսահատութեան մէջ ձգելը թերեւս դժուարին գործ մը չըլլայ՝ թմբրած կիրքեր արթնցնելու։ Մէֆիսթօֆէլէսի յատակագիծն ա՛յս ըլլալ կ՚երեւի, ուստի և ամէնէ առաջ կախարդական օշարակով մը նորէն երիտասարդութիւն կը պարգեւէ Ֆաուսթի, ապահով՝ թէ մէյ մը որ այս ըմպելին անոր ներսը մտնէ, հանդիպելիք առաջին կինը հրաշագեղ Հելէն մը պիտի երեւէր աչքին։

Եւ ստուգիւ այսպէս կ՚ըլլայ. այն օշարակը պատրաստող կախարդ կնոջ տունէն ելած կէտին՝ Ֆաուսթ Մարկըրիդ անուն դեռահաս օրիորդի մը կը հանդիպի փողոցին մէջ և բուռն կերպով սիրահարուելով՝ գործին վաղ ընդ փոյթ յաջողութեանը համար Մէֆիսթօֆէլէսը կը կանչէ՝ որպէսզի օգնէ իր տափանայ։ Այս վերջինը որ ժամ մը յառաջ վսեմ գիւտերու մասին պիտի նպաստէր իրեն և թողորը ու թողորէն աւելին աղ պիտի պարզէր իր առջեւ, սիրոյ գաւեհրի միջնորդ մը կ՚ըլլայ՝ որ գոհարներ կը նուիրէ, Մարկըրիդի մէկ պառաւ ընկերուհին կը հրապուրէ՝ միեւնոյն ժամանակ աղջկան վրայ հսկողները հեռացնել աշխատելով։ Իր սադայէլական բնազդումը կը սկսի յայտնուիլ այն ըմպելիքէն՝ զոր Մարկըրիդի մայրը քնացնելու համար կը յանձնէ Ֆաուսթի, և միանգամայն այն զա-

մանահրաշ միջամտութիւնէն՝ զոր մենամարտի մը մէջ ի գործ կը դնէ, մենամարտ՝ որ Մարկըրիդի եղբօր և Ֆաուսթի մէջտեղ կը կատարուի։ Այն միջոցին որ դեռատի աղջիկը հասարակաց զայրոյթին առարկայ կ'ըլլայ, արեան և արցունքի տեսարանէ մը ետք՝ Մէֆիսթօֆէլէս իր պաշտպանեալն առնելով՝ կախարդական գիշերաժողովի մը երեւակայական հրաշալեաց մէջ կը պտըտցնէ աշխատելով իր սիրուհւոյն սպառնացող վտանգն մոռցնել անոր։ Մէֆիսթօֆէլէսի բոլոր զգուշութեանց հակառակ՝ տեսիլ մը անոր յիշատակը կ'արթնցնէ Ֆաուսթի մտքին մէջ, և այս վերջինը կը ստիպէ սատանան՝ իրեն հետ Մարկըրիդի օգնութեան հասնիլ՝ որ դատապարտուած և փակուած էր բանտի մը մէջ։ Հոն տեղի կ'ունենայ գերմանական թատրոնի ամէնէ աւելի կարեւոր և կսկծալի տեսարաններէն մին, ո՛ւր աննման օրիորդը թէեւ խելակորոյս՝ այլ սակայն Աստուածամօր մէկ նայուածքէն սրտին խորը լուսաւորուած՝ կը մերժէ բացէ ի բաց դժոխքի այս օգնութիւնը և նոյն իսկ իր սիրահարն ետ կը հրէ ու կը մերժէ՝ ինքնաբեր դրդմամբ հասկնալով թէ սատանայի խաբէութեանց որս մը եղած է նա։ Այն պահուն որ Ֆաուսթ քաշքշելով կ'ուզէ զայն բռնի տանիլ իր հետ՝ ահա՛ դատապարտուհւոյն տանջանքի ժամը կը զարնէ։ Մարկըրիդ երկնից արդարութիւնը օգնութեան կը կանչէ, և հրեշտակներու երգերը Ֆաուսթ գիտնականին վրայ տպաւորութիւն ընելու պէս կ'ըլլան. այլ Մէֆիսթօֆէլէսին ձեռքը կ'արգիլէր զայն այս տխրագին տեսարանիս և այս երկնային փրկութեան պահուն։

Դժուարին է ապաքէն թատերական գրուածնե-

լու մէջ գտնել բան մը որ նմանի կամ բաղդատուի այս բանտի վերջին տեսարանի աղեխարշ և մորմոքալի տրամախօսութեան. ի՜նչ պարզ, սիրուն, զգայուն, բարեսիրտ և սրտառուչ տիպար մը կ՚ընծայէ Մարկըրիդ որ ամէն ընթերցողի համակրութիւնը, ուշ և գութը կը շարժէ գերազանց աստիճանով, և որ պիտի յիշուի յաւիտեան ամէն անգամ՝ որ պարզմիտ, անմեղ և խաբուող աղջկան մը խնդիր պիտի պատահի, խնդիր հանապազօրեայ՝ ծանր և չարաչուք աշխարհի մը մէջ՝ ուր անմեղութիւն ու առաքինութիւն ցաւալի պարզութեամբ մը մոլութեան ու խաբէութեան ծուղակը կ՚իյնայ անյարիր...։ Եւ ստուգիւ Մարկըրիդ աւելի կամ նուազ չափազանցուած թատերական տիպար մը չէ՛ բնաւ, այլ հասարակ կին մըն է՝ նմանող ուրիշ մէկ շատ կիներու, և այս պատճառաւ ահա, աւելի բուռն կերպով ընթերցողին կարեկցութիւնը կը շարժէ։ Թատերգութեանս երկրորդ մասին տեսարանները կարդալով՝ ուր իր առաքինութիւնն ու անմեղութիւնը համեստ և անոյշ շողով մը կը փայլին, ո՞ր աչքն է այն որ չպիտի արտասուէ, ո՞ր սիրտն անտարբեր և անզգայ պիտի մնայ այդ աննման արարածին նկատմամբ՝ զոր չարութեան ոգին այնպիսի անողորմ կերպով կը հալածէ. ո՞վ չպիտի հիանայ այդ ջինջ ու մաքուր հոգւոյն անդրդուելի հաստատամտութեան վրայ՝ զոր մոլորեցնելու համար դժոխք իր բոլոր վնասաբեր ճիգերը կը թափէ՝ առանց հրապուրել կարենալու։ Առաքինի աղջիկը մահատու դաշոյնին տակ ինքզինքը կը խլէ իր սիրականին ձեռքերէն, թէեւ նա իր կեանքէն աւելի սիրելի ըլլար իրեն, կը զրկէ ինքզինքը սէրէ և ազատութենէն՝ յանձնուելու համար մարդկային արդարութեան՝ որ աւելի եւս

 

խիստ է և անողոք․․․։ Քանի՜ ահռելի է Ֆաուսթի տանջանքը․ սատանայի հետ իր կապած ուխտով՝ որպէս թէ երանութեան քանի մը տարիներ պիտի վայելէր, և ահա մշտնջենաւոր տանջանքը կը սկսէր արդէն իրեն համար։ Եթէ սէրն իր բոլոր հեշտութիւններն խոստանալու պէս կ՚ըլլայ՝ միւս կողմէ սոսկալի մտածում մը ի տանջանս կը փոխէ այդ հեշտութիւնները։ «Սիրուհիս զիս իր սրտին վրայ ջեռուցանել պիտի «ուզէ, կ՚ըսէ, այլ ի զո՜ւր և ի նանի՜ր․ ես միշտ նոյն «փախստականը, միշտ նոյն տարագիրը պիտի ըլ-«լամ․․․ միշտ նոյն հեղեղը՝ աննպատակ և անհանգիստ՝ «որ հեղեղի նման ժայռէ ժայռ գլորելով և մռնչելով՝ «դէպ ի անդունդ կը դիմէ մոլեգնաբար։ Այլ Մարկը-«րիդ անմեղ և պարզ՝ Ալպեան լերանց ստորոտը «պզտիկ խրճիթ մը, փոքր դաշտ մը․ ունենալով, իր «բոլոր կեանքը՝ տնական զբաղումներու պարապելով՝ «այդ փոքրիկ աշխարհի մէջ կրնար անցընել։ Մինչ-«դեռ ես Աստուծմէ ատուած՝ բաւական չսեպեցի այդ «հէք աղջկան նեցուկներն ու պաշտպանները անհետա-«ցընել աշխարհէ, հա՛րկ է որ անոր հոգւոյն բոլոր «ուրախութիւնն ալ փճացնեմ ու թաղեմ․․․։ Դը-«ժո՛խք, պէ՛տք էր քեզի այդ զոհը․․․ և այլն։»

Ցաւուքի թատերգութեան յանկարծական կերպով մը վերջանալը թերևս զարմանք պատճառէ ոմանց․ այլ ի՞նչպէս կրնայ վերջանալ այդ գործը, և ի՞նչ պարագայ կարելի է աւելցնել․․․։ Ֆաուսթի դժոխոց մատնուելու ժա՞մն արդեօք․ այլ հնա՞ր էր միթէ ներկայացնել զայն, և մարդկային միտքը կրնա՞ր երբեք ենթադրել որ դժոխքի մէջ անոր համար աւելի ահռելի տանջանք մը պահուած ըլլար։ Միւս կողմէ՝ այս կերպով ընդմիջեալ վերջ մը կրնայ սա սփոփիչ մտա-

ծուռն ընծայել ընթերցողաց՝ թէ այն անխոնջ գիտնականն՝ որ հանճարով և աղէտներով իր համակրութիւնը գրաւած է ու միանգամայն գութը շարժած՝ սատանայի ճիրաններէն ազատած ըլլայ, վասն զի ապաշա՛ւը կրնար վերստին երկնից արժանի ընել զինք։

Սակայն գերմանական թատերգութիւններն ու կենսագրութիւնները այսպիսի վախճան մը չեն տար Ֆաուսթի, քանզի ասոնց ամենուն մէջ սատանան քսան և չորս տարիէ ետք տէր կ'ըլլայ անոր, և այս ահռելի դէպքին պատմութիւնն այդ գրուածներուն ամէնէն նշանաւոր մասը կը կազմէ։

Ֆաուսթի պատմութիւնը խիստ շատ տարածուած է Գերմանիոյ մէջ. քանի մը հեղինակներ կը կարծեն թէ ի սկզբան կրօնաւորք հնարած ըլլան՝ ուզելով թշնամանել Յովհաննէ Ֆաուսթ կամ Ֆիւսթը՝ որ տպարանի հնարիչ եղաւ ամենէ յառաջ. քանզի այս գիւտս ձեռագիրներ օրինակելու շահաբեր պաշտօնէն զրկած է այդ սրբանուէր անձինքը։

Ամենէ հաւանական կարծիքներու համեմատ՝ Ֆաուսթ Մայանսի մէջ ծնած ըլլայ ԺԵ դարուն սկիզբները։ Շատ քաղաքներ իրեն խանձարուր ըլլալու պատիւը սեպհականել կը ճգնին, ու այլ և այլ տարկաներ կը պահեն անոր յիշատակով կարեւորութիւն առած։ Ֆրանքֆորթ՝ Ֆաուսթի տպած առաջին գիրքը կը ցուցնէ, Մայանս՝ անոր առաջին մամուլը, Վիթթեմպէրկ՝ անոր յատկացած երկու տուներ՝ զորս կըտակով թողած է իր Վակներ աշակերտին։

Սակայն Ֆաուսթի պատմութիւնը միայն Գերմանիոյ մէջ տարածուած չէ, Անգլիոյ մէջ գրեթէ ժողովրդական եղած՝ իսկ Գաղղիա երկար ժամանակին.

հետէ կը ճանչնայ զայն։ Կէօթէի այս հրաշակերտէն յառաջ՝ սոյն նիւթին վրայ հրատարակուած ամենէ նշանաւոր գործը Մարլով Անգղիացի քերթողին Ֆաւուսթն է, գրական և քաղաքական տեսակէտով կարեւոր երկ մը որ 1589 ին ներկայացուեցաւ։ Բարիի և չարի մրցումը վեհ հոգիի մը մէջ՝ ԺԶ դարուն՝ նաև ներկայ դարուս մեծ գաղափարներէն մէկն է, միայն թէ՝ ինչպէս կրնան մտածել ընթերցողք, գործին ձեւը և տրամաբանութեան եղանակը կը տարբերին իրարմէ. Մարլովի ու Կէօթէի Ֆաուստները՝ այս նկատմամբ՝ հետաքրքրական և ուսումնասիրութեան արժանի հակապատկեր մը կ'ընծայեն։ Միոյն մէջ Վերանորոգութեան ծնունդը յայտնող գաղափարներու շարժումը կը տեսնուի, իսկ միւսին մէջ՝ այն կրօնական և փիլիսոփայական վերդարձումը (réaction որ հետեւեցաւ անոր՝ զայն իր ետին ձգելով։ Անգղիացի հեղինակին երկասիրութեան մէջ՝ մտածումը անկախ չէ ո՛չ կրօնքէ և ո՛չ կրօնքի վրայ յարձակող նորանոր սկզբունքներէ. բանաստեղծը տակաւին կէս մը կապուած կը գտնուի քրիստոնէական ուղղափառութեան զօդերուն մէջ, և կէս մը հակամէտ՝ զանոնք վրայէն թօթուելու։ Ընդհակառակն Կէօթէ ո՛չ նախապաշարումներ յաղթելու և ո՛չ փիլիսոփայական յառաջդիմութիւններ գուշակելու պէտքին մէջ կը գտնուի։ Կրօնքը իր շրջանակը լրացուցած ու փակած է, նոյնպէս և փիլիսոփայութիւնը իր ընթացքն աւարտած և վերջացուցած։ Այն երկբայութիւնն՝ որ մտածողի մը համար իրաց այս վիճակէն կը ծագի, պաշտպանութեան կարօտ մրցում մը չէ՛ այլ եւս, այլ ընտրութիւն մը՝ զոր ըստ կամաց կրնայ ընել, և եթէ դատողն
Անկրօնութիւն մը զինքը հուսկ յետոյ կրօնքէ կտ-

մը նետէ՝ կրնայ ըսուիլ թէ իր ընտրութիւնը՝ այս գերագոյն խնդիրին ընծայած երկու կողմերն ալ որոշակի գնահատելէ վերջը և ազատ կերպով մը կատարուած է։

Կրօնքի ժխտումը որ Գաղղիացւոց մէջ Վօլթէրի՝ իսկ Անգղիացւոց մէջ Պայրընի ձեռքով եղաւ, աւելի իրաւարար դատաւոր մը գտաւ ի Կէօթէ քան թէ հակառակորդ մը։ Այս բանաստեղծն՝ իր գործոց մէջ Գերմանիոյ փիլիսոփայութեանց՝ կամ գէթ՝ կրած վերջին այլակերպութեան հետեւելով՝ բոլոր հակամարտ սկզբունքներու կատարեալ լուծում մը տուաւ՝ զոր ընթերցողք ազատ են չընդունելու, այլ սակայն չեն կարող անոր հմուտ և անթերի տրամախոհութիւնն ուրանալ։ Ո՛չ ընտրականութիւն (éclectisme) է այն և ո՛չ միահաղոյն ձուլում. հնութիւնը և միջին դարը ձեռք ձեռքի կուտան՝ առանց իրար հետ խառնուելու. նիւթը և միտքը իրենց մէջ հաշտուած՝ փոփոխակի կը զմայլին մէկ մէկու վրայ. ի՛նչ որ ինկած է՝ կը կանգնի, ի՛նչ որ թիւրուած է՝ կը շտկուի. նոյն իսկ յոռի տարրը տիեզերական սիրոյ մէջ կ՚անհետի բնաջինջ։ Արդի համաստուածութիւնն (panthéisme) է այն. Աստուած ամէն բանի մէջ կը գտնուի։

Այս է ահա այս ընդարձակ քերթութեան եզրակացութիւնը. քերթութիւն՝ որ մեր ժամանակներու ամէնէ զարմանալի գործն է թերեւս, այն միակ գործը՝ որ թէ՛ Տանթէի կաթոլիկ քերթութեան և թէ՛ հեթանոսական հրաշակերտներու դիմաց կարենայ հանուիլ։ Կէօթէի համաստուածական գաղափարները երկրորդ Ֆաուստի մէջ սփռուած կը տեսնուին հաւասարապէս։ Այս երկրորդ Ֆաուստը առաջինին մէկ շարունակութիւնն է, այլ այնպիսի [illegible] ը-

նազանցութիւններու մէջ կը ճախրէ՝ որ նոյն իսկ բանաստեղծութիւնն իր ընդարձակ ծիրերէն դուրս նետուած կը տեսնուի։ Թանձրախիտ անտառ մըն է այն գերմանական հսկայ ու վիթխարի հանճարէ մը ծնունդ առած, որու մէջ արահետ մը գտնելը խիստ դժուարին է եթէ ոչ անկարելի, և որ բիւրաւոր քննադատութեանց առարկայ եղած է՝ առանց երբեք պէտք եղածին չափ լուսաբանուելու։

Այս երկրորդ Ֆաուստը առաջին Ֆաուստի հետ ուղղակի կապակցութիւն մը չունենալով՝ և այս վերջինիս ներդաշնակաւոր և ճշգրիտ ամբողջութենէն ալ զուրկ ըլլալով՝ լաւագոյն սեպեցինք չթարգմանել զայն, և գրեթէ հաւաստի ենք թէ այն լեզուագէտ ազգայինք՝ որ այդ կրկին մասերը կարդացած են ու գիտեն՝ առանց մեր այս ընթացքը ծրի և անպատեհ թշնամանք մը համարելու հայ մտքերու՝ մեզ իրաւունք պիտի տան այս մասին։ Եւ իրօք՝ հեղինակին մտածումը ո՛րչափ վերացած ու գերմանական հանճարի յատուկ ամպաճեմ թռիչ մը առած է ստէպ, յայտնած գաղափարներն ու իմաստներն մեծագոյն մասամբ ո՛յն աստիճան վարագուրուած կը գտնուին՝ որ հարկ կ՚ըլլայ չէ թէ մեկնաբանութեանց՝ այլ շատ անգամ գուշակութեանց դիմել, քան թէ թարգմանել կամ անոր ընծայած միտքն արտայայտել։ Այս պատճառաւ մեր առաջնորդը՝ Ժերար տը Ներվալ՝ այդ երկրորդ Ֆաուստի ինչ ինչ կտորները թարգմանած՝ և ինչ ինչ կտորներուն քաղուածով քննութիւնը միայն ըրած է իր Ֆրանսացի ընթերցողներուն համար, իսկ մենք այս երկրորդ Ֆաուստի ամբողջ կտորին վրայ քննական տեսութիւն մը ընել բաւական կը համարինք՝ անոր ընդհանուր իմաստները միայն բացատրելով՝

միշտ Ներվալի հետեւողութեամբ։ Բացէ ի բաց խօսե-չենք ուզեր մեր ընթերցողները աւելորդ տեղը ձանձրացնել այնպիսի հատուածներու թարգմանութեամբ՝ որք ստէպ չէ թէ միայն մեզ՝ այլ Գերմանիոյ մէջ իսկ անհասկանալի եղած են՝ տարբեր տարբեր մեկնաբանութեանց անսպառ աղբիւր մը դառնալով, թէեւ մեծ մասամբ անոնց գաղափարներու, նիւթին վիճակին և գործոց հետ սերտ առնչութիւն մը ունենան յայտնապէս։ Թող մերայինք երեւակայեն անգամ մը որ ըստ ինքեան մութ և անիմանալի հատուածներ՝ կրկնակի թարգմանութեան բովէ անցնելով ո՛րչափ բան պիտի կորսնցնէին։ Այս երկրորդ Ֆաուսթի ներշնչումը առաջինէն աւելի բարձր և վսեմ կրնայ եղած ըլլալ, այլ սակայն համարձակապէս կրնայ ըսուիլ թէ որոշ, մեկին, բացայայտ և յաջող ձեւ մը չունի ան բնաւ, և թէպէտ այդ գործը փիլիսոփայական տեսակէտով թերեւս աւելի կարեւոր համարուի՝ յայտնի է թէ չպիտի կրնայ յաւիտեան ժողովրդայնութիւն վայելել, քանի որ ո՛չ որոշ և իմանալի կերպարանք մը ունի և ո՛չ իսկ մեր թարգմանած առաջին Ֆաուսթի ուշագրաւ հանգամանքը կամ անոր սեփական եղած չարադրական արժէքը կ՚ընծայէ։ Աշխատի՛նք ուրեմն այս ընդարձակ, զօրեղ և ահարկու գործին՝ զոր հեղինակը խիստ ուշ՝ այսինքն իր կենաց վերջին տարիներուն մէջ յօրինած է, ամբողջական մէկ վերլուծումն ընելու, ընդհանուր կերպով անոր յօրինուածին՝ և որչափ կարելի է՝ զայն ներշնչող ոգւոյն վրայ մեր ընթերցողաց փոքր ինչ ճաշակ և գաղափար տալու համար։

Քանի որ սիրոյ յուսահատութիւնը անձնասպանութեան չառաջնորդեց զՖաուսթ, քանի որ գիտական

հետաքրքրութիւնը իր աղէկէզ և մորմոքալի սրտին կրած մահառիթ հարուածէն վերջն ալ՝ կենդանի մնայ տակաւին, Մեֆիսթօֆէլէսի պաշտօնը աւելի դժուարին և դժնդակ կը դառնայ, որու համար այս վերջինս կը գանգատի ստէպ։ Ֆաուսթ՝ ապրող բնութեան ծոցին և Արարչագործութեան երկնային Ներդաշնակութեանց մէջ իր հոգին նորոգած և զգայութիւնները հանդարտեցուցած ըլլալով՝ տակաւին ապրելու և մարդիկներու մէջ մտնել ելնելու որոշումը կ'ընէ, և այս անգամ բարձր և շքեղ բազմութեան մէջ պիտի երեւի, ուստի երբ անուանի գիտնական մը՝ կայսեր ապարանքը կը մտնէ նա, իսկ Մեֆիսթօֆէլէս՝ արքունի խեղկատակի հագուստ կը դնէ։ Այս երկու անձինք ասկէ վերջը իրարու միտք կը հասկնան ըստ ամենայնի։ Մարդկային յիմարութեանց երգիծանքը երկու երեւոյթներով կը յայտնուի հոս. մին՝ վեհ և անողոք, միւսը՝ ստորին և կծու։ Ֆաուսթ ի սկզբան ուրիշ բան չմտածեր՝ բայց եթէ կայսրը և անոր արքունիքը իր գիտութեամբ և իր կախարդութեան հմայքներով զարմացնել. կայսրը՝ ո՛րչափ բան կը սորվեցնեն իրեն՝ հետզհետէ ա՛յնչափ աւելի հետաքրքիր եղած՝ կը հարցընէ Ֆաուսթի թէ կարո՞ղ է միթէ ուրուականներ երեւցնել։

Այս տեսարանս գերազանց ընդլայնումի մը կ'առաջնորդէ հեղինակը, ուր ասիկայ երեւակայութեան աչաց առջեւ տեսակ մը ճշմարտանման դանդաչանք հաստել ուզելով՝ հոգիներու անմահութեան նկատմամբ փիլիսոփայութեան ունեցած բոլոր գաղափարներին իրին օգնութեան կը կանչէ։ Լէյպնիցի մենատարրներու (*) դրութիւնը Շուէտենպօրկի մագնիսական տե-

(*) Monades: Այս անունս կուտայ անուանին Լէյպնից պարզ, գործօն եւ անբաժանելի էակներու՝ որոնցմէ բաղկացեալ ըլլան բոլոր միւս էակները:

ախլներու երեւոյթներուն հետ կը խառնուի։ Եթէ ստոյգ է, ինչպէս կրօնքը կը սորվեցնէ, որ մարդկային էակը տարբաղադրուելէ վերջ՝ անմահ մաս մը կը մնայ միշտ, և տիեզերական հոգւոյ մէջ չկորսուելով՝ որոշ ու անկախ կեանքով մը կը պահուի յաւիտեան, այդ անմահ մասը վերնագաւառներու կամ մոլորակներու անբաւութեան մէջ պէտք է կենայ՝ ուրիշ հոգիներու համար տեսանելի ձեւ մը պահելով. և նոյն իսկ այն հոգիները՝ որ երազով, մագնիսականութեամբ և կամ հայեցողութեամբ պահ մը երկրային կապերէ ազատած կը սաւառնին օդին մէջ՝ պէտք է որ տեսնեն զանոնք ակն յանդիման։ Արդ հնարի՞ն էր միթէ այդ հոգիները Աստուծմէ ստեղծուած կամ գէթ կերպագրուած նիւթական աշխարհի մէջ բերել վերստին, այն փառաւոր թատրին մէջ, կ'ըսենք, ուր իւրաքանչիւր հոգի քանի մը տարիներու դեր մը եկած կատարած է՝ իրեն զօրութեան և սիրոյ ապացոյցները տալով։ Հնարի՞ն էր արդեօք իրենց աննիւթ և անշօշափելի կաղապարին մէջ խտացնել նիւթին քանի մը մաքուր տարրները՝ որք աւելի կամ նուազ տեւողութեամբ՝ տեսանելի գոյութիւն մը տան անոր՝ յանկարծակի միաւորուելով և լուսաւորուելով, ինչպէս այն թեթեւ հիւլէները՝ որք շրջաններ կ'առնեն արեւու ճառագայթի մէջ։ Այս բանս ահա երազողք աշխատեցան բացատրելու, այս բանս կրօնքներն հնարին համարեցին, այս բանս Ֆաուսթի քերթողը անտարակոյս իրաւունք ունէր ենթադրելու։

Երբ Ֆաուսթ իր հաստատ որոշումը կը յայտնէ Մեֆիսթօֆելէսի՝ սա կ'ընկրկի՝ տարակոյսով պաշարուած։ Թէեւ պատրանաց և կախարդանաց տէր՝ այլ սակայն չկրնար երթալ ուրուականները խռովել՝ ուր

իր իշխանութեան տակ չեն գտնուիր, և որք քրիստոնեայ կամ հեթանոս՝ գեհենի մատնուած չըլլալով՝ անդրպետի մէջ հեռուները կը ծփան, յիշատակի զօրութեամբ անէութեան դէմ պաշտպանուած։ Հեթանոս աշխարհի վրայ չէ թէ միայն ո՛ր և է ազդեցութիւն մը չունի՝ այլ նոյն իսկ իրեն համար անծանօթ է այն: Ուստի Ֆաուստ այս ճամբորդութեան վտանգներուն պիտի ենթարկէ ինքզինք առանձին, իսկ սատանան միայն միջոցներ պիտի հայթայթէ անոր՝ որպէսզի երկրի մթնոլորտէն դուրս ելնէ և իր թռիչը լուսաւորէ անբաւութեան մէջ։

Եւ իրօք Ֆաուստ հաստատունէն և սահմանաւորէն, և կրնայ իսկ ըսուիլ՝ ժամանակէն դուրս կը սրանայ մտադիւր։ Վե՞ր կը բարձրանայ արդեօք թէ վար կ'իջնէ։ Միեւնոյն բանն են երկուքն ալ, ըստ որում մեր երկիրը գնդաձեւ մարմին մ'է։ Դէպ ի անցելո՞յն կամ դէպ ի ապագայի անձինքները կը դիմէ։ Ամէնքն ալ համագոյակից են, ինչպէս զանազան անձեր թատերգութեան մէջ՝ որ թէեւ տակաւին չըմնցած, այլ իր հեղինակին մտքին մէջ լրացած ամբողջացած է արդէն. այսպէս Կէօթէ կեանքի տեսարանին դէպ ի ներքին խորշերը կը տանի զմեզ։ Հելէն և Պարիս՝ Ֆաուստի փնտռած ուրուականները մասնաւոր տեղ մը թափառելու վրայ են այն անբաւ լուսապատկերին (spectre) մէջ՝ զոր իրենց դարը թողած է անդրպետին մէջ. կամարակապ շքեղ սրահներու և զովագին չուքերու տակ կը քալեն՝ անոնց վրայ երազելով տակաւին, և ծանր ծանր կը շարժին որոճալով իրենց անցեալ կեանքը։ Այս վիճակի մէջ ահա Ֆաուստ կը դիպի ասոնց, և իր հոգւոյն՝ որ կէս մը ապառած

է երկրի կապերէն, անբաւ մէկ տենչումը՝ կը յաջողի
զանոնք իրենց գոյութեան շրջանակէն դուրս հանելով
բերել իր շրջանակին մէջ։ Հիմայ հեղինակն իր ինք-
նաջգած հրաշալի գտումին հանդիսականներն մասնա-
կի՞ց կ՚ընէ արդեօք, կամ թէ՝ վերը ըսածնուս համե-
մատ՝ այդ հոգիներու ճառագայթին մէջ նիւթի քանի
մը տարրներ դնելով՝ զանոնք նշմարելի ընելու կարող
կ՚ըլլայ։ Որ և է կերպով տեսարանին մէջ նկարագրուած
երեւոյթը յառաջ կուգայ։ Ամենքը այդ երկու գեղեցիկ
անձերուն՝ հնատիպ գեղի այդ կորսուած տիպարնե-
րուն վրայ կը զմայլին ու կը հիանան։ Երկու ուրուա-
կանները իրենց շուրջը անցած դարձածներուն անըզ-
գայ՝ կը խօսակցին ու կը սիրեն զիրար՝ իբր թէ իրենց
յատուկ միջավայրին մէջ գտնուէին։ Պարիս համբոյր
մը կուտայ Հեղէնի. այլ Ֆաուսթ տեսածէն և ըրած
գործէն տակաւին յափշտակուած՝ յեղակարծուստ խառ-
նելով իր հիմակուան բնակած նաեւ թողած երկու
աշխարհներուն գաղափարները՝ Հեղէնի գեղեցկութեան
կը սիրահարի յանկարծ, անկարելի ըլլալով այդ չըք-
նաղ արարածը տեսնել առանց սիրելու։ Ասիկա ուրի-
շի համար թէեւ ուրուական՝ այլ Ֆաուսթի ընդարձակ
հանճարին համար իրական գոյութիւն ունի։ Ֆաուսթ
կը սկսի Պարիսէ նախանձիլ, Մենելաոսէ նախանձիլ
անցեալէ նախանձիլ՝ զոր չէ կարելի ջնջել բարոյա-
պէս, ինչպէս նիւթը Ֆիզիքապէս չկրնար ջնջուիլ։
մոգական բանալիքով Պարիսի դպչելով՝ այդ կրկնա-
երեւոյթի պատրանքը կը ջնջէ։ Այս կերպով ահ-
հանճարի սէր մը իր սրտին մէջ կը յաջորդէ Մարկը-
րիտի պարզ և մարդկային սէրին։ Ուրուականի սի-
րահար մի փիլիսոփայ, մի գիտնական՝ նոր գաղափար
մը չէ՛ բնաւ, այլ առանց անհեթեթութեան մէջ իյնա-

լու դժուարաւ կը բացատրուի այսպիսի բուռն սիրոյ մը յաջողութիւնը. սակայն և այնպէս հեղինակը մին-չեւ այս կէտս կրցած է անհեթեթութենէ ինքզինք ազատել: Ասկէ զատ՝ իր դիւցազնին աւանդավէպն իր երկասիրութեան այս մասին մէջ զինք կ'առաջնորդէ անդադար, ուստի և զայն տեսարանի վրայ հանելու համար բաւական էր որ օգուտ քաղէր իրմէ առդէն ընդունուած գերընական թուիքներէն: Այս անգամ խնդիրը մեր երկրին մէջ ճիւաղներ երեւցնելու՝ կամ թէ անդունդէն երկու ուրուականներ հանելու վրայ չէ՝ կայսրը կամ արքունիքը զուարճացնելու դիտ-մամբ. գաղտագողի արշաւ մը չէ այս բնաւ՝ անջրպետ-ոի և դարերու մէջտեղէ: Հարկ է երթալ պինդ ու ամուր կերպով մը ոտքը հին աշխարհին վրայ հաս-տատել, պէտք է ուրուականներու աշխարհին մէջ մտնել, և Հելէնի ստուերը անկէ դուրս կորզելու մի-ջոցներ գտնել՝ զայն մեր մթնոլորտին մէջ նիւթապէս ապրեցնելու համար: Որփէոսի դժոխք իջնելը պիտի ըլլայ այս գոգցես. ըստ որում պէտք է դիտել որ Կէօթէ չընդունիր այնպիսի տեսիլներ՝ որ դասական բանաստեղծութեան մէջ հիմ մը ունեցած չեն, ո՛րչափ նոր ալ ըլլան անոնց ձեւը և պարագաներու յղացումը:

Այսպէս ուրեմն Ֆաուսթ և Մեֆիսթոֆելէս այս երկրի մթնոլորտէն դուրս կը խոյանան՝ առաջին փոր-ձէ մը վերջը աւելի համարձակութիւն ստացած. միակ մտածում մը ունի Ֆաուսթ, Հելենի մտածումը, իսկ սատանան ոչ այնչափ մտահոգ, միշտ ցուրտ, միշտ հեգնող՝ այլ սակայն հետաքրքիր է ճանչնալու աշ-խարհ մը ուր երբեք ոտք չէ կոխած: Մինչդեռ գիտ-...կանը՝ հին տեղերքի մէջ կորսուած՝ իր հմտալ ...ցումներու [illegible]ակով կամաց կամաց կը գտն

խնքզինք, մինչդեռ կ՚ըսենք, Բիրոն հին յուշկապարիկին, Մանթօ գուշակուհիին Հելէնը կը հարցնէ, և վերջապէս կը տեղեկանայ թէ նա Նաժիշտներուն հետ մթագին Հատէսը կը բնակի՝ Ողիմպոսի քարայրներուն մէջ, Մէֆիսթօֆելէս՝ միւս կողմէ՝ այդ առասպելական վերնագաւառներու մէջ՝ ուր ուրեմն կանգ առնելով՝ կը խօսակցի Տարտարոսի հին դեւերուն հետ, Սիպիլաներուն և Պարկեանց հետ, հնագոյն ծագում ունեցող Սփինքսներու հետ։ Ֆաուսթի չուրջը խաղցուելիք երեւակայածին կատակերգութեան մէջ գործօն դեր մը կ՚ստանձնէ նա շուտով, և այս պատճառաւ Ֆորքիասի՝ Մենելասի պալատին պառաւ տնտեսուհւոյն՝ հագուստը և խորհրդանշան երեւոյթը կ՚զգենու։

Եւ իրօք Հելէն՝ Հատէսի տխուր բնակութենէն Ֆաուսթի տենչովը դուրս հանուած՝ Արգոսի իր պալատին սիւնազարդ գաւիթին առջեւ՝ Նաժիշտներէն շըրջապատուած կը գտնուի այն պահուն՝ ուր իր հայրական քաղաքը կը հասնի՝ Մենելասի ձեռքով։ Ջընաղ դշխոյն Տրոյայի անկումէն վերջը Եգիպտոս փախած ըլլալով՝ իր ամուսինն այդ երկրէն կը բերէր զինքը։ Հոս յիշատա՞կն է արդեօք՝ որ ներկային կ՚ըլլայ կրկին, կամ թէ ժամանակով պատահած միեւնոյն դէպքե՞րն այս երկրորդ անգամ կը կրկնուին միեւնոյն պարագաներով։ Երազի և նոյն իսկ կեանքի ինչ ինչ ժամերու անհեղլի բանդագուշանքներէն մէկն է այս, ուր արդէն կատարուած գործողութիւն մը կարծես թէ միւսանգամ կը կատարուի, արդէն զրուցուած խօսքեր կրկին կը զրուցուին՝ տեղի ունենալիք բաները հետըզհետէ նախատեսելով։ Այս տարօրինակ արարուածը Ֆաուսթի և Հելէնի կրկին հոգիներուն մէջ կը խաղցուի արդեօք, կամ թէ ապրող գիտնականին և

գեղանի դշխոյին մէջտեղ…։ Երբ, Լիւսիէնի Տրամախօսութիւններուն մէջ, Մենիպպէս փիլիսոփան կ'աղաչէ Հերմէսի՝ հին Յունաստանի դիւցազունները ցուցնել իրեն, յանկարծ Հելլէնի անցնիլը տեսնելով՝ զարմացման ձայն մը կը հանէ. «Ի՞նչ, կ'ըսէ, այս հերաթափ գա՞նկն է՝ որ ոսկեթել շքեղ վարսեր կը կրէր երբեմն, այս նողկալի բերա՞նն է՝ որ այնչափ անոյշ համբոյրներ կը նուիրէր…։» Մենիպպէս անհուելի կմախքի մը միայն հանդիպեցաւ, նիւթական յետին բեկոր գեղութեան ամենաջինջ տիպարի։ Այլ արդի փիլիսոփան՝ իր նախորդէն աւելի երջանիկ՝ կ'երթայ կը գտնէ նորատի և մատղաշ Հելլէնը՝ իր ամենէ աւելի գեղանի օրերուն մէջ։ Մեփիստոֆելէս՝ Ֆորքիասի կերպարանքով՝ Ֆաուստի քով պիտի առաջնորդէ Մենելասի թեթեւսոլիկ կինը՝ հանապազ անհաւատարիմ՝ ժամանակի և յաւիտենականութեան մէջ։

Այս կերպով դարու մը շրջանակը վերստին կ'սկսի, և գործողութիւնը հաստատուն ու ճշգրիտ կերպարանք մը կ'առնէ, այլ սակայն Հելլէնի՝ հայրենի հողը ոտք կոխած ժամէն՝ ժամանակները պիտի կտրէ անցնի այն՝ երազի արագութեամբ։ Կարծես թէ — հաստատակ բաղդատում մը ընելու համար՝ որ սակայն այդ անհեթեթ շրջափոխութիւնը ըստ ամենայնի կը բացատրէ — յաւիտենական ժամացոյցը՝ անտեսանելի մատէ մը դէպ ի ետեւ ձգուած՝ և ի վաղուց սահած անցած օրի մը վրայ հաստատուած, շղթան կտրածի նման մէկ շատ անկարգ շարժումներ պիտի ընէ, և ամէն մէկ ժամի համար թերեւս դար մը պիտի նշանակէ։ Եւ սակայն, մինչդեռ Հելլէնի նաժիշտները կը կանգնին յուշիկ իրենց հայրենիքը իբր կալանաւոր ռամնալնուն պատճառաւ, մինչդեռ դշխոյն

դրան սեամին վրայ իրենց դէմ բարկացած՝ ընտանի աստուածոց սպառնալի ուրուականներուն հանդիպելով՝ կուլայ կ'ողբայ դառնօրէն, և կը լռէ ահաբեկ թէ արիւնը թափելով զոհ մատուցուելու սահմանուած է ինք, զո՜ ի քաւութիւն Յունաստանի աղէտներուն և Մենէլասի իրաւացի բարկութեան, ահա՛ Փորքիաս կուգայ իսկոյն կ'իմացնէ թէ կրնայ ինքը՝ անցած դարու մը աղջիկ՝ այդ վտանգէն փրկուիլ՝ Նոր ծնող դարու մը գրկաց մէջ նետուելով։

Յունական դարը՝ զոր Մենելաս և իր բանակը կը ներկայացնեն, հազիւ Ասորեստանեայց դարին յաղթող հանդիսացած՝ որուն յետին պտուղը Տրոյան եղաւ, Նոր պատմական շրջանէ մը կլլուելու վտանգին մէջ կը գտնուի արդէն, շրջան՝ որ անոր ետեւի կողմէն ելնելով՝ Նախնական խժդժութեան և մէկ շատ Նոր գաղափարներ ներկայացնող ապագայի կրկնակի. քօղերը տակաւ առ տակաւ կը մերկանայ, և ինքզինք կը յայտնէ ակն յանդիման։ Կիմմերեան լեռներէ իջած կէս վայրենի ցեղ մը յունական քաղաքակրթութեան կը յաղթէ, և կ'սկսի Արկօլիսի պալատներու և յիշատակներու դիմաց իր դղեակները կանգնել։ Տակաւ առ տակաւ մեծցող ու զարգացող միջին դարու բողբոջն է այն։ Հելէն, այն հնատիպ գեղութիւնը՝ յաւիտենական տիպար մը կ'ընծայէ՝ միշտ հրաշալի և միշտ հանրածանօթ, հետեւաբար տեսակ մը յանկարծական վերացումով կրնայ ազատիլ իր ամուսնոյն հալածանքներէն, որ անցաւոր անհատականութիւն մըն է. միայն՝ սահմանաւոր դարու մը մէջ պարփակուած։ Գեղանի դշխոյն սեպէ՛ թէ կ'ուրանայ իր աստուածներն ու ապրած ժամանակը, և ահա՛ Փորքիաս ժայռաւոր (crénelé) դղեակի մը մէջ կ'առաջնորդէ զինքը, դը-

եակ՝ որ նորածին աւատական դարը կը պաշտպանէ տակաւին։ Հօ՛ն ահա կը թագաւորէ ու կը հրամայէ Ֆաուսթ, միջին դարու մարդը՝ որ իր ճակտին մէջ՝ այդ թուականին յատուկ բոլոր հանճարը և բոլոր գիտութիւնը՝ իսկ իր սրտին մէջ բոլոր սէրը և բոլոր արիութիւնը կը կրէ վսեմօրէն։

Մենելաս և իր փունճ վաշտերը՝ գոթական սոյն ամրոցը պաշարել կ՚աշխատին, այլ այդ թշնամի ուրուականները կը ցրուին՝ թէ՛ ժամանակէ և թէ՛ նոր ամպանման/արփիի մը լոյսէն նկուն։ Ցաղթանակը կը մնայ ուրեմն Ֆաուսթի՝ որ ասպետական հանդերձներ հագած Հելէնը իբր իր կինն ու թագուհին կ՚ընդունի։ Հին դարու կինը՝ մինչեւ այն ժամանակ գերի կամ հպատակ, ծախուած, հափափուած, ստէպ իբր փոխանակութիւն ծառայած, հրճուանօք կ՚ընտանենայ այս նոր պատիւներու և յարգանքներու։ Աւատական դղեակին որ մերն ա՛լ անօգուտ դարձած՝ կը խոնարհին ու հիասքանչ կճեայ բնակութեան մը շրջապատը կը հանդիսանան, բնակութիւն՝ զոր գեղածիծաղ արձաններով զարդարուած պուրակաձեւ բուրաստաններ կը շրջապատեն։ Միջին դարէ դէպ ի Վերածնութիւն անցումն է այս, այն միջոցը՝ ուր սպառազէն ու զրահաւոր մարդը՝ մետաքսեայ և թաւշեայ հանդերձներ կը հագնի, իսկ կինը կը թագաւորէ անվեհեր, այն միջոցը կ՚ըսեմ՝ ուր սէր և արուեստ նորանոր սերմեր կը սփռեն ամենուրեք։ Ֆաուսթի և Հելէնի միաւորութիւնը անպտուղ չմնար և պարն Եւփորիոնի ծնունդը կ՚ողջունէ արդէն, վեհապա՛նծ մանուկ հանճարի և եղութեան։

Հոս հեղինակին միտքը տարտամ և մելամաղձ [illegible]

մը կ՚առնու՝ զոր սահմանելը աւելի հեշտ կ՚ըլլայ, և որ Եօֆօրիօնի այլաբանութեան տակ՝ կարծես թէ արդի ժամանակներու քննական ոգին կը բերէ։ Եօֆօրիօն դուլ դադար ինչ է՝ չգիտեր. հազիւ ծնած՝ կը խոյանայ երկրէ, ամենաբարձր կատարներ՝ կը մագլցէ, ամենադերբուկ արահետներ կը դեգերի, ամէն ինչ հասկնալ կ՚ուզէ, և հուսկ ուրեմն՝ օդերու պետութիւնը նուաճել ուզած ժամանակը՝ Իկարոսի բաղդին կը վիճակի։ Հեղինակն առանց իր միտքն աւելի յայտնի կերպով բացատրելու՝ Ֆաուսթի անցաւոր երանութեան վերջ կուտայ այս մահուամբ. իսկ Հելէն՝ նոյնպէս օրհասական վիճակի մէջ՝ վերստին դէպի ստուերներու կայանը կը կանչուի իր որդիէն։ Հոս դարձեալ աւանդավէպի նմանողութիւնը կ՚երեւի։

Երկու ամուսիններու շուրջը վերածնած երեւակայական ժողովուրդն նոյն կերպով կը ցրուի ու կ՚անհետի, եւ դարձընելով բնութեան այն զանազան տարրերը՝ որք ծառայած էին այս անցաւոր մարմնաւութեանց։

Ֆաուսթ՝ հիւծած ու տկարացած, այլ միշտ կեանքի տենչացող ծերունիի մը յատուկ եղող անյագութեամբ աշխարհի կը կպչի, և մարդիկներու վրայ ունեցած արհամարհանքը մէկդի թողլով, կ՚աշխատի քանի մը տարուան մէջ իրացնել այն ամէն յառաջդիմութիւնները՝ զոր գիտութիւնն ու հանճարը տակաւին մինչեւ ցայսօր կ՚երազեն ապագայ դարերու փառքին համար։ Դժբաղդաբար Աստուծմէ հեռացած միտք մը չէ կարող մարդիկներու երանութեան նպաստող բան մը ընել, և չար ոգի մը անոր բոլոր ձեռնարկութիւններն իրեն դէմ կը դարձնէ։ Կոհակներու վրայ [illegible] ձգած կախարդական թագաւորութիւնը

 

որով իր մարդասիրական երազները կատարուած տը-
եսաւ, իրմէ վերջը պիտի կորսուի անհետ, և պատ-
րաստել տուած վերջին բանը՝ առանց ինքը գիտնա-
լու՝ ուրուականներու ձեռօք փորուած գերեզման մըն
է իրեն համար։ Սակայն իր բոլոր մտածումները գոր-
ծադրած՝ և այլ եւս տենչ մը, փափաք մը չունենա-
լով՝ ծերունի գիտնականը իր յետին ժամին հնչելը կը
լսէ առանց որ և է սարսափի, և իր վերջին իղձը կը
ձգտի դէպ ի Աստուած՝ զոր մոռցած էր վաղուց։ Այս
կերպով իր հոգին կ'ազատի սատանայի ճիրանէն, և
հեղինակը կարծես եզրակացնել կ'ուզէ թէ ճշմարիտ
հանճարը, երկար ժամանակներ երկնքի մտածումէն
հեռացած ալ ըլլայ՝ միշտ կը վերադառնայ դէպ ի
հոն՝ իբր յաւիտենական կէտ նպատակի բոլոր գիտու-
թեանց և բոլոր գործունէութեան։

Երկրորդ Ֆաուստի այս քննական տեսութիւնը
վերջացնելով, Ժերար տը Ներվալի հետ՝ որմէ ամբող-
ջական քաղուածք մը ըրինք, մենք եւս կը ցուցինք որ
թերեւս ըստ բաւականի մեկին և բացայայտ եղած
չըլլայ այն։ Հեղինակին միտքը վերացած է ստէպ, և՝
ինչպէս վերն ըսինք՝ իբր կամովի սքօղուած, որով
շատ անգամ հարկ կ'ըլլայ աւելի մեկնաբանելու ել-
նել, քան թէ բուն իմաստը յայտնել։ Նոյն ինքն Կէօ-
թէ իր կենաց վերջին տարիներուն մէջ, Ֆաուստի
վրայ այսպէս կը խօսի իր Ժան-Բիէր-Էքքէրման բա-
րեկամին հետ՝ որ մեծանուն հեղինակին մահուընէ
վերջը անոր բերնէն ելած հետեւեալ խօսքերը կը
յիշէ բառ առ բառ։ «Ֆաուստ, անչափելի և անբաւ
«բան մը ըլլալով՝ զայն իմացականութեան յարմար-
«ցընելու նպատակաւ եղած բոլոր ճիգերը զուր են և

«ընդունայն. Պէտք չէ մոռնալ որ քերթուածին առա-
«ջին մասը անհատին ամենամութ (կամ ամենաշփոթ)
«մէկ վիճակէն ելած է (հեղինակին գերմանական ա-
«սացուածը յարգելով կը թարգմանենք). այլ ճիշդ այս
«մթութիւնս (կամ շփոթութիւնս) է որ մարդիկներու
«հետաքրքրութիւնը կը շարժէ, և այսպէս մտովին
«կ'զբաղին անով՝ ինչպէս կ'զբաղին ամէն անլոյծ խըն-
«դիրներու վրայ։»

Սակայն Ֆաուսթի բնագրին ընծայած անհուն խըրթնութիւններուն ու դժուարութիւններուն՝ և զայն լիբր անլուծանելի առեղծուած մը ընծայող բոլոր մթութիւններուն հակառակ՝ Ժերար տը Ներվալի աշխատասիրած ֆրանսերէն թարգմանութիւնը՝ զոր հայերէնի շրջելու փորձը կ'ընենք (ըստ որում դժբաղդաբար չէինք կարող դիմել բուն աղբիւրին), Կէօթէի հաւանութեան արժանացած գործ մըն էր, ինչպէս Ժան-Բիէր-Էքքէրման իր հրատարակած մէկ գրքին մէջ կը պատմէ հետեւեալ կերպով.

«Կէօթէ Ժերարի թարգմանութեան գովեստն ըրաւ ըսելով որ մեծ մասամբ արձակ գրուած՝ այլ սակայն շատ լաւ յաջողած էր։»

«Հիմայ ա՛լ Ֆաուսթը գերմաներէն կարդալ չեմ սի-
«րեր, ըսեր է վեհապանծ հեղինակը, այսու ամենայ-
«նիւ այս ֆրանսերէն թարգմանութեան մէջ ամէն ինչ
«վերստին թարմութիւն և աշխոյժ զգեցած կը տեսնեմ։»
Ժերար տը Ներվալի թարգմանութեան կարեւորութիւնն ու արժանիքը ցուցնելու համար՝ Կէօթէի այս քանի մը խօսքերը կը բաւեն կարծենք։ Եթէ երբեք կը մխիթարուինք որ Ֆաուսթը հայերէնի թարգմանելու կը ձեռնարկենք առանց գերմաներէնի վրայ ամե-

նախօքը հմտութիւն մը ունենալու, և եթէ կար բան մը զմեզ խրախուսող՝ որ գերմաներէն արդէն խիստ դժուարին բնագրի մը ֆրանսերէն թարգմանութիւնը հայերէնի դարձունենք, այդ ալ Ժերար տը Ներվալի աշխատութեան ընտրելագոյն հանգամանքն էր՝ նոյն իսկ Կէօթէի բարձր և անժխտելի վկայութիւնով վաւերացած ու պատուուած։ Այս հոյակապ վկայութեան առջեւ՝ ուրիշ բոլոր քննաբաններու նպաստաւոր գնահատումները հարկաւ երկրորդական պիտի դառնային։ Թարգմանութեան մասին մեր սկզբունքը՝ ամէն ժամանակ հաւատարիմ խղճահարութեամբ ծառայել եղած է հեղինակին, բնագրի հարազատութիւնը անաղարտ պահելու համար ի հարկին նաեւ քաղցրութիւնը զոհելով։ Մեր անդրդուելի համոզումն այն է որ հեղինակ մը թարգմանելու ելած ժամանակնիս պարտականութիւն յանձն կ՚առնենք անոր իմաստներուն, նաեւ այդ իմաստներու ամենանուրբ թելերուն ըստ ամենայնի ճշգրիտ մէկ պատկերը ներկայացնել. անոր միտքէն աւելի կամ նուազ հեռանալ, զարտուղիլ, անոր ինչ ինչ խօսքերը աւելի կամ նուազ յապաւել կամ աւելցնել, մանաւանդ թէ՝ ինչպէս կ՚ընեն ոմանք՝ ամբողջ պարբերութիւններ կլլել՝ այնպիսի ընթացք մըն է ուղղութեան դէմ մեղանչող՝ որու մեր խղճմտանքը չներեր մեզ ո՛ր և է կերպով նաեւ, քաղցրութեան անունով կամ պատրուակով։ Եթէ երբեք հատուած մը յապաւել հարկ համարինք՝ առանց տեղեկացնելու և առանց մեր օրինաւոր և ստիպողական պատճառները յայտնելու չենք ըներ զայն։ Ուրախ ենք որ Ժերար տը Ներվալ եւս այս միեւնոյն սկզբան կը ծառայէ եւ միեւնոյն նկարագիրով իր այն-

չափ գովելի ճանցչուած թարգմանութիւնը գլուխ կը հանէ, որու համար կ'ըսէ ի լոյս ընծայած յառաջաբաններէն մէկուն մէջ. «Կընան ընթերցողք Երկասիրութեանս տաղանդը ժխտել, այլ ոչ բնաւ անոր ճշգրտութիւնը...։»

Այս ճշգրտութիւնը (ինչպէս կը հետեւի մեր վերի յայտարարութիւններէն), ամէն կերպով պահած ենք եւ մենք սոյն թարգմանութեան մէջ՝ որու առաջին մասը ասկէ քառորդ դար յառաջ լոյս տեսած էր Զմիւռնիոյ Մkskoru անուն ընդարձակ հրատարակութեան մէջ, եւ անոր յանկարծական քմահաճ խափանմամբ՝ շարունակութիւնն ընդհատուած։ Մտադիր էինք Թիֆլիզի Հրատարակչական Ընկերութեան արդիւնքով ի լոյս ընծայել անոր ամբողջութիւնը, այն պատուական ընկերութեան՝ որ գովելի կերպով պաշտպան կանգնած էր հայ գրականութեան մշակներու, եւ որու շնորհի տպագրուած են ա՜յնքան օգտակար գործեր (ընդ որս և մեր Լաֆոնթէնի յանգաւոր թարգմանութիւնը), որք առանց անոր նպաստին՝ փոշիի եւ մոռացութեան պիտի մատնուէին անվրէպ։ Այդ ընկերութիւնը Ռուս կառավարութեան հրամանաւ լուծուելով, ձեռագիրը պատրաստ կ'սպասէր մեր քով, եւ այսօր վերջապէս առիթ կ'ունենանք ի լոյս ընծայել Մեծ. Սարգիս էֆ. Քէչիչեանի միջոցաւ՝ որ կը նուիրէ զայն իր ողբացեալ եղբօրը՝ Բարսեղ էֆէնտի Քէչիչեանի անմահ յիշատակին։

Մ. ՆՈՒՊԱՐԵԱՆ

# ՖԱՈՒՍՏ

## ԹԱՏՐԵՐԳՈՒԹԻՒՆ ԵՐԵՔ ՄԱՍԵՐՈՎ

---

## ՆԱԽԱԲԱՆ

---

### ԵՐԿՆԻՑ ՄԷՋ

---

*ԱՍՏՈՒԱԾ, ԵՐԿՆԱՅԻՆ ԶՕՐՈՒԹԻՒՆՔ*
*յետոյ*
*ՄԷՖԻՍՏՕՖԵԼԷՍ*

Երեք հրեշտակապետք դէպ ի յառաջ կուգան

*Ռափայէլ.*—Արեւը երկրագունդերու ներդաշնակաւոր խմբերգին մէջ կը հնչէ ըստ վաղեմի ձեւոյն, և կայծակի նման արագասահ՝ իր կանոնաւոր արշաւը կը կատարէ։

Իր տեսքն անոնց ոյժ կ'ուտայ՝ թէեւ հրեշտակք անկարող կ'ըլլան զայն լաւ մը հասկնալու։ Արարչագործութեան հրաշալիքները անհասկանալի են, և միանգամայն չքեղ՝ առաջին օրուան նման՝ ուր ստեղծուեցան։

*Գաբրիէլ.*—Երկիրը՝ գեղապանծոյծ՝ իր վրայ հրաշալի արագութեամբ հոլովելով՝ կարգ ըստ կարգէ՝ եդեմական պայծառ լոյսէ կ'անցնի դէպ ի գիշերային խոր խաւար։

*Միքայէլ.*—Մրրիկը երկրէ դէպ ի ծովերը և ծովերէ դէպ ի երկիր կ'արշաւէ, և անոնց շուրջը շղթայ մը կը կազմէ՝ որու ցնցումները ահեղ են և սոսկալի.

միւս կողմէ փայլակը լուսաւոր շաւիղ մը կը հորդէ կայծակին առջեւ։ Բայց սակայն, անոնց վերեւը՝ ո՛ Տէր, Քու պաշտօնեաներդ լուսոյդ անդորր պայծառութիւնը կ'երկրպագեն։

Երեքնին.— Իր տեսքն անոնց ոյժ կուտայ, ևլն։

Մեֆիստոֆէլէս.— Տէր, ըստ որում գէթ մի անգամ կը մօտենաս մեզ, ըստ որում կ'ուզես իմանալ թէ վա՛րը՝ աշխարհի վրայ՝ գործերն ի՞նչ ընթացք ունին եւ սովորաբար խօսակցութենէս ալ կ'ախորժիս, այս խուռն երամին մէջ կը համարձակիմ դէպ ի քեզ յառաջանալ։ Ներէ՛ ինձ եթէ այնչափ հանդիսաւոր կերպով չեմ խօսիր, քանզի կը վախնամ որ այս ընկերութիւնը զիս չծանակէ բարձրաձայն. միւս կողմէ՝ սեթեւեթ խօսքերը իմ բերնիս մէջ կրնան ծիծաղ շարժել եթէ վաղուց ծիծաղելու սովորութիւնդ կորուսած չըլլայիր։ Արեգակի եւ երկնային գունդերու վրայ ըսելիք չունիմ, այլ սա՛ միայն կը տեսնեմ թէ մարդկային ազգը ո՛րչափ ինքզինք կը չարչարէ տարապարտուց։ Աշխարհի պզտիկ Աստուածը (մարդ) առջի ստեղծուած օրէն տարբերութիւն մը չունի ամենեւին, եւ անհեթեթքան մըն է միշտ։ Իմ կարծիքս այն է թէ աւելի պատշաճապէս կրնար ապրիլ՝ եթէ իր ուղեղին երկնային լուսոյ ճառագայթ մը հաղորդած չըլլայիր։ Եղկելին խելք եւ բանականութիւն կ'անուանէ այդ ճառագայթը՝ զոր անբան կենդանիներէ աւելի անբան կերպով կառավարուելու կը գործածէ միայն։ Եթէ Աստուածային տէրութիւնդ կը ներէ ինձ խօսիլ՝ մարդ արարածը այն երկայնոտուն ճպուռներուն կը նմանի՝ որ դալարեաց մէջ իրենց վաղեմի երգը երգելով կ'ոստոստեն եւ կը թռչտին։ Գոնէ դալարեաց մէջ մնար եւ

անկէ դուրս չելնէ՛ր։ Ո՛չ ամենեւին, կը տեսնես որ ամէն տեսակ աղբանոցներու մէջ կ'երթայ քիթը կը խօթէ յիմարաբար։

Աստուած.—Ուրիշ ըսելիք մը չունի՞ս բնաւ, և միշտ գանգատելո՞ւ պիտի գաս. ի՞նչ, միթէ քու խելքովդ երկրի վրայ աղէկ բան մը չկա՞յ ամենեւին։

Մեֆիստոֆելես.—Ո՛չ, Տէ՛ր, չկայ ամենեւին, ամենայն ինչ գէշ է հոն, գլխովին գէշ՝ ինչպէս եղած է ամէն ժամանակ. մարդերու թշուառութիւնները այն աստիճան արգահատանքս կը շարժեն՝ որ այդ խեղճ ազգը աւելի ևս չարչարել՝ պարզապէս խղճիս կը դպի։

Աստուած.—Ֆաուստը կը ճանչնա՞ս միթէ։

Մեֆիստոֆելես.—Գիտնակա՞ն Ֆաուստը։

Աստուած.—Իմ ծառաս։

Մեֆիստոֆելես.—Կը ճանչնամ անշուշտ այդ խեղճ արարածը՝ որ տարօրինակ կերպ մը ունի քեզ ծառայելու։ Այդ խենդին վրայ երկրային բան մը չես տեսներ բնաւ. ոչ իսկ ուտել և խմել։ Իր միտքը անդուլ անդադար անջրպետներու մէջ կ'արշաւէ, և ինքն իսկ իր խենդ մը ըլլալը կէս մը կը հասկնայ։ Ամենագեղեցիկ աստղերը կը հայցէ երկինքէն, և աշխարհքէ ալ՝ իր ամենավսեմ բերկրութիւնները, այլ սակայն չկայ բան մը՝ ո՛չ մօտէն և ո՛չ հեռուէն՝ որ անոր իղձերուն փոթորիկը կարենայ հանդարտել։

Աստուած.—Անխոնջ և անսպառ եռանդով խաւարին մէջ զիս կը փնտռէ նա, ես ալ կ'ուզեմ քիչ ատենէն զինքը դէպ ի լոյս առաջնորդել։ Պարտիզպանը՝ դալարող թուփին վրայ առաջէն կը տեսնէ այն ծաղիկներն և պտուղներն՝ որ յառաջ պիտի գան ու զարդանան յաջորդ եղանակին մէջ։

 

Մեֆիստոֆելէս.—Կ'ուզե՞ս գրաւ դնել թէ այդ ծառադ ալ պիտի կորսնցնես ձեռքէդ։ Այլ սակայն ինծի թո՛ղ ընտրել թէ ի՞նչ միջոցներով կամացուկ մը զինքը պիտի բերեմ իմ ճամբաս։

Աստուած.—Որչափ որ ապրի աշխարհի վրայ՝ Ֆաուսթ ծառաս փորձութեանց մէջ ձգելու հրաման կուտամ քեզ։ Ամէն ճամբորդող կրնայ անգամ մը իր ուղին կորսնցնել։

Մեֆիստոֆելէս.—Շնորհակա՛լ եմ մեծապէս, ըստ որում կենդանի արարածոց հետ կը սիրեմ իյնալ ելնել, և թարմ ու լեցուն այտերէ կ'ախորժիմ։ Կատուի կը նմանիմ որ մեռած մուկերէն ախորժ չզգար։

Աստուած.—Լաւ, քեզ հրաման կուտամ։ Այդ հոգին՝ իր աղբիւրէն հեռացնելով՝ քու ճամբուդ մէջ դի՛ր եթէ կարող ես. բայց քանի՜ ամօթահար պիտի մնաս՝ երբ հասկնաս թէ բարեգործ մարդ մը, իր խելքին չփոթ ուղղութեան մէջ՝ Տիրոջ անձուկ ճանապարհը կրնայ որոշել, և անոր հետեւիլ անսայթաք։

Մեֆիստոֆելէս.—Երկար չպիտի հետեւի այդ ճանապարհին, և գրաւը վաստկելուս մասին—բնաւ տարակոյս չունիմ։ Եթէ յաջողիմ՝ հարկաւ թոյլ պիտի տաս ինծ՝ որ հանգիստ սրտիւ այդ յաղթանակին վրայ պարծիմ ու խրոխտամ։ Կ'ուզեմ որ նա՝ իմ ազգակցիս՝ օձին նման ախորժիւ և հեշտանօք ուտէ հողը։

Աստուած.—Ես երբեք ատած չեմ քու նմաններդ, և կրնաս ուզած ժամանակդ առջեւս ներկայանալ։ Ուրացող ոգիներու մէջ՝ նորէն ամէնէ աւելի հաճելի է ինծ սատանութեան և խորամանկութեան ոգին։ Մարդը ծուլութեան հակամէտ արարած մըն է, և իր գործունէութիւնը կը թուլնայ շուտ, անոր համար կը

սիրեմ աշխոյժ և անհանդարտ ընկեր մը տեսնել իր քով՝ որ կրնայ ի հարկին բան մը հաստել խոկ՝ սատանային նման: Այլ դուք, երկնից ճշմարիտ զաւակներ, հրճուեցէ՛ք այն աշխոյժի և գեղութեան մէջ՝ ուր կը լողաք. այն անմեռ զօրութիւնը՝ որ յաւիտենապէս կը գործէ, զձեզ սիրոյ անոյշ պատուարներուն մէջ պահէ յաւէտ, և դուք պինդ և անյեղլի կերպով հաստատեցէք ձեր մտածումներուն մէջ Արարչագործութեան մշտափոփոխ և անորոշ պատկերները:

(Երկինքը կը գոցուի, հրեշտակք կը բաժնուին:)

*Մեֆիստոֆելէս.*— Ատեն ատեն հինաւուրց Աստուծոյ այցելութիւն ընելը կը սիրեմ, և չեմ ուզեր անոր հետ աւրուիլ: Արդարեւ գովելի բան է որ ատանկ վեհ ու հոյակապ էակ մը անկեղծ եղանակաւ զիջանի անձամբ խօսիլ սատանային հետ:

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

**Գիշեր. գոթական անձուկ սենեակ մը բարձրակամար։ Ֆաուստ անհանգիստ՝ իր գրակալին առջեւ նստած։**

*Ֆաուստ (առանձին).—Ափսո՜ս, բո՜ւր ափսոս, անձանձիր եռանդով և անընկճելի երկայնմտութեամբ փիլիսոփայութեան, իրաւագիտութեան, բժշկութեան, նաեւ աստուածաբանութիւն բոլոր տխուր գիտութեան խորերը թափանցելէ վերջը՝ այսօր՝ հէք յիմարս՝ ճիշդ միեւնոյն տգէտ վիճակին մէջ կը գտնուիմ, ուր էի յառաջ։ Ստոյգ է որ վարդապետ, գիտնականանունն ունիմ, և տասն տարիէ հետէ աշակերտներս ըստ կամս կ'առաջնորդեմ։ Եւ սակայն աւաղ մէկտեղ քաջ կը տեսնեմ որ ո՛չ բան մը ճանչնալու և ո՛չ բան մը հասկնալու կարողութիւն ունինք...։ Այս խեղճութիւնս բոլոր արիւնս գլուխս կը հանէ և գրեթէ կը խենդեցնէ զիս։ Իրաւ է թէ աշխարհիս մէջ գտնուած ամէն յիմարներէ, գիտուններէ, վարպետներէ, հեղինակներէ և վանականներէ աւելի բան գիտեմ. իրաւ է թէ խղճահարութեամբ և տարակուսով չեմ տանջուիր, և սատանայէն ու դժոխքէն ալ երկիւղ չունիմ. այլ սակայն՝ միւս կողմէ՝ ամէն հրճիւ և ուրախութիւն հեռացած են ինձմէ գլխովին։ Պատճա՞ռ, վասն զի ո՛չ օգտակար բան մը սորված ըլլալու գիտակցութիւնն ունիմ, և ոչ ալ բան մը կարող եմ սորվեցնել մարդոց՝ զանոնք լաւագոյն և իմ կարծիքներուս համեմատ կազմելու նպատակով։ Ո՛չ ինչք ունիմ, ո՛չ դրամ, ո՛չ մեծութիւն, ո՛չ իշխանութիւն աշխարհի մէջ. ասանկ կեանք մը շունը անգամ չուվարել։ Անկէ վերջ ուրիշ բան չմնար ընել՝ բայց եթէ*

մոգութեան դիրկը նետուիլ։ Ա՜խ, ո՞ւր էր թէ մոքի և խօսքի ոյժը թաքուն գաղտնիքներ պարզէր ինծի, և չհարկադրուէի չգիտցած բաներս խօսիլ ցաւ ի սիրտ. ա՜խ, ո՞ւր էր թէ աշխարհի մէջ ծածկուածները գիտնայի. և առանց այլ եւս անօգուտ բառերու հետ սեւեռած Յուլու՝ տեսնէի թէ ի՛նչ ծածուկ ոյժ և ի՛նչ յաւիտենական սերմեր կը պարունակէ բնութիւնը։ Դո՛ւ, ա՛ռատ արծաթափայլ, լուսին անմռունչ, հանէ՛ վերջին անգամ մըն ալ նայուածք մը ձգել իմ տառապանացս վրայ....։ Ի՛նչ գիշերներ անքուն անցուցած եմ այս գրակալիս քով։ Այն գիշերները՝ դու մելամաղձոտ բարեկամ, դէզադէզ գիրքերուս և տետրերուս վրայ կը ցուցնէիր ինձ քու տխրագին դէմքդ։ Ա՜խ, ինչո՞ւ չկարենայի քու անուշիկ լուսովդ մագլցի ելնել բարձր լեռներ, ոգիներու հետ անձաւներու մէջ դեգերիլ, մարգերու աժգոյն գալարեաց վրայ պարել, և գիտութեան բոլոր խեղձութիւնները մոռնալով՝ լողալ քու ցօղիդ զովութեան մէջ՝ աշխոյժ և առողջութիւն վերստացած։

Աւա՜ղ, աւա՜ղ, տակաւին իմ զնդանիս մէջ կը հեծծիմ, կը մաշիմ. ողորմելի ծերպ մը պատի՝ ուր երկնքի քաղցր լոյսը մինչեւ ձեղուն բարդուած այս թուղթերու, այս փոշոտ և որդնահար լեռնացեալ մատեաններու և գունաւոր ապակիներու մէջէն հազիւ հազ թափանց կը մտնէ։ Զորս կողմս ուրիշ բան չեմ տեսներ, բայց եթէ զաւաթներ, տուփեր, գործիքներ, փտած կահեր՝ նախնիքներէս ժառանգութիւն մնացած....։ Ա՛յս է ահա քու աշխարհդ, և տակաւ ա՜շխարհ անունը կը կրէ։ Եւ տակաւին կը հարցնե՞ս թէ ինչո՞ւ սիրտդ անհանգիստ կերպով մը կը ճնշու՜

կուրծքիդ մէջ, թէ ինչո՞ւ գաղտնի թախիծ մը կեն-սական ամէն ներքին շարժումներդ կը կասեցնէ. կը հարցնես դու այս բանը...: Եւ փոխ կենդանի բնու-թեան տեղ՝ ուր ստեղծած է զքեզ Արարիչը, գոլոր-շիէ և բորբոսէ միայն շրջապատուած կը գտնուիս, ըսել կ'ուզեմ կենդանեաց դիակներէ և մեռելի ոսկե-րոտիներէ:

Ազատէ՛ ինքզինքդ. նետուէ՛ անջրպետին մէջ: Ծայրէ ի ծայր Նոստրատամիւսի (*) ձեռքով գրուած այս խորհրդաւոր մատեանը չբաւե՞ր քեզ առաջնոր-դելու: Անով պիտի կրնաս աստղերու ընթացքը ճանչ-նալ, և եթէ բնութիւնը հաճի հրահանգել քու միտքդ՝ հոգւոյ ոյժը պիտի հաղորդուի քեզ, ինչպէս ոգի մը ուրիշ ոգւոյ մը կը հաղորդուի: Ի զո՛ւր դուն ամուլ զգայարանքով մը աստուածային նշաններու գաղտ-նիքները կը ջանաս հասկնալ այստեղ...: Ո՛վ դուք, ոգինե՛ր՝ որ չորս դիս կը թռչտիք, պատասխանեցէ՛ք ինծ՝ եթէ կը լսէք ձայնս: (Գիրքին կը զարնէ եւ միեւ-նոյն ժամանակ կը դիտէ մեծաշխարհի (macrocosme) նշանը:) Ո՛հ, այս երևոյթով ի՜նչ անուշ յափշտակու-թիւն իմ բոլոր էութիւնս կը գրաւէ: Նոր կեա՜նք մը, սուրբ և աշխոյժ կեանք մը իմ ջիղերուս և երակնե-րուս մէջ շրջան կ'առնու: Միթէ Աստուծո՞յ մը ձեռ-քով գծուած են այս տառերը՝ որք հոգւոյս ցաւերը կը մեղմեն, իմ հէք սրտս ուրախութեամբ կը լեցնեն՝ բնութեան խորհրդալի զօրութիւնները պարզելով չորս կողմս: Արդեօք ես իսկ Աստուա՞ծ մ'եմ, վասն զի

(*) Հռչակաւոր աստղահմայ (astrologue) որ ԺԶրդ դարուն մէջ ապրէր: Ծ. Թ.

ամէն ինչ մեկին և բացայայտ կը յայտնուի իմ առջեւ։ Այս պարզ գիծերուն մէջ աշխարհ իր կեանքի բոլոր շարժումը և ստեղծագործութեան բոլոր գործունէութիւնը կը յայտնէ իմ հոգւոյս։ Արդէն կ՚սկսիմ ճանչնալ իմաստնոյն սա՛ խօսքերուն ճշմարտութիւնը. «Ոգիներու աշխարհը փակուած չէ բնաւ, քու զգայարանքդ թմբրութեան մէջ է, և քու սիրտդ մեռած։ Ոտք ելի՛ր, աշակե՛րտ, և արշալուսոյ ծիրանեգոյն ճառագայթներուն մէջ թաթաւէ՛ անդադար քու մահկանացու կուրծքդ։» (Նշանը կը դիտէ)։ Ի՜նչպէս տիեզերքի մէջ ամէն ինչ կը շարժի։ Ի՜նչպէս՝ մէկը մէկալին մէջ՝ ամէն բան կը գործէ և կ՚ապրի միեւնոյն կեանքով։ Ի՜նչպէս երկնային իշխանութիւնք կ՚ելնեն եւ կ՚իջնեն ոսկեղէն դոյլերը ձեռքէ ձեռք անցընելով։ Երկինքէն մինչեւ երկիր կենսատու զօղ մը կը սփռեն անոնք՝ զօղ մը որ չորաբեկ հողը կը զովացնէ, եւ իրենց թեւերու շարժումը հնչական անջրպետները կը լեցնէ անբացատրելի ներդաշնակութեամբ։

Ի՜նչ տեսարան։ Բայց, աւա՜ղ, չո՜ր տեսարան մը միայն։ Ո՞ւր կարելի է բռնել զքեզ, բնութիւնդ անբաւ։ Մի՞թէ կարող չպիտի՞ ըլլամ քամել քու ստինքներդ՝ ուսկից երկինք եւ երկիր կախուած կը մնան։ Կ՚ուզէի խմել այդ մշտաբուխ կաթէն, այլ ամենուրեք կը հոսի այն, ամէն ինչ կ՚ողողէ և ես ի նանի՜ր անոր կարօտը կը քաշեմ։ (Յառուլով գրքին կը զարնէ, եւ երկրի Ոգիին նշանը կը դիտէ)։ Ի՜նչպէս այս նշանը այլազգ կերպով մը կը ներգործէ վրաս։ Ոգի՛ աշխարհի, կը մերձենաս ինծ, կ՚զգամ արդէն թէ զօրութիւններս կ՚աւելնան. արդէն նոր ըմպելիքի մը պէս կ՚եռամ և կը զեռամ, աշխարհի մէջ նետուելու՝ անոր յաջողու-

*թեանց և ձախողութեանց համակերպելու ոյժ կ'զգամ իմ վրաս, ինչպէս նաեւ փոթորկի դէմ մաքառելու և նաւիս շառաչիւններէն բնաւ ամենեւին չվախնալու արիութիւնը: Գլխուս վերեւը ամպեր կը դիզուին կը կուտակուին:—Լուսինը իր լոյսը կը ծածկէ...: Կանթեղը կը մարի, կը մխայ...: Բոցակէզ ճառագայթներ գլխուս չորս կողմը կը շարժին: Սարսուռ մը գմբէթէն իջնելով՝ զիս կը ճնշէ չարաչար: Կ'զգամ որ չորս կողմս կը տարուբերիս, Ոգի՛ դու՝ զոր կոչեցի: Ո՛հ, ի՜նչպէս կուրծքս կը պատռուի. զգայարանքներս նորանոր տպաւորութեանց առջեւ կը բացուին: Բովանդակ սիրտս անձնատուր կ'ըլլայ քեզ...: Ո՜հ երեւցի՛ր, երեւցի՛ր, կեանքս ալ կորանցնեմ՝ փոյթ չէ:*

(Գիրքը կը բռնէ, եւ Ոգւոյն խորհրդաւոր նշանները կ'արտասանէ: Շէկ բոց մը կը վառուի յանկարծ, եւ բոցին մէջէն Ոգին կ'երեւի:

Ոգի.—*Ո՞վ կը կանչէ զիս:*

Ֆաուսթ.—*Տեսի՛լ զարհուրելի:*

Ոգի.—*Զիս կանչեցիր: Շունչդ պտտուած սահմաններուս վրայ ներգործելով՝ զիս անկէ դուրս հանեց ակամայ: Եւ հիմայ...:*

Ֆաուսթ.—*Ո՛հ, չեմ կարող նայիլ քեզ:*

Ոգի.—*Դուն բուռն տենչով զիս տեսնել կը փափաքէիր, դուն զիս տեսնել և ինձ մոտիկ լինել կը ցանկայիր, ես ալ սրտիդ իղձը կատարել կ'ուզեմ:—Ահաւասիկ եմ: Ի՜նչ ողորմելի սարսուռ մը քու գերմարդկային բնութիւնդ կը գրաւէ: Ի՞նչ եղաւ այն բարձր ու վեհ փափաքդ, ո՞ւր մնաց այդ սիրտը՝ որ ինքզինքին մէջ աշխարհ մը հաստատելով՝ կը [illegible]*

զայն և կը բեղմնաւորէր խոկ՝ միւս աշխարհը բաւական չհամարելով, մեզ՝ Ոգիներուս՝ հաւասարիլ նկրտելով...։ Ո՞ւր ես, Ֆաուստ։ Դուն որ քու բոլոր ոյժովդ կը հրաւիրէիր զիս, հիմայ բոլոր էութեամբդ այդպէս սասանի՛ս ու սարսափի՛ս, և սողացող վատ միջատի մը նման ծո՛ւնր դնես առջեւս։

Ֆաուստ.—Ինչո՞ւ պիտի յաղթուիմ քեզմէ, ո՛ բոցեղէն ուրուական։ Ֆաուստն եմ ես, ես քու հաւասա՛րդ եմ։

Ոգի.—Կեանքի ովկիանոսին մէջ, և գործողութեան մրրիկին մէջ կ'ելնեմ կ'իջնեմ, կ'երթամ և կուգամ։ Ծնո՛ւնդ և Գերեզմա՛ն։ Յաւիտենակա՛ն ծով, մշտափոփոխ թեզան (trame), գործունի կեա՛նք՝ որու հիւսուածները կը պատրաստեմ ժամանակի բըզզացող մեքենային վրայ. հիւսուածք մշտատեւ և անկորնչելի՝ որք կենսակիր ագանելի են Աստուծոյ։

Ֆաուստ.—Ոգի՛ հաստիչ՝ որ լայնատարր աշխարհքի չուրջը կը ծփիս, ո՛հ, քանի՛ փոքր եմ քու առջեւ։

Ոգի.—Դու հաւասար ես այն ոգւոյն՝ զոր կը յղանաս մտքով, այլ հաւասար չե՛ս ինծի։

(Աներեւոյթ կ'ըլլայ)։

Ֆաուստ (կռնակին վրայ իյնալով).—Ի՞նչ, հաւասար չե՛մ քեզի...։ Որո՞ւ հաւասար եմ ուրեմն...։ Ես որ Աստուծոյ պատկերն եմ, քեզ իսկ հաւասար չըլլա՜մ։ (Դուռը կը զարնեն)։ Ո՛վ մահ։ Ծառաս պիտի ըլլայ դուռը զարնողը։ Իմ բոլոր երանութեանս շողը փճացաւ ահա...։ Այսպիսի վսեմ տեսիլ մը ինչո՞ւ ողորմելի ծառայի մը պատճառով ոչնչանար։

(Վակներ տան հագուստով եւ գիշերուան գդակով, ձեռքը կանթեղ մը։ Ֆաուստ արտնեղութեամբ մը երեսը կը դարձնէ անոր)։

Վակնէր.—Ներեցէ՛ք, Տէր վարդապետ, դուրսէն ձեր բացախօսութիւնը լսեցի, անտարակոյս յունարէն ողբերգութիւն մը կը կարդաք, և ես կարելի է օգուտ քաղեմ այդ արհեստին մէջ՝ որ մեծ յարգ ունի այսօր: Լսած եմ ստէպ թէ դերասան մը քահանայի դաս տալ ւ կարող է:

Ֆաուսթ.—Այո՛, եթէ քահանան դերասան մըն է, ինչպէս այս մեր ապրած ժամանակներուն մէջ բանն այդպէս կրնայ ըլլալ:

Վակնէր.—Ո՛հ, երբ մէկն այսպէս իր ընթերցանութեան սենեկին մէջ փակուած՝ հազիւ ուրեմն տօն օրեր մարդոց երեսը կը տեսնէ, և այն՝ հեռուանց և ակնոցի մը տակէն, ի՞նչպէս կրնայ յուսալ որ օր մը՝ համոզողութեամբ կարենայ առաջնորդել զանոնք:

Ֆաուսթ.—Երբեք այդ նպատակին չես կարող հասնիլ՝ եթէ ուժգնօրէն չզգաս, եթէ ներշնչութիւնը հոգիէդ դուրս չխոյանայ և մտիկ ընողներուն սրտերը ամենաբուռն յուզմամբ մը իր հետ չառնէ չտանի: Թէ բան չունիս՝ քու միտքդ ներսդ ամփոփէ՛, և կերակուր մը կազմելու համար իրարու հետ խառնէ՛ ու տաքցո՛ւր ուրիշ խնջոյքի մը մնացորդները...: Թէ բան չունիս՝ այն դէզադէզ մոխիրներէն՝ որոնց մէջ կը փչես՝ ողորմելի բոց մը դուրս ցայտել տո՛ւր...: Այդպէս ընելով կրնաս՝ եթէ բանը ախորժելի է քեզ՝ տղեկներու և կապիկներու հիացումը գրաւել. բայց սակայն այլոց սրտերուն վրայ երբե՛ք չպիտի ազդես՝ եթէ բուն իսկ սիրտդ չէ ճարտարախօսութեանդ աղբիւրը:

Վակնէր.—Այլ լաւ արտաբերութիւն մը ատենախօսին յաջողութիւնը կը կազմէ, և ես կ՚զգամ թէ տակաւին շատ հեռուն կը գտնուիմ:

Ֆաուստ.—Պարկեշտ յաջողութիւն մը փնտռէ՛, եւ շողշողուն յիմարութեան մը ետեւէն մի իյնա՛ր, իրաւունքը եւ խելքը յաղթանակել տալու համար արուեստի պէտք չկայ, եւ՝ եթէ լուրջ բան մը ունիս ըսելիք՝ պէտք չես ուշադրութիւնդ բառերու վրայ դարձնել։ Այո՛, ձեր փառաւոր ճառերը՝ ուր մարդկութեան սնոտիքը չքեղօրէն կը սեթեւեթէք, ամուլ են աշնան միգոտ հովին նման՝ որ գօս տերեւներուն մէջէն կը մրմռայ։

Վակներ.—Ա՜խ, արուեստն երկայն է, իսկ մեր կեանքը՝ կարճ։ Իմ անձիս վրայ խօսելով՝ գրական աշխատութեանցս միջոցին՝ գլխով ու սրտով կը տառապիմ ստէպ։ Քանի՜ դժուարին է գտնել դէպ ի աղբիւրները դիմել ելնելու միջոցը։ Մարդս դեռ կէս ճամբան չառած՝ մահը կրնայ հասնիլ վրան։

Ֆաուստ.—Մագաղաթ մը կրնա՞յ ըլլալ այն աստուածային աղբիւրը՝ ուր մեր հոգին իր յաւիտենական ծարաւը յագեցնէ։ Մարդս չմխիթարուիր՝ եթէ մխիթարութիւնը սրտին խորէն չբխի։

Վակներ.—Ո՜հ, չէ. մեծ վայելում մըն է հարկաւ անցեալ ժամանակներու ոգւոյն մէջ թափանցել, տեսնել թէ մեզմէ յառաջ իմաստուն մը ի՛նչ մտածած է, եւ թէ՝ ի՛նչպէս հեռուներէն ճամբայ ելած՝ իրմէ յառաջ անցած ենք յաղթական կերպիւ։

Ֆաուստ.—Ո՛հ, շա՜տ յառաջ անցած։ Բարեկամ, անցեալ դարերը եօթն կնքով զմռսուած գիրքն է մեզի համար։ Ժամանակներու ոգի կոչածդ՝ եթէ լաւ մը դիտես՝ հեղինակներու ոգին է՝ ուր ժամանակը կը ցոլանայ. իրապէս ոչինչ բան մըն է այն ստէպ՝ եւ [illegible]րկ մը բաւական է զմարդ ի փախուստ

փութացնելու։ Սեպէ՛ թէ պարկ մըն է այն՝ աղտեղութեանց, հին կահավայր մը, կամ մանաւանդ հասարակաց հրապարակ հռետորական խաղերէն մին՝ որոնց մէջ բարոյական աղուոր առածներ կը տեղան. վարագոյրին ետեւէն խաղցուող թղթեայ կամ փայտեայ խամաճիկներու բերնին մէջ շ՛ատ և շա՛տ կը դրուին այդպիսի աղուոր առածներ։

Վակնէր.—Բայց աշխա՞րհը, մարդկային սի՞րտն ու միտքը...։ Բնական է որ մարդս փափաքի անոնց վրայօք քիչ մը բան հասկնալ։

Ֆաուսթ.—Ո՛հ, հասկնա՛լ։ Ո՞վ պիտի համարձակի տալ մանկան իր ճշմարիտ անունը։ Այն սակաւաթիւ մարդիկ՝ որք բան մը կրցան հասկնալ, և որոնք իրենց գաղտնիքը սրտերնուն մէջ չպահելու յիմարութիւնը գործեցին, այն մարդիկ՝ որ իրենց զգացումները և գաղափարները ժողովրդեան յայտնեցին, ամէն ժամանակ խաչուեցան և հրոյ մատնուեցան։— Կ'աղաչեմ, բարեկամ, զիս մինակ թո՛ղ, զի ժամանակը ուշ է. այս անգամ խօսքերնիս հոս կապե՛նք։

Վակնէր.—Երկար ժամեր յօժարամիտ կը հրաժարէի քունէս, ձեզ նման հմուտ ու գիտնական մէկու մը տեսութենէն օգտուելու համար, այլ վաղը՝ ինչպէս անցեալ Զատկի օրը՝ թո՛յլ պիտի տաք ինձ որ ձեզ ուրիշ հարցում մը ընեմ։ Եռանդով ուսման հետեւէ լինկայ, և ստոյգ է թէ շատ բան գիտեմ. այլ կը փափաքիմ ամէն բան գիտնալ։ (Դուրս կ'ելնէ)։

Ֆաուսթ (առանձին).—Ի՜նչպէս խեղճ գլուխ մը առանց յուսոյ նշոյլի չմնար երբեք։ Այս մարդը ոչընչութեանց հետամուտ է միայն, իր ժլատ ձեռքը գանձեր գտնելու համար երկիրը կը պեղէ, և փոքրիկ

սրդ մըն ալ գտնելուն՝ տեսնես որ գոհ կ՚ըլլայ։

Ի՜նչպէս սատանկ մարդու մը ձայնը ժտեցաւ հնչել այնպիսի տեղ մը՝ ուր ոգւոյն շունչը շրջապատեց զիս պահ մը յառաջ։ Այլ բարէ՜, այս անգամ շնորհապարտ եմ քեզ, ո՛ երկրի զաւակներուն ամէնէ ողորմելին։ Դու խլեցիր զիս այն յուսահատութենէն՝ որ խելքս պիտի թռցնէր գլխէս։ Ա՜հ, այն երեւոյթն ա՜յնչափ հսկայ՝ ա՜յնչափ վիթխարի բան մըն էր՝ որ անոր դիմաց իմ անձս ստուգապէս թզուկ մը կ՚զգայի։

Ես, պատկերս Աստուծոյ, որ յաւիտենական ճըշմարտութեան ջինջ հայելիին հասած կը կարծէի ինքզինքս, որ՝ երկրի զաւակներէն մեկուսի և կղզիացեալ՝ երկնքի պայծառութեան իղձը կը տածէի, եւ որ քերովբէներէ գերագոյն՝ բնութեան երակներուն մէջ ազատօրէն լողալու կարող կը կարծէի ինքզինքս, և՝ ինքս հաստիչ մը դարձած՝ միտքս դրած էի Աստուծոյ մը կեանքը վայելել, կարող եղա՞յ իմ նախազգացումներս չափել սատանկ ծայրագոյն բարձրութեան մը հետ...։ Շանթահարիչ խօսք մը ո՜րչափ հեռուները նետեց զիս։

Քեզի հաւասարելու յաւակնութիւնը չունեցա՞յ միթէ...։ Եթէ զքեզ առ իս քաշելու մասին զօրութիւնս բաւեց, ներկայութիւնդ շարունակել տալու համար թերացաւ այդ զօրութիւնը։ Այն երջանիկ ժամուն մէջ ինքզինքս պզտի միանգամայն մե՜ծ կ՚զգայի, դու վերստին մարդկային անստուգութեան մէջ մղեցիր զիս անողորմաբար։ Ո՞վ պիտի հրահանգէ զիս այսուհետեւ, և ի՞նչ բանէ պէտք եմ զգուշանալ. հա՞րկ է արդեօք հնազանդիլ այս դրդումին։ Ա՜հ, մ ր վշտերուն չափ մեր գործողութիւններն ալ կը կասեցնեն մեր կենաց ընթացքը։

Մեզմէ հետզհետէ աւելի օտարացած նիւթ մը՝ մօտէն յղացած ամէն վսեմ բաներու կը դիմադրէ. երբ այս աշխարհի բարիքները ձեռք անցունենք՝ անոնցմէ գերազանցագոյն բաները ստութեան և ցնորքի տեղ կը դնենք։ Մեզ կեանք տուող վեհ զգացումները՝ երկրի զգայութիւններուն տակ հեղձամղձուկ՝ կը տկարանան ի սպառ։

Երեւակայութիւնը՝ որ իր թռիչքին յանդգնութիւնը ի հանդէս բերելով՝ ուզեց յաւիտենականութեան մէջ տարածուիլ լիայոյս, անձուկ միջոցէ մը գոհ կ'ըլլայ երբ տեսնէ թէ իր երազած բոլոր երանութիւնը անհետ կը կորնչի ժամանակի վհին մէջ։ Հնհնուքը կը հաստատուի մեր սրտին խորը՝ գաղտնի ցաւեր ար- տադրելով հոն, և շարունակ յուզուելով՝ բնաջինջ կ'ընէ ամէն ուրախութիւն և հանգիստ. Նորանոր դի- մակներով կը զարդարուի շարունակ. մերթ տուն մը, արքունիք մը. մերթ կին մը, զաւակ. մերթ հուր, ջուր, թոյն և դաշոյն...։ Կը դողանք այնպիսի բա- ներէ՝ որ երբեք չպիտի հասնին մինչեւ մեզ, և կու- լանք շարունակ այնպիսի բաներու վրայ՝ զորս չենք կորսնցուցած բնաւ։

Աստուծոյ չեմ հաւասարիր։ Ասոր այնպէս ըլլալը խորունկ կերպով կ'զգամ. կ'զգամ թէ փոշիի մը մէջ ապրող որդին կը նմանիմ՝ որ սնունդ փնտռած ժա- մանակ ճամբորդին ոտքին տակ ջախջախուած՝ կը թաղուի հողին մէջ։

Այս բարձր որմին հարիւրաւոր դարակներուն վը- րայ պահուած բաները, բոլոր այս հինումին աւար- կաները՝ որոնց անուններով այս որդնահար աշխար- հին կաշկանդուած կը մնամ, նոյն իսկ փոշի չե՞ն մի-

թէ....։ Պիտի գտնե՞մ հոս ինծի պակասածը։ Գուցէ այս հազարաւոր հատորները պէտք պիտի ըլլայ կարդալ՝ համոզուելու համար թէ մարդիկ ամէն բաներու վրայ յոգնած, չարչրկուած են, և դէս ու դէն հազիւ ուրեմն երջանիկ մահկանացու մը երեւցած է աշխարհի վրայ։—Ո՛վ դու, հէք գա՛նկդ թափուր, ինչո՞ւ հեգնական ծաղր մը ուղղելու պէս կ'ըլլաս ինծի, արդեօք ըսելո՞ւ համար թէ՝ եղաւ ժամանակ մը ուր ուղեղդ չփոթ տեսիլներով լեցո՞ւն էր իմինիս նման. Եթէ՝ լոյս փնտռեց այն, և թէ տխուր մթնշաղի մը ճշմարտութիւնը խուզարկելով՝ դեգերեցա՞ւ ողորմելի կերպով։ Ո՛վ դուք բոլոր գործիքներ՝ զորս դիմացս կը տեսնեմ, ինձ այնպէս կը թուի թէ կը ծաղրէք զիս ձեր բոլոր ճախարակներով, ճարմանդներով և գլաններով։ Դրան դիմացը կը գտնուէի, և դուք որպէս թէ զայն բացող բանալիքը պիտի ըլլայիք։ Թեպէտ ստոյգ է թէ բանալիէ մը աւելի խորտուբորտութիւններ ու ծալուծուկներ ունիք, այլ աւա՜ղ, պարզունակները չէք կարող իրենց տեղէն վերցնել հանել։ Բնութիւնը՝ որ նոյն իսկ արձակ լուսոյ մէջ լի է խորհուրդներով, թոյլ չի տար բնաւ որ իր գաղտնիքները պարզուին, և չկայ լծակ մը, չկայ մեքենայ մը որ բռնադատէ զայն՝ իր պահել ուզածը յայտնելու իմ մտքիս։ Եթէ այս հին ու փուտ կազմածները՝ որ օգուտ մը չունեցան, հոս կը գտնուին, զանոնք հաւաքողը ես չեղայ, այլ հայրս։ Հնօրեայ ճախարա՛կ, գրակալիս աղօտ կանթեղը շա՜տ և շա՜տ ժամանակներ մրոտեց զքեզ։ Ո՛հ, աւելի լաւ կ'ըլլար ցրուել մնացած այս սնոտի բաները քան թէ անոնցմով երկար տքնութիւններ խափանել։—Քու հօրմէդ ժառանգած բաներդ ընդունէ՝ ունեցած ըլլա-

լու համար։ Ինչ որ բանի մը չծառայեր՝ բեռ մըն է ծանրակիր, այլ օգտակար ու պիտանին այն է՝ զոր միտքը կը հաստէ մարերկրորդի մը մէջ։

Ինչո՞ւ ուրեմն իմ նայուածքս դէպ ի սա տեղը կը բարձրանայ միշտ, միթէ այս փոքրիկ սրուակը աչաց համար մագնիսական ձգողութի՛ւն մը ունի։ Ինչո՞ւ այնպէս կը թուի ինձ յանկարծ, թէ միտքս աւելի լոյս՝ աւելի շողիւն կը տեսնէ, ինչպէս նսեմաստուեր անտառ մը՝ որ լուսնի մէկ պայծառ ճառագայթը կ'ընդունի։

Կ'ողջունեմ զքեզ, ո՛ մենաւոր բըշակ՝ զոր կը բըռնեմ ջերմեռանդ յարգանքով. ի քեզ մարդկային միտքը և ճարտարութիւնը կը պատուեմ։ Քնաբեր ամենաքաղցր հիւթերու մզուածքով մը լեցուն՝ ամէն մահասու զօրութիւններն ևս կը պարունակես դու. հապա՛ քու շնորհներդ մի՛ զլանար տիրոջդ։ Զքեզ տեսած ժամանակս՝ ցաւս կը թեթեւնայ։ Զքեզ բռնած ժամանակս յոյզս կը նուազի և մտացս փոթորիկը կը փարատի տակաւ։ Այնպէս կ'զգամ ինքզինքս թէ լայնատարր ովկիանոսին մէջ առաջնորդուած ըլլամ, որու ջուրերու հայելին ոտիցս տակ կը պարզուի լռիկ. Նոր արփի մը կը ծագի ահա հեռուն՝ անծանօթ ափերուն վրայ։

Հրեղէն կառք մը օդին մէջ կը սաւառնի, և իր արագաթռիչ թեւերը դէպ ի իմ մօտս կը խոյանան. երկնից տափարակ դաշտավայրին վրայ՝ նորանոր գունդերու անհուն գործունէութեան մէջէն՝ նորանոր ճամբաներ հարթելու պատրաստ կ'զգամ ինքզինքս։ Բայց դո՛ւ, ո՛վ գձուձ և աննշան, այդ վսեմ կեանքն և այդ երկնային յափշտակութիւններուն [ինչպէս

կրնաս արժանանալ . . . ։ Ոչ ուրիշ կերպ՝ բայց եթէ երկրի քաղցրիկ արեւին վայելումէն զրկելով մարմինդ և յանդուգն փորձ փորձելով խորտակել այն դուռները՝ որոնց առջեւ ամէն մահկանացու կը դողայ ու կը սարսռի։ Ահա՛ ժամանակը գործով ապացուցանելու՝ որ մարդու մը արժանապատուութիւնը Աստուծոյ մեծութենէ վար չմնար բնաւ։ Պէտք չէ՛ դողալ այն մթագին վհին առջեւ՝ ուր երեւակայութիւնը կարծես թէ բուն իր տանջանքներուն կը դատապարտէ ինքզինք. պէտք չէ՛ սարսռիլ այն անձուկ ճամբուն առջեւ՝ ուր կը փողփողէ բոլոր դժոխք։ Արիացի՛ր խիզախ քայլով մը մօտենալու այդ ճամբուն՝ հոն ոչնչութիւնը գտնելու վտանգով իսկ։

Եկի՛ր հիմայ քու հին պատեանէդ, ո՛ բաժակ՝ շինուած ամենայջինջ յախճապակիով, եկո՛ւր, կ'ըսեմ, քու պատեանէդ՝ որու մէջ ա՜յնչափ երկար տարիներ մոռցայ զքեզ։ Ժամանակաւ հօրս խնջոյքներուն մէջ կը շողշողայիր, ամէնէ կախարդերես կոչնականները կը զուարթացնէիր ձեռքէ ձեռք պտըտելով։ Իւրաքանչիւր ոք՝ երբ իր կարգը գար՝ իրեն պարտք կը սեպէր ի մի ումպ պարպել զքեզ, և քու շուրջդ գտնուած քանդակներու աղուորութիւնը բանաստեղծութիւններով հռչակել։ Դու երիտասարդութեանս գիշերները կը յիշեցնես ինձ. ա՜լ անկարելի է որ հիւրի կամ կոչնականի ձեռք տամ զքեզ, և քու սքանչելի զարդերդ ալ չպիտի երգեմ ոտանաւորներով։ Ահաւասիկ ըմպելի մը որ սեւագոյն ջրով կը ներկէ զքեզ և զոր պիտի խմեմ ամենայն երկիւղածութեամբ։ Ես ընտրեցի զայն, ես պատրաստեցի, և իմ վերջին խմելիքս ա՛յդ պիտի ըլլայ. ինչպէս հին ժամանակներու սրբանուէր

 

ըմպելի մը՝ գեղեցկագոյն օրուան մը արշալոյսին կը նուիրեմ զայն իմ բոլոր հոգւով։ (Բաժակը բերնին կը տանի։—Զանգակներու եւ խմբերգներու ձայներ։)

Դաս Հրեշտակաց.—Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Թող ուրախանան մահկանացուք՝ որք մոլութեան և անիրաւութեան կապանքներու մէջ կաշկանդուած կը հիւծեն։

Ֆաուստ.—Ի՞նչ խուլ մրմնջիւններ, ի՛նչ որոտալի ձայներ բաժակն ուժգին կը խլեն իմ ծարաւի շըրթունքներէս։ Զանգակներո՞ւ հնչիւնը Զատկի հասած ըլլա՞լը կը ծանուցանէ արդեօք։ Աստուածային պարերը այն մխիթարութիան երգե՞րը լսելի կ՚ընեն՝ որք գերեզմանի խաւարէն ելլելով և հրեշտակներու շըրթունքներէն կրկնուելով՝ նոր ուխտի մը առաջին գըրաւականն եղան։

Դաս Կանանց.—Մենք հաւատացեալ կանայքս, անոր մերկ անդամները անուշահոտ իւղով լուացած էինք։ Ծրիզներով և ազնիւ կերպասներով պատած՝ գերեզմանին մէջ պառկեցուցած էինք զայն։ Եւ սակայն, աւա՜ղ, հոս չէ՛ ալ Քրիստոս. իր մարմինը անկարելի է գտնել։

Դաս Հրեշտակաց.—Քրիստոս յարեաւ ի մեռելոց. երանի՜ այն սիրատենչիկ հոգւոյն՝ որ համառքով և խոնարհութեամբ կը տանի փորձութեանց և նախատանաց։

Ֆաուստ.—Երկնքի երգե՛ր, քաղցրալուր երգե՛ր, ինչո՞ւ կը փնտռէք զիս փոշիի մէջէ. անոնց համար հնչեցէք՝ զորս կրնաք յուզել տակաւին։ Ձեր աւետած լուրը կը լսեմ, այլ հաւատք կը պակսի ինձ՝ զայն ընդունելու համար, և հրաշքը հաւատքին ամենէ սի-

րական զուակն է։ Չեմ համարձակիր ես տենչալ այն սահմաններուն՝ ուր աւետեաց զեկոյցը կը հնչէ. և սակայն այս երգերով՝ զորս մանկութեանս ժամանակ լըսած եմ, կ'զգամ թէ կը վերադառնամ կեանքի։ Հին ատեններ երկնային սիրոյ համբոյրը՝ կիրակի օրուա հանդիսաւոր լռութեան միջոցին՝ իմ վրաս կ'իջնէր. այն ժամանակները զանգակներու ծանրահնչի ն ձայնը օրօրէր զիս անոյշ նախազգացումներով, և աղօթքն լ ամէնէն բուռն վայելումն էր սրտիս. անհասկանալ և մաքուր իղձեր դէպ ի անտառներն ու մարգագետիններ կը տանէին զիս, և անոյշ արցունքներու հեղեղի մը մէջ անծանօթ աշխարհ մը իր ամբողջութեամբ կը պարզուէր իմ առջեւ։ Այս երգերէ ետք՝ մանկութեան սիրուն խաղերը և Զատկի հաճոյքները կուգային. ո՜հ, մանկական զգացումներով զեղուն յիշատակը կը կասեցնէ զիս այն վերջին յանդուգն քայլին մէջ՝ զոր պատրաստուած էի առնելու։ Հնչեցէ՛ք տակաւին, ո՛ քաղցր օրհնութիւնք երկնից, արտասուքներս կը հոսին, երկիրը միւս անգամ շահեցաւ զիս։

Դաս Աշակերտաց.—Յարութիւն առած՝ գերեզմանէն դուրս սրացաւ վեհօրէն. անապառ հրճուանաց օթեւանին կը մօտենայ ահա։ Բայց՛, մենք տակաւին այս աշխարհի թշուառութեանց մէջ թաղուած կը մնանք, զմեզ՝ իր հաւատարիմները՝ կը թողու որ տառապինք կենցաղի մէջ։ Ո՛վ Տէ՛ր, մեզ վշտի առիթ կ'ըլլայ երանութիւնդ։

Դաս Հրեշտակաց.— Քրիստոս յարեաւ ապականութենէ։ Խորտակեցէ՛ք ուրախութեամբ ձեր շղթաները։ Ո՛ դուք, որ կը փառաւորէք զայն բարի գործերով, և ձեր սիրով կը վկայէք անոր համար, որ ձեր ինչքերը կը բաժնէք եղբարց հետ, և անոր խօսքը քարոզէք ամէնուրեք, ահա՛ կուգայ Տէրը, խոստանալով ձեզ երկնից խնդութիւնը։ Կը մերձենայ Աստուած. հո՛ս է Տէրը։

# ՔԱՂԱՔԻՆ ԴՐԱՆ ԱՌՋԵՒ

## ՇՐՋԱԳԱՑՈՂՔ (ամէն կողմէ դուրս կ'ելլեն)

*Բազմաթիւ գործաւոր աշակերտներ*.— Ինչո՞ւ տակէ կ'երթաք:

*Այլք*.— Որսորդներու դիմաւորը կ'երթանք:

*Առաջինները*.— Մենք դէպ ի ջաղացք կ'երթանք:

*Գործաւոր մը*.— Եթէ ինծի մտիկ կ'ընէք՝ դէպ ի լճակ գացէք:

*Ուրիշ մը*.— Այն կողմի ճամբան աղուոր է:

*Երկուքը միասին*.— Իսկ դու ի՞նչ կ'ընես:

*Երրորդ մը*.— Մէկալներուն հետ կ'երթամ:

*Չորրորդ մը*.— Պուրկտորֆ չգա՞ս. հոն ամենասիրուն աղջիկներ, զօրեղ գարեջուր և սիրային դաւեր պիտի գտնես:

*Հինգերորդ մը*.— Զարմանալի ես դու: Միթէ կրանակդ կը քերուի՞ երկրորդ անգամ. ես չեմ երթար Պուրկտորֆ, ես այն տեղէն կը վախնամ:

*Սպասուհի մը*.— Ո՛չ, ո՛չ, ես քաղաք կը դառնամ:

*Ուրիշ սպասուհի մը*.— Այն կտրիճն կաղամախիներուն տակ պիտի գտնենք:

*Առաջին սպասուհին*.— Ինծի համար հաճոյք մը չի կայ բանին մէջ. Նա քու քով պիտի նստի, և մարգագետնին վրայ քեզի հետ պիտի պարէ միայն. ինծի ի՞նչ չահ կայ քու զուարճութիւններէդ:

*Միւս սպասուհին*.— Այսօր մինակ չպիտի գայ, ըսաւ թէ դեղձան երիտասարդն իրեն հետ պիտի ըլլայ եղեր:

Դպրոցական մը.—Տե՛ս սա սպասուհիները՝ ինչպէս շուտ կը քալեն. եկո՛ւր, բարեկամ, անոնց հետ միատեղ երթանք։ Զօրեղ գարեջուր, կծու ծխախոտ և հագուած չքուած աղջիկ, ասոնք իմ սիրած բաներս են։

Բաղխեանուհի մը.—Տե՛ս անգամ մը սա սիրուն սպատանիները։ Մե՛ղք իրենց որ այդ ճլթիկներուն ետեւէն կը վազեն՝ երբ կարող են ընտիր ընկերութիւն մը գտնել։

Երկրորդ դպրոցական մը (առաջինին).— Այդչափ շուտ մի՛ երթար։ Երկու աղջիկ կուգան ետեւէս՝ որք շատ սիրուն կերպով հագուած են։ Անոնցմէ մին իմ դրացուհիս է, ես քիչ մըն ալ զարնուած եմ անոր։ Կամաց կամաց կը քալեն, և քիչ ատենէն զմեզ ալ պիտի առնեն իրենց հետ։

Առաջին դպրոցականը.—Ո՛չ, բարեկամ, ես նեղուիլ չեմ սիրեր։ Շուտ եկո՛ւր, որպէս զի որսն աչքերնէս չփախցնենք։ Շաբաթ աւելի կոթ բռնող ձեռքը՝ կիրակի սքանչելի կերպով կը գգուէ զքեզ։

Բաղխենի մը.—Ո՛չ, նոր շահածը իմ բանիս չգար, հիմայ որ այդ աստիճանին բարձրացաւ՝ քիթն ա՛լ աւելի պիտի մեծնայ։ Եւ ի՞նչ օգուտ ունի քաղաքին, միթէ գործերն երթալով աւելի գէշ ընթացք մը չառի՞ն։ Հիմայ ուրիշ ատեններէ աւելի հնազանդիլը պէտք է, միանգամայն և աւելի վճարել։

Մուրացկան մը (կ'երգէ).—

Բարեսիրտ տեա՛րք, տիկնա՛յք չքնաղ
Զուարթադէմ, հագուած չքուած,
Իջեցուցէ՛ք իմ վրայ, աւա՜ղ,
Ձեր կարեկից գթոտ նայուած։

Ազնիւ սրտեր ձեզի նման՝
Ուրախ կ՚ըլլան գործով բարի,
Եւ ալ թշուառս հունձք պատուական
Քաղե՛մ գոնէ ասանկ օր մի։

*Ուրիշ խաղքենի մը*.—Կիրակի և տօն օրեր ամենէ աղէկ բանն՝ կախիններու և պատկերագիրներու վրայ խօսիլն է, մինչդեռ հեռուներն՝ Ասիայի մէջ՝ ժողովուրդք իրարու գլուխ կը պատռեն։ Մարդ պատուհան կը նստի, գինւոյ բաժակը կը պարպէ, գետին վրայ երփներանգ նաւերը կը տեսնէ՝ որք կ՚անցնին. իրիկունը զուարթօրէն տուն կը դառնայ՝ օրհնելով խաղաղութիւնը և այն անդորր կացութիւնը՝ զոր կը վայելենք։

*Երրորդ խաղքենի*.—Ես ալ քեզի պէս եմ, սիրելի դրացիս. ուրիշ տեղեր ուզածնուն չափ իրարու գլուխ պատռեն և տակնուվրայ ըլլան, միայն թէ տանս կարգ ու կանոնը չաւրուի։

*Պառաւ կին մը* (նորահաս օրիորդներուն).—Ո՛հ, ի՜նչ աղուոր հագուած են, ի՜նչ աղուոր բան է երիտասարդութիւնը։ Ձեզ տեսնելով ո՞վ խելքը պիտի չը թռցունէ։ Է՛հ, այդչափ հպարտութիւն պէտք չէ՛...։ Մտածեցէ՛ք թէ ես ձեր փափաքները կատարելու միջոցներ կրնամ հայթեյթել։

*Դեռահաս խաղքենուհի*.—Եկուր, Ակադ., չեմ ուզեր հասարակութեան հետ այս պառաւ կախարդին հետ երեւիլ, սակայն անցեալները գիշեր մը ապագայ տարփածուս իսկապէս ցուցուցի նձ։

*Ուրիշ խաղքենուհի մը*.—Ինձ ալ ցուցուց իմ ապագայ տարփածուս, վահանակնի մը մէջ՝ զինուորի հագուստներ հագած, ուրիշ մէկ շատ զինուորներու

հետ: Զորս կողմս կը նայիմ, ամէն կողմ կը փնտռեմ այդ տարփածուն, այլ՝ ի զո՜ւր, չուզեր իր երեսը ցուցնել:

Զինուորներ.—

Քաղաքներ պատած
Պարսպով, բերդով.
Աղջիկներ պճնած
Գեղով և զարդով.
Պատիւ հրամայէ
Փորձել յարձակմունք.
Գործը դիւրին չէ,
Այլ կ'արժէ ճգունք:

Փողերու ձայնէն
Զօրքեր քաջապէս
Ի պայքար դիմեն
Եւ կամ ի հանդէս:
Նախ դէմ կը դնեն
Քաղաք և աղջիկ,
Այլ շուտ կը յանձնեն
Իրենց բանալիք:

Պատիւ հրամայէ
Փորձել յարձակմունք,
Գործը դիւրին չէ,
Այլ կ'արժէ ճգունք:



## ՖԱՈՒՍԹ, ՎԱԳՆԵՐ

Ֆաուստ.—Գարնան անոյշ և կենսատու ժպիտով հեղեղք և առուք խորտակեցին իրենց սառեղէն բանտը, գեղեցիկ յոյս մը կը դալարի հովտին մէջ. հին ձմեռը հետզհետէ տկարանալով՝ կամաց կամաց դէպ ի ցից լեռները կը քաշուի՝ խոյս տուած միջոցին սառուցեալ այլ տկար և անզօր հայուածքներ նետելով մարգագետիններու վրայ. արեւն ասկէ վերջը կը փարատէ ամէն չորութիւն և սպիտակութիւն, և կեանք և անոյշ ցնորք կը թագաւորէ ամենուրեք. անոր կենսաւէտ ճառագայթից ներքեւ ամէն ինչ նորանոր գոյներ կ՚առնէ ու կ՚ոգեւորի: Սակայն իր ընթացքը կատարած ժամանակ արդեօք մէյմէկ ծաղիկնե՞ր պիտի կարծէ այս հագուած չքուած բազմութիւնը՝ որոնցմով դաշտը ծածկուած է...: Հեռանանք այս բլուրներէս քաղաք վերադառնալու համար: Խուռն բազմութիւն մը այդ մութ ու խորունկ դռնէն դուրս կը նետուի, իւրաքանչիւր ոք այսօր ինքզինքն արեւուն կը ցուցնէ. իրաւամբ կը տօնախմբեն Աստուծոյ յարութիւնն՝ ըստ որում իրենք իսկ յարութիւն առած են մեռելութենէ: Ցած տուներու մթագին սենեակներէ, օրական զբաղումներու կապերէ ազատուած՝ գըլուխնուն վրայ գտնուող յարկերէ և ձեղուններէ, անձուկ դռներու աղտեղութենէ և եկեղեցիներու խորհրդաւոր մթութենէ հեռացած՝ լոյս կը վայելեն ամենքն ալ: Տեսէ՛ք անգամ մը, տեսէ՛ք, ի՛նչպէս ժողովուրդը պարտէզներու և դաշտերու մէջ կը խառնի. ի՛նչպէս ուրախ նաւակներ գետին լայնքն ու երկայնքը կտրելով կ՚անցնին կ՚երթան... և այն վերջին նաւա՛կը՝ որ մինչեւ բերանը լեցուած՝ կը զատուի միւս-

ներէ։ Լերան ամենէ հեռաւոր արահետներն իսկ պերճ ու չքեղ հագուստներէ կը փայլին ու կը շողշողան։ Արդէն գիւղին ժխորը կը լսեմ, ժողովրդեան դրախտն ա՛յդ է։ Մեծ ու պզտիկ կը ցատքեն զուարթաբար․ ո՜հ, այստեղ մարդ ըլլալս կ՚զգամ, այստեղ կը համարձակիմ մարդ ըլլալ։

Վակներ․—Տէ՛ր վարդապետ, պատուաւոր և օգտաշատ բան է ճեմել ձեզի հետ, սակայն ճշմարիտը խօսելով՝ փափաք չեմ զգար այդ բազմութեան մէջ երթալ խառնուիլ, վասն զի կ՚ատեմ ինչ որ գռեհիկ է։ Իրենց ջութակները, ձայները և աղմկալի զբօսանքները տաղտկալի են ինձ համար։ Դիւահարներու նման ոռնալու ձայներ կը հանեն, և ասոր անունը կը դնեն պար և ուրախութիւն։

Գիւղացիք, (Թմբլիներու տակ)․

## ՊԱՐ ԵՒ ԵՐԳ

Իրենց փարախն հովիւք թողլով՝
Կ՚առաջնորդեն սրինգներով
Հագուած չքուած սիրուհիներ․
Թմբլիներու տակ հաւքուեր՝
Պար կը բռնեն, կը ցաքռտեն
Հա՜, հա՜, հա՜,
Լա՜, լա՜ լա՜,
Զգուշացէ՛ք չելլել չափէն։

Խիտ շրջանակ պարն էր կազմած՝
Երբ յանկարծուստ մէկ խաչնարած
Կը մտնէ կոյս մ՚իր արմուկով․
Սա դէմքն անոր դարձունելով՝
Ինչ անշնորհ, կ՚ըսէ, տղայ․

Հա՛, հա՛, հա՛,
Լա՛, լա՛, լա՛,
Կոպիտին մէկն է սախկայ։»

Արշաւասոյր էին քայլեր,
Կը թռչէին՝ ռօպաներ վեր.
Մէյ մ'ալ նայիս ոտք կ'երկրայ...
Կարմիրն երես ի վեր կ'ելլայ,
Եւ իրար վրայ ամէնքնին ալ
Հա՛, հա՛, հա՛,
Լա՛, լա՛, լա՛,
Կ'իյնան յախուռն, կ'արժէ՛ տեսնալ։

«Մի՛ ինձ այդպէս դպիր, աղէ՛։
—Ձայն մի՛ հաներ կինըս հոս չէ,
Ի՛նչ գեղեցիկ պատեհութիւն։»
Եւ կը տանի զայն դուրս իսկոյն....։
Մէկալ կողմէ՝ միշտ անխափան,
Հա՛, հա՛ հա՛,
Լա՛, լա՛, լա՛,
Պար ու նուագ յառաջ կ'երթան։

Ծեր գիւղացի մը.—Տէր վարդապետ, ազնուութիւն մըն է ձեր կողմէ՝ որ զմեզ չէք արհամարհեր այսօր, եւ դուք որ մեծ գիտնական մըն էք՝ կուգաք կը խառնուիք այս խուժանին մէջ։ Հաճեցէ՛ք ուրեմն ընդունիլ այս գեղեցիկ թակոյկը՝ զոր պաղ ջուրով լեցուցի ձեզ բերելու համար։ Կը փափաքիմ ի սրտէ որ ոչ միայն ձեր ծարաւը յագեցնէ այն՝ այլ նաեւ իր պարունակած ամէն մէկ շիթերուն չափ ձեր կեանքի օրերն աւելնան։

Յաուսբ.—Այդ զովագին ըմպելին կ'ընդունիմ, և ձեր նուէրին փոխարէն կը մատուցանեմ ողջոյն և երախտագիտութիւն։

(Ժողովուրդը թոշորաձեւ անոնց շուրջը կը հաւաքուի)։

Ծեր գիւղացին.—Ցիրաւի շատ աղէկ ըրիք այսպիսի ուրախութեան օր մը հոս գալով. ուրիշ անգամներ խիստ դժբաղդ առիթներու մէջ եկած էք մեզ այցելութեան։ Մեր մէջ շատեր կան որք մինչեւ ցայսօր կ'ապրին քաջառողջ, և որք ձեր հօրը ձեռքով զառանցալի տենդէ (fièvre chaude) փրկուած են՝ երբ մեր երկիրն աւերող ժանտախտն անհետացուց, և դուք ևս նորահաս երիտասարդ մը այն ատեն՝ բոլոր ախտաժէտներու տուները կ'երթայիք. շա՜տ և շա՜տ մեռեալներ թաղելու կը տանէին, սակայն դուք քաջողջ դուրս կ'ելլէիք միշտ։ Ոչ սակաւ նեղութիւններ կրած էք, այլ Փրկիչն օգնական եղաւ մեր փրկութեան վազողին։

Ամենքը.—Այդ անվեհեր մարդուն կենացը։ Երկա՜ր տարիներ ապրի տակաւին յօգուտ հանրութեան։

Յաուսբ.—Ծունր դրէ՛ք Անոր առջեւ՝ որ երկինք կը գտնուի. Նա՛ կը սորվեցնէ օգնութեան հասնիլ, Նա կը ղրկէ ձեզ օգնութիւն։

(Վահանի հետ աւելի անդին կ'երթայ)։

Վահան.—Ի՛նչ քաղցր տպաւորութիւններ պէտք են ըլլալ ձեր վրայ, ո՛վ վեհ հոգի, ժողովրդեան կողմէ ձեզ ընծայուած այդ պատիւները։ Ո՜հ, երանի՜ այն մարդուն՝ որ իր ըրած բարեաց փոխարէն այսպիսի մեծարանք մը կարող է քաղել։ Հայրը իր զաւկին կը ցուցնէ զձեզ, իւրաքանչիւր ոք մէկմէկու կը հարցնէ,

կը վազէ, կը շտապէ ձեր երեսը տեսնելու. Ջութակը կը լռէ, պարերը կը դադրին։ Անցած ժամանակնիդ բոլորաձեւ կը շարուին ձեր շուրջը, և փեղոյրք օդը կ՚ելլեն. քիչ կը մնայ որ ծունր չդնեն՝ որպէս թէ Աստուած նոյն ինքն իրենց դիմաց գտնուէր։

Ցաուսք.—Քանի մը քայլ տակաւին՝ մինչեւ այդ քարը, և կրնանք հանգիստ առնել մեր ըրած ճամէն։ Քանի՜ քանի՜ անգամներ մտախոհ նստած եմ անոր վրայ աղօթքէ և ծոմապահութենէ հիւծած ու խոնջեցած։ Ցուսով հարուստ, հաւատքի մէջ աներկեւան, արտասուքներով, հառաչանքներով և գելումներով կը յուսայի երկնքի տիրոջ ցասումը ամոքել, որպէս զի վախճան մը տար այն դժնդակ ժանտախտին։ Հիմայ խուժանին գովեստի ձայները ճիշդ հեգնութեան նման կը հնչեն ականջիս։ Ո՜հ, եթէ սրտիս մէջ կարդայիր՝ պիտի տեսնէիր թէ հայր և որդի ո՜րչափ անարժան ենք այդ հռչակին։ Հայրս համեստ և աննշան մարդ մըն էր, որ իր գիտցած կերպովը և ամենայն ուղղամտութեամբ՝ բնութեան և անոր աստուածային գաղտնիքներուն վրայ կը տրամաբանէր։ Նա սովորութիւն ունէր ոսկեփոխութեան հետամուտ աշակերտներու հետ քիմիական մութ գործանոցի մը մէջ փակուիլ, ուր՝ գտնուած բիւրաւոր հրահանգներու հետեւելով՝ ներհակներու իրարու մէջ թափումն ի գործ կը դնէր։ Օրինակի համար՝ կարմիր առիւծ մը գաղջ ջրոյ մէջ շուշանի մը կը խառնէր, յետոյ բոցերու մէջ դընելով զանոնք՝ մէկ հալոցէ միւսը կը պարպէր։ Այն ժամանակ բաժակի մը մէջ նորահասակ դշխոյն (*) կ՚ե-

(*) Ալքիմիականն այլ եւ այլ բաղադրութիւններու անուններ:

ըսուէր երփն երփն գոյներով. այս բաներուս մէջ անհա՛ կոյացած է բժշկութիւնը. հիւանդները կը մեռնէին, և հարցնող իսկ չկար թէ ո՞վ է աղէկցողը: Այսպէս ահա այս լեռներուն և հովիտներուն մէջ՝ ժանտախտէն աւելի աւեր և վնաս գործեցինք մեր դժոխային խառնուրդներով: Ես անձամբ բիւրաւոր մարդկան թոյն տուած եմ խմելու. անոնք ամենքն ալ մեռան, իսկ ես ժպիրհ մարդասպանս՝ կ՚ապրիմ տակաւին, որպէս կը ներբողներ ընդունիմ:

**Վակներ**.—Եւ ինչո՞ւ այդպէս կը խռովիք: Մի՞թէ լաւ մարդ մը իր պարտքը կատարած չըլլա՞ր իրեն աւանդուած արուեստն ճշդիւ և խոհեմութեամբ ի գործ դնելով: Եթէ քու հայրդ կը պատուես, ո՛վ երիտասարդ, անոր հրահանգները պիտի ընդունիս մտադիւր, իսկ եթէ մեծցած և կատարեալ մարդ եղած ատենդ գիտութիւնը յաջողիս յառաջացնել՝ քու որդիդ աւելի բարձր նպատակի մը կրնայ ձգտիլ:

**Ֆաուստ**.—Ո՜հ, երանի՛ անոր՝ որ վրէպներու այս ովկիանոսին մէջ ջուրին երեսը մնալու յոյս կրնայ ընել. մարդ իր չգիտցած բանը կը գործածէ, իսկ գիտցածը չկրնար բանի մը ծառայեցնել: Սակայն ասանկ տխուր գաղափարներով այս աղուոր ժամերուս անդորրութիւնը չխռովենք: Տե՛ս, ինչպէս դալարազարդ այդ յարկերը կը փողփողին վերջալուսոյ ճառագայթներով: Արեւը կը խոնարհի, կը խաւարի իր լոյսը, այլ նոր կեանք մը պիտի տանի ուրիշ տեղ: Ո՜հ ինչո՞ւ թեւեր չունենայի երկրէս վեր բարձրանալու և անոր ետեւէն յառաջ նետուելու անվախճան լուսոյ մը մէջ: Վերջալոյսի մէջէն պիտի տեսնէի ամբողջ աշխարհ մը անմռունչ՝ ոտիցս տակ պարզուած.

պիտի տեսնէի ամէն կատարներու վառուիլ բոլբոքիլը, ամէն հովիտներու մութով ծածկուիլը, և գետերու արծաթափայլ ալեաց ոսկեզօծուիլը՝ հասած ժամանակ: Լեռն ու բոլոր իր կիրճերը կարող չպիտի ըլլային իմ երկնային թռիչս կասեցնել: Արդէն ծովն հրաբորբոք վիհերովը կը բացուի՝ հիացած աչացս առջեւ: Մինչ այս մինչ այն աստուածը կ'սկսի խաւարիլ. այլ նոր յոյզ մը հոգւոյս մէջ արթննալով՝ կը փութամ անոր անշէջ լոյսով թաթաւուիլ տակաւին. ցորեկը դիմացս է, ետեւի կողմս՝ գիշերը, գլխուս վերեւը՝ երկինքը, և կոհակները՝ ոտիցս տակ:— Գեղեցիկ երազ մըն է այն՝ որչափ ատեն որ տեւէ: Բայց աւա՜ղ, մտքի սրընթաց թռիչին ընկերանալու համար՝ մարդուս մարմինը զրկուա՛ծ է թեւերէ: Եւ սակայն աշխարհիս մէջ չկա՛յ մէկն որ խորունկ կերպով մը ինքզինքը յուզուած չզգայ, երբ արտոյտը՝ մեր գլխուն վերեւ՝ երկնից կապոյտին մէջ կորսուած՝ իր առաւօտուան երգը կ'երգէ, երբ եղեւնախիտ ժայռերէ անդին՝ արծիւը թեւերն անշարժ՝ կը սաւառնի օդին մէջ, և երբ վերջապէս՝ ծովերուն վերեւը՝ մարգագետիններուն վերեւը՝ կռունկն իր թռիչը դէպ ի ծնած երկիրները կ'ուղղէ:

Վակներ.—Ես ալ քմայական ժամեր կ'ունենամ, սակայն այդ տենչերով չեմ տանջուիր բնաւին, անտառք և մարգագետինք ձանձրալի բաներ են ինձ համար, և թռչուններու նման թեւեր ունենալու իղձ չպիտի տածեմ երբէք սրտիս մէջ: Մտքիս հրճուանքները զիս շատ աւելի հեռուները կը տանին՝ մատեանէ մատեան և թերթէ թերթ. ձմեռուան գիշերները ո՛րչափ վիշտ և ո՛րչափ հաճոյք կը մատակարարեն ա-

նոնք. կ'զգաս թէ գերերջանիկ կեանք մը կ'ոգեւորէ բոլոր անդամներդ...: Ո՜հ, գալարուած մեծարելի մագաղաթ մը բացած միջոցիդ՝ քու վրայովդ կը խոնարհի բոլոր երկին:

Ֆաուսթ.—Ճանչցած միակ խղձդ ա՛յդ է տակաւին, ուստի հոգ տար որ միւս խղձը չճանչնաս երբէք: Բաբէ՜, երկու տարբեր հոգիներ սիրտս կը բաժնեն իրենց մէջ, և անոնցմէ ամէն մէկը կ'ուզէ անջատուիլ միւսէն: Մէկն սիրաբորբոք աշխարհի կը յարի մարմնոյ գործարաններով, միւսը գերբնական շարժումով մը աղջամղջէ հեռացած՝ մեր նախահարց բարձր կայանները կը ճախրէ ուժգնապէս: Ո՜հ, եթէ օդին մէջ կան ոգիներ՝ որք երկրի և երկնքի մէջտեղ կը սաւառնին, թող իջնե՛ն իրենց ոսկեճաճանչ ամպերէն, և նոր ու այլազան կեանքի մը առաջնորդեն զիս: Այո՛, եթէ մոգական վերարկու մը ունենայի՝ որով կարենայի դէպ ի անծանօթ սահմաններ արշաւել, այդ վերարկուն ամենէ թանկագին հանդերձներու և նոյն իսկ արքայական պատմուճանի հետ չպիտի ուզէի փոխել:

Վակներ.—Ո՜հ, կը խնդրեմ, ձեր մօտը մի՛ կանչէք այն քաջածանօթ գունդը՝ որ մրրիկի նման կը տարածուի լայնածաւալ մթնոլորտին շուրջը, և որ անբաւ վտանգներ կը բերէ մարդուս գլխուն: Հիւսիսէն եկած ոգիներու հրասակը եռասլաք լեզուներ կը սրէ մահկանացուի դէմ. իսկ արեւելքէն եկածը՝ անոր թոքերը կը չորցնէ, և այդ չորցուցած թոքերը կ'ուտէ: Եթէ հարաւի անապատներէն գայ այդ վաշտը՝ մարդուս գլուխը անհագին բոցեր կը կուտակէ, իսկ արեւմուտքէն եկածը՝ թէև ի սկզբան զովարար՝ այլ հուսկ յետոյ կը լափէ դաշտ և հունձք: Վնասատու

միշտ՝ իրենց եղած հրաւէրքը սիրով մտիկ կ՚ընեն, կը հնազանդին լոկ անոր, վասն զի խաբելը հաճոյք մըն է իրենց համար։ Անոնք երկնառաք կը ներկայացնեն ինքզինքնին և հրեշտակային ձայնով կը ստեն։ Այլ դառնա՛նք դէպ ի բնակարան. խաւարը արդէն երկրի վրայ կը տարածուի, օդը կը զովնայ և մշուշը կ՚իջնէ։ Բնակութեան հաճոյքը ամենէ աւելի գիշեր ժամանակ կ՚զգայ մարդ։ Այլ ինչո՞ւ կանգ կ՚առնուք, ի՞նչ բան կը դիտէք այդպէս ուշի ուշով, վերջալոյսին մէջ ի՞նչ կայ ձեր աչքերը զարմացնող։

Ֆաուսթ. — Կը տեսնե՞ս այս սեւ շունը՝ որ ցորեններու և խոզաններու մէջ կը դեգերի։

Վակնէր. — Ժամանակէ մը ի վեր ես ալ կը տեսնեմ զայն, այլ արտաքոյ կարգի բան մը չեմ գտներ իր վրայ։

Ֆաուսթ. — Լա՛ւ մը դիտէ՛, ի՞նչ կը կարծես թէ եղած ըլլայ այդ կենդանին։

Վակնէր. — Գանգրահեր շուն մը որ իր տիրոջ հետքը կը փնտռէ։

Ֆաուսթ. — Կը տեսնե՞ս ինչպէս իր վրայ կը դառնայ անդադար՝ հետզհետէ մեզ մօտենալով. կարծես թէ հրոյ հետք մը կը քաշէ կը տանի իր ետեւէն։

Վակնէր. — Գանգրաշուն մը (barbet) կը տեսնեմ միայն, հաւանական է թէ շլացում մը կը պատրէ ձեր աչքերը։

Ֆաուսթ. — Ինծի այնպէս կ՚երեւի թէ մոգական լարեր կը բերէ դէպ ի մեր ոտքերը՝ իբր թէ կապելու համար զմեզ։

Վակնէր. — Ես կը տեսնեմ թէ անստոյգ և վեհերոտ կերպով մը մեր չորս դին կը ցատքէ այդ շունը,

որու պատճառը ուրիշ բան չկրնար ըլլալ՝ բայց եթէ տիրոջը՝ տեղ երկու անձանօթներ առնելը։

Յուսուփ.—Շրջանակը եւս քան զեւս կը պղտորի-նայ, ու արդէն մօտեցած է մեզի։

Վակնէր.—Կը տեսնէ՞ք, շուն մըն է այն եւ ոչ ուր-ուական մը։ Կը մռմռայ եւ վարանումի մէջ կ'երեւի. փորին վրայ կը սողոսկի, պոչը կ'օրէ. շան յատուկ ձեւեր են ասոնք։

Յուսուփ.—Շո՛ւն, մեզի հետ եկո՛ւր, հոս եկո՛ւր։

Վակնէր.—Խօլ զանգրաշուն մըն է այդ, երբ կանգ կ'առնուս՝ ան ալ կանգ կ'առնու, երբ խօսիս իրեն՝ վրադ կուգայ. եթէ բան մը կորսուի՝ կարող է գտնել եւ բերել, եթէ գաւազան մը նետես ջուրին մէջ՝ կը ցատքէ զայն բռնելու։

Յուսուփ.—Այո՛, իրաւունք ունիս, ոգւոյ նշան չեմ տեսներ այդ շան վրայ, իր ըրածները բոլոր վարժու-թեան արդիւնք են։

Վակնէր.—Շունը երբ լաւ կրթուի՝ արժանի է նոյն իսկ իմաստունի մը համակրութեան։ Այո՛, արժանի է նա ձեր սիրոյն. դպրոցականներու ամենէն հաւատարիմ աշակերտն է։

(Քաղաքին դռնէն կը մտնեն)։

# ՈՒՍՄԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Ցանուար (դանգըլաշան հետ ներս մտնելով).—Թողուցի դաշտ և մարգագետին՝ զոր գիշերուան խաւարը պատած է։ Երկիւղած սարսուռ մը իմ կրկնակ հոգիներուս լաւագոյնը նախազգացումներով կ'արթնցնէ, թանձր զգայութիւնք կը թմբրին ու կը քնանան իրենց մրրկալի գործունէութեան հետ, և բուռն սէր մը կ'զգամ մարդերու համար. միեւնոյն ժամանակ Աստուծոյ սէրն ալ կը յափշտակէ զիս։

Հանդարտ կեցի՛ր, ո՛վ շուն, դրան քով հոն հոս մի՛ վազվռտեր. ի՞նչ կը հոտուըտաս այդ տեղ։ Գնա՛ թանկրին ետեւը պառկէ՛, իմ ամէնէ փափուկ անարս քեզ պիտի տամ, դուն որ լերան ճամբուն վրայ զբօսեցուցիր զմեզ քու խաղերով և ոստումներով, հիմայ հոգ տար որ խելօքիկ հիւր մը ըլլաս ինծի։

Ո՜հ, մեր անձուկ խցիկը նպաստաւորապէս կանթեղով մը լուսաւորուելուն պէս՝ լոյսը մեր հոգւոյն մէջ ալ կը մտնէ, մեր սրտին մէջ ալ՝ որ կ'ամփոփուի և ինք իր անձը կ'ըլլայ։ Բանականութիւնը խօսիլ և յոյսը շողշողել կ'սկսի. նորէն միջոցին կեանքի առուին ճիշդ բղխած տեղը կը լուացուի մարդ։

Մի՛ մռռար, ո՛ շուն։ Կենդանիի մը ոռնալը չկըրնար երբեք յարմարիլ իմ բովանդակ հոգիս լեցնող աստուածային ձայնին հետ։ Իրաւ՝ սովորած ենք որ մարդիկ չհասկցած բաներնին անարգեն, և մռռան ընտիրի և գեղեցիկի նկատմամբ՝ որք ստէպ ծանրակալ են իրենց. բայց պէ՞տք է որ շունն ալ քրթմնջէ անոնց պէս...։ Բայց, կ'զգամ արդէն որ բոլոր յօժարութեամբս հանդերձ գոհունակութիւն բղխած բանը

չքղխիր ալ սրտէս....։ Բայց ինչո՞ւ գետն այսչափ
շուտ չորնար, ու մեր յաւիտենական ծարաւին մէջ
վերընկղմէր մեր հոգին։ Շա՜տ և շատ անգամ փորձն
ըրած եմ ասոր։ Սակայն այս խեղճութիւնը հուսկ յե-
տոյ վերջ մը պիտի գտնէ՛. մենք կը սորվինք յարգել
ի՛նչ որ երկրի երերէն վեր ՚կը բարձրանայ, իղձ կը
տածենք յայտնութեան և ո՞ւր յայտնութիւնն ա՛յնչափ
յստակ և աղուոր փայլով մը կը փողփողէ՝ բայց եթէ
Նոր Կտակարանի մէջ։ Ներսէս փափաք կ'զգամ բնա-
գիրը բանալ և անգամ մը լինքզինքս պարզունի տը-
պաւորութիւններու յանձնելով՝ այդ սուրբ գիրքը
թարգմանել գերմաներէն լեզուով՝ որ այնչափ սիրելի
է ինձ։ (Հատոր մը կը բանայ եւ կանգ կ'առնու)։ Գըր-
ուած է. Ի սկզբանէ էր բանն։ Հոս արդէն կը հար-
կադրուիմ կանգ առնելու։ Աւելի անդին ո՞վ օգնու-
թեան պիտի հասնի ինձ։ Անկարելիութիւն կը տես-
նեմ բառ բառականին գնահատել բանն բառը. հարկ է
որ ուրիշ կերպ թարգմանեմ զայն՝ եթէ հաճի հոգին
միտքս լուսաւորել։ Գրուած է. Ի սկզբանէ էր ոգին։
Այս առաջին տողիս վրայ լաւ մը խորհի՛նք, և գրիչը
թող չշտապի։ Միթէ ոգի՞ն է որ կը հաստէ և կը պա-
հէ ամէն ինչ։ Պէտք էր ըսուէր, Ի սկզբանէ էր զօրու-
թիւնն։ Սակայն ասիկայ գրելով հանդերձ ձայն մը կ'ը-
սէ ինձ թէ պէտք չեմ յարիլ այս իմաստիս։ Հուսկ
ուրեմն հոգին միտքս կը լուսաւորէ, ներշնչումը կ'իջ-
նէ իմ վրայ, և սփոփեալ սրտով կը գրեմ. Ի սկզբանէ
էր գործողութիւնն։

Եթէ, ո՛վ շուն, այս սենեակս պիտի բնակինք ի
միասին՝ հարկ է որ դադրեցնես ձայներդ և հաչիւն-
ներդ։ Այսպիսի ժխորալի ընկերի մը չեմ կարող հան-

դուրժել։ Պէտք է որ երկուքնէս մէկն ելնէ այս սենեակէն։ Պիտի դրժեմ ակամայ ասպնջականութեան օրէնքներն, դուռը բաց է, և դուն ազատ ես մեկնելու։ Այլ ի՞նչ կը տեսնեմ, միթէ բնակա՞ն է այս։ Ցնո՞րք մըն է արդեօք թէ իրականութիւն։ Ինչպէս իմ գանգրաշունս կ'ուռի կը մեծնայ։ Ճիգեր թափելով ոտք կ'ելնէ, այլ շան մը ձեւը չունի բնաւ։ Ի՜նչ տեսակ ճիւաղ խօթեր եմ սենեկիս մէջ. իր հրեղէն աչքերով և զարհուրելի ծնօտով ձիագետի մը կերպարանք առաւ արդէն։ Ո՜հ, պիտի նուաճե՛մ զքեզ։ Այսպիսի դժոխային գազանի մը համար Սողոմոնի բանալին պէտք կ'ըլլայ։

Ոգիներ (փողոցին մէջ).—Մեզմէ մէկը վերի բըռնուած է։ Դուրսը սպասենք, և ոչ ոք երթայ անոր քով։ Ծերուկ դեւ մը բռնուած է հոս, ինչպէս աղուէս մը որոգայթին մէջ։ Ուշադրութի՛ւն. թրթռա՛նք շուրջանակի և ջանա՛նք իրեն օգնութեան հասնիլ. չթողո՛ւնք եղբայր մը որ ամէն ժամանակ լաւ ծառայութիւններ մատուցած է մեզ։

Ֆաուստ.—Նախ և յառաջ հրէշին մօտենալու համար՝ չորից երդմնեցուցումը պիտի գործածեմ.

Թող բռնկի՛ հրոգին (salamandre),
Թող նահանջէ՛ ջրոգին (ondin),
Թող կորսուի՛ օդոգին (sylphe)
Ու գործ տեսնէ ցայգոգին (lutin)։

Ով որ տարրերը, անոնց ոյժը և յատկութիւնները չճանչնար՝ երբեք չկրնար տէր ըլլալ ոգիներու։

Բոցանըման թռի՛ր, գնա՛, հրոգի։
Ջըրոգինե՛ր, ծ՛ն, հոսեցէ՛ք կարկաչով.

Մէտէօրի նման փայլէ՛, օդուղի·
Ինձ, ցայգուղի՛, հասի՛ր շուտով·
Հասի՛ր. հասիր,
Վերջին եկողն դո՛ւ եղիր։

Զօրսերէն և ոչ մէկը կը գտնուի այս կենդանւոյս վրայ՝ որ անշարժ մնալով ականները կը կրճտէ իմ առջեւ. տակաւին բան մը չկրցայ ընել իրեն։ Պիտի տեսնես, ո՛ շուն, որ հիմայ երդմնեցուցման աւելի զօրեղ ձեւեր պիտի գործածեմ քեզ դէմ։

Դժոխքէ փախստակա՞ն մ'ես արդեօք. եթէ այնպէս է՝ դիտէ անգամ մը սա՛ նշանը՝ որու առջեւ դեւերու սեւ լէգէոնները կը խոնարհին կորակոր։

Կը տեսնեմ որ շունը կ'ուռի, և իր մազերը կը ցցուին։

Դո՛ւ, ո՛ անիծեալ էակ, կարո՞ղ ես կարդալ զայն՝ որ մէկէ մը չէ ստեղծուած, անբացատրելին՝ որու կ'երկրպագէ բոլոր երկինք՝ և զոր խոցեցին անօրէնները։

Թոնիրի ետեւը պահուածի՝ փղի նման ուռելով՝ կը տարածուի՝ և գոլորշի պիտի դառնայ ընդ հուպ։ Գոնէ մի՛ ելներ մինչեւ գմբէթը, և աւելի լաւ է որ գաս տիրոջդ ոտից տակ պառկիս։ Կը տեսնես թէ ընդունայն չեն սպառնալիքներս, ես պատրաստ եմ սուրբ հուրով խանձել զքեզ։ Երեքարփեան լոյսը մի՛ սպասեր, մի՛ սպասեր երդմնեցուցմանցս ամենէն զօրեղը։

(Մեֆիսթոֆելէս կը մտնէ այն միջոցին՝ ուր ամպը գետին կ'իջնէ, և ուսանողի հագուստով թոնիրին ետեւէն դուրս կ'ելնէ).—Ո՞ւստի կուգայ այդ վայնասունը. ի՞նչ կարող եմ ընել քեզ ծառայելու համար։

Ֆաուսթ.—Գանգրաշան պարունակութիւնն ա՞յդ էր ուրեմն, շրջիկ (ambulant) դպրոցական մը:

Մեֆիսթօֆէլէս.—Կը բարեւեմ զքեզ, քաջահմուտ վարդապետդ: Ձիս արիւն քրտինքի մէջ խօթեցիր:

Ֆաուսթ.—Ի՞նչ է անունդ.

Մեֆիսթօֆէլէս.—Անօտի հարցում մըն է այդ այնպիսի մէկու մը համար՝ որ մեծ արհամարհանք ունի բառերու մասին, որ արտաքին երեւոյթներէ կը խորշի միշտ, և ընդհակառակն էութեանց հիմը կը դիտէ:

Ֆաուսթ.—Ձեր մասին խնդիրը տարբեր է, պարոննե՛ր. ձեր անուններու համեմատ՝ բնութիւննիդ կրնայ գուշակուիլ, զոր բացորոշ կը յայտնեն Աստուծոյ թշնամի, հրապուրիչ, ստախօս և այլն կոչելով զձեզ: Ըսէ՛ ուրեմն, ո՞վ ես դու:

Մեֆիսթօֆէլէս.— Մաս մը այն զօրութենէն՝ որ մերթ չարը կ'ուզէ և մերթ բարին կ'ընէ:

Ֆաուսթ.—Եւ ի՞նչ կը նշանակէ այդ առեղծուածը:

Մեֆիսթօֆէլէս.—Ես այն ոգին եմ՝ որ կ'ուրանայ հանապազ, և իրաւունք ալ ունի ուրանալու, քանզի ամէն ինչ որ կայ և կը շնչէ՝ արժանի է քանդուելու. որմէ կը հասկցուի թէ լաւագոյն էր որ բան մը գոյութիւն առած չըլլար երբէք: Այսպէս, ինչ որ մեղք, քանդում կ'անուանէք, մէկ խօսքով՝ չար ըսուած բանն բուն իմ տարրս է:

Ֆաուսթ.—Դու ինքզինքդ մաս կ'անուանես, և ահա՛ ամբողջ էութեամբդ կանգնած ես դիմացս:

Մեֆիսթօֆէլէս.—Ես ճշմարտութիւնը խօսեցայ համեստօրէն: Եթէ մարդը՝ յիմարութեան այն փոքր աշխարհը՝ ինքզինքը ամբողջութիւն կը համարի սովորաբար, ես ինքս ա՛յն մասին մէկ մասն եմ՝ որ ամէն

բան սկսելու կէտին՝ արդէն էութիւն ունէր. ա՛յն մթութեան մէկ մասն եմ՝ որ ծագում տուաւ լուսոյ, այն գոռոզ լուսոյ՝ որ իր մօրը՝ Գիշերին ձեռքէն կ՚ուզէ խլել անոր բռնած տեղը և ունեցած հինաւուրց աստիճանը։ Այլ սակայն զո՛ւր են իր ջանքերը, քանզի ինչ որ ալ ընէ այդ չնչին լոյսը՝ մարմիններն կը կասեցնեն իր ընթացքը, և անոնց երեսին վրայ սողալու կը յաջողի միայն. նիւթէն կը բղխի ինք, վտակօրէն կը հոսի դէպ ի այն՝ երանգ ու գոյն տալով, այլ մարմին մը բաւական է իր շարժումը դադրեցնելու ի սպառ։ Հետևապէս ներելի է ինձ յուսալ՝ որ անկէ վերջ չպիտի կրնայ ունենալ երկար տևողութիւն, և կամ ինքն ալ պիտի ոչնչանայ մարմնոց հետ։

Ֆաուստ.—Կը հասկնամ ունեցած պատուաւոր պաշտօնդ. դու չես կարող ընդհանուր զանգուածն ի չիք դարձնել, և կ՚ուզես մնասդ հանել մանր մասերէն։

Մեֆիստոֆելէս.—Եւ կը խոստովանիմ թէ մինչև հիմայ մեծ գործ մը չկրցայ տեսնել և ինչ ձեռնարկոր ըրի՝ չյաջողեցայ տակաւին ամենափոքր վնաս մը հասցնել անէութեան ընդդիմացող զօրութեան՝ այսինքն նիւթական աշխարհի, կոհակ. փոթորիկ, երկրաշարժ, հրդեհ և տակաւին չգիտեմ ինչ կը կուտէի անոնց գլուխը, ա՛լ ի զո՛ւր. ծով և երկիր իրենց տեղը մնացին հանդարտ։ Անկարելի է որ և է ներգործութիւն մը ունենալ այդ անիծեալ հունտին վրայ՝ որմէ կազմուած են բանաւոր և անբան արարածք։ Քանի՜ քանիներ թաղած եմ հողին տակ, և սակայն մի՛շտ նոր, մի՛շտ թարմ արիւն մը կը շրջաբերի. ա՛յս է ահա իրերու ընթացքը, և խելք թռցնելը բան մը ըսել չէ։ Ինչպէս հողէն՝ նոյնպէս և օդէն, ջուրէն

բիւրաւոր բողբոջներ՝ չորութեան մէջ, խոնաւութեան մէջ, տաքի մէջ. ցուրտի մէջ անդուլ անդադար դուրս կը խոյանան, և եթէ հրոյ մասը ինծ պահած չըլլայի՝ այսօր բան մը չպիտի մնար ձեռքս։

Ֆաուսթ.—Այսպէ՞ս ուրեմն դիւային ցրտաբեկ ձեռքով մշտնջենաւոր շարժումին, հատուիչ բարերար զօրութեան դէմ փուճ և անզգամ դիմադրութիւն մը կ'ընես։ Ուրիշ ի՞նչ ձեռնարկ կը խորհիս, զարմանահրաշ զաւա՛կդ քաոսի։

Մեփիսթօփելէս.—Մեր երկրորդ տեսութեան մէջ ատոր վրայօք կը խօսինք. հիմայ կրնա՞մ հեռանալ քեզմէ։

Ֆաուսթ.—Չգիտեմ թէ ինչո՞ւ այդ հարցումը կ'ընես։ Հիմայ ճանչցայ զքեզ. ուզած ժամանակդ կրնաս գալ զիս տեսնել. ահա՛ դուռը, պատուհանը և նոյն իսկ ծխահանը, ընտրէ՛ որն որ կ'ուզես։

Մեփիսթօփելէս.—Կը խոստովանիմ թէ փոքր խոչընդոտ մը զիս կ'արգիլէ դուրս ելնելու, այսինքն սեմիդ վրայ գտնուած մոգական ոտքը։

Ֆաուսթ.—Հինգ-գիրը կամ բենդակրամը (*) արգի՞լք կ'ըլլայ քեզ։ Է՞հ, ըսէ՛ նայիմ, որդիդ դժոխոց, եթէ այդ կը հալածէ զքեզ՝ ի՞նչպէս կարող եղար մտնել հոս. քեզ նման ոգի մը ի՞նչպէս խեղճ կերպով մը բռնուեցաւ։

Մեփիսթօփելէս.—Լաւ դիտէ՛, նշանը չփոթ դիրք մը ունի. դրան կողմը դարձող անկիւնը քիչ մը բաց է՝ ինչպէս կը տեսնես։

---

(*) Քապալեան նշան։

Ֆաուսթ.—Իրաւի՛ աղէկ որ այդպէս եղեր է։ Այս կերպով դուն իմ կալանաւո՞րն ես ուրեմն. ո՛հ, ի՛նչ բարեբաղդութիւն։

Մեֆիսթոֆելէս.—Գանգլաշունը մտած ժամանակը՝ ուշադրութիւն չէր ըրած. դուրսէն բանն ուրիշ կերպ կ'երեւէր, և հիմայ՝ սատանան դուրս ելնելու զօրութիւն չունի։

Ֆաուսթ.—Եւ ինչո՞ւ պատուհանէ, չես ելներ։

Մեֆիսթոֆելէս.—Դեւերու և ուրուականներու օրէնք մըն է այս՝ թէ ուսկից որ մտած են՝ անկէ պէտք է դուրս ելնեն։ Առաջինին գործողութեան մէջ ազատ ենք, իսկ երկրորդին մէջ՝ գերի։

Ֆաուսթ.—Դժոխքն իսկ իր օրէնքներն ունի եղեր։ Քաջ է, այսպէս ուրեմն. պարոններ, ձեզ հետ կնքուած ուխտ մը ճշդութեամբ և հաւատարմութեամբ կը պահուի՞ միթէ։

Մեֆիսթոֆելէս.—Ի՛նչ որ խոստանանք՝ կրնաս լիովին վայելել՝ առանց մաս մը իսկ զեղչելու։ Կարծածէդ աւելի մեծ բան մըն է այդ, այլ ուրիշ անգամ այս նիւթիս վրայ երկարօրէն կը խօսինք. հիմայ կ'աղաչեմ, կը պաղատիմ թողուլ զիս որ ճամբաս երթամ։

Ֆաուսթ.—Պահ մը եւս կեցի՛ր որ բաղդիս վրայ գուշակութիւններ ընես։

Մեֆիսթոֆելէս.—Է՛հ, թո՛ղ զիս այս անգամ։ Քիչ ատենէն կը դառնամ, և ուզած հարցումներդ կ'ընես ինձ ազատօրէն։

Ֆաուսթ.—Ես խաղ մը չխաղացի քեզ, դուն ինքդ եկար որոգայթին մէջ ինկար։ Ո՛վ որ սատանան ձեռքին մէջ բռնած է՝ թող պինդ մը բռնէ զանի, քանզի նորէն բռնելը դիւրին չէ։

Մեփիստոֆելէս.—Ես պատրաստ եմ՝, եթէ կ'ուզես, հոս կենալ քեզ ընկերութիւն պահելու համար, սա պայմանաւ սակայն որ՝ իմ արուեստի զօրութեամբ՝ այնպէս մը ընեմ որ ժամանակդ կարենաս արժանաւոր կերպով անցունել։

Ֆաուստ.—Ուրախ եմ որ այս բանս գործիդ կու գայ, սակայն հարկ է որ արուեստդ զբօսեցուցիչ ըլլայ, ասիկայ կանխաւ կ'իմացնեմ քեզ։

Մեփիստոֆելէս.—Քու միտքդ, ո՛ բարեկամ, այդ ժամուն մէջ միայն ա՛յնչափ պիտի վաստկի որչափ չը շահիր ամբողջ տարուան մը միօրինակութեան մէջ։ Նրբատարր ոգիներու երգերը, իրենց բերած չքնաղ պատկերները ունայն կախարդութիւններ չեն բնաւ։ Թէ՛ հոտոտելիքդ պիտի բերկրի և թէ՛ քիմքդ. միւս կողմէն՝ սիրտդ ալ պիտի յափշտակուի հոգեզմայլ։ Փուճ պատրաստութիւններու հարկ չկայ. ահա արդէն գումարուեցանք. հապա՛ սկսեցէ՛ք։

Ոգիներ.—Անհետ եղի՛ք, ո՛ մթագին կամարներ, թողէ՛ք որ երկնից լոյսը ժպտի մեզ, և կապուտակ եթերն ալ պարզուի մեր աչաց առջեւ։

Տխուր ամպերն թող փարատին, փոքրիկ աստղերն ալ վառվռին՝ քաղցրագոյն արփիներու նման։

Դստե՛րք երկնից, իտէական գեղութի՛ւն, ձեր թեւարշաւ կաքաւի շրջանակը սեղմեցէ՛ք անոր շուրջը։

Սիրոյ ցանկութիւնք կը թրթռան ձեր քայլերուն վրայ, քակեցէ՛ք ձեր գօտիներն, և ձեր հողմածուփ ձորձերն ալ հանեցէ՛ք ձեր վրայէն։

Ծածկեցէ՛ք անոնցմով մարգագետինը և այն տերեւազարդ տաղաւարը՝ ուր սիրահարք պիտի գան իրենց յաւիտենական սիրոյ աւարկաներուն վրայ երազելու։

Ո՛ դարաստաններու փափուկ դալարիներ, տերեւազարդ ոստերով չաղապա՜տ բաղուկներ։

Ողկոյզները կը խունին այգեաց մէջ, հնձանք լի են անոնցմով. գինին դուրս կը ցայտէ վէտ վէտ և փրփրալի, չիկակարմիր ուղխեր մարգագետիններու դալարեաց մէջէ կը սահին մեղմիկ։

Երկնաբնակ էութի՛ւնք, ձեր սարսուռն թեւերն պարզեցէք արեւու գիմաց. սրացէ՛ք դէպ ի այն բարեբաստիկ կղզիներն՝ որ վա՛րը՝ կոհակներու վրայէ կը սահին կ'երթան։

Հոն պարեր տեղի կ'ունենան և դաշնակութիւններ կը լսուին. ամէն բան սէր է հոն, ամէն ինչ իր ազատ շարժման մէջ է հոն։

Թեւասլաց գունդեր պարողներու խումբը բլուրներու լուսազարդ կատարին վրայ կ'առաջնորդեն. այլք՝ ջուրերու հարթ մակերեւոյթին վրայ ամէն կողմէ իրար կը կտրեն կ'անցնին։

Ամէնքն ապրիլ կը տենչան, ամէն աչքեր հեռուն՝ սիրեցեալ աստղի մը վրայ սեւեռուած են՝ զոր իրենց համար լուսազարդած է երկինք։

Մեփիսթօֆելէս.—Կը քնանայ. քա՛ջ է, մատաղերամ ոգիներ. զինքը ուզածիս պէս հմայեցիք. մեր հաշիւներուն մէջ՝ այս դաշնակութիւնս իմ պարտքս ըլլայ։ Սատանան բռնելու կարող մարդ չե՛ս դու։ Անոյշ պատրանօք կախարդելով՝ սուզեցէ՛ք զայն ցնորքներու ովկիանոսին մէջ։ Այլ սակայն հարկ է որ մկան մը ակռաներն այս սեամիս հմայքը ջնջեն ու անհետացընեն...։ Կախարդական երդմնեցումներու հարկ չի կայ, ահա՛ մուկ մը որ դէպ ի հոն կ'արշաւէ, և որձայնս պիտի լսէ շուտով։

Մեծ ու փոքր մուկերու, ճանճերու, գորտերու, մլուկներու և ոջիլներու տէրն և իշխանը կը հրամայէ քեզ գալ հոս, և այս սեամս կրծել՝ որպէս թէ իւղով չփուած ըլլար այն։

Հա՛, եկա՞ր շուտով. տեսնեմ քեզ. ի գո՛րծ փութանակի։ Զիս արգիլող անկեան ծայրը առջա հո՛գ է, եզերքին վրայ...։ Քիչ մը ևս կրծէ՛. հա՛, եղա՛ւ։

Ֆաուստ (արթննալով).—Այս անգամ ալ խաբուեցա՞ր իմ միթէ։ Ի՞նչ, անհետացա՞ւ ոգիներու այն երամը։ Երազ մը չէ՞ր՝ որ սատանան գիմացս եկաւ...։ Եւ ի՞նչ, ետեւէս ոստոստողը շո՞ւն մըն էր պարզապէս, ուրիշ բան չէ՞ր արդեօք։

---

# ՈՒՍՄԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

## ՖԱՈՒՍՏ, ՄԵՖԻՍՏՈՖԷԼԷՍ

Ֆաուստ.—Ո՞վ է դուռս զարնողը։ Մտի՛ր։ Ո՞վ կուգայ դարձեալ տաղտկացնել զիս։

Մեփիստոփելես.—Ես եմ։

Ֆաուստ.—Մտի՛ր ներս։

Մեփիս.—Այդ խօսքը երեք անգամ պէտք ես կրկնել։

Ֆաուստ.—Մտի՛ր կ՚ըսեմ։

Մեփիս.—Այս կերպով աչքս կը մտնես, և կը յուսամ թէ պիտի կրնանք համաձայնիլ։ Տե՛ս, սրտնեղութիւնդ փարատելու համար իբր ծաղկահասակ իշխան մը կը ներկայանամ քեզի, ոսկեհուռ ծիրանի

հանդերձով, չհուած սանդուղեայ փոքր վերարկուով, գլխարկիս վրայ աքլորի փետուրով մը, և երկայն հատու թուր մը մէջքս կապած։ Քեզի այս կարճ և ընտիր խորհուրդը պիտի տամ որ դու ալ հագուիս կապուիս երիտասարդ իշխանի մը նման, որպէս զի շղթաներէդ ազատելով՝ կարենաս կեանքին ինչ բան ըլլալը ճաշակել։

Ֆաուստ.—Ի՛նչ հանդերձներ ալ հագնիմ մարդկային կենցաղի նեղճութիւնները պիտի զգամ միշտ։ Վայելելու համար շա՜տ ծեր եմ, միևնոյն ժամանակ անզգայ ըլլալու համար ալ շա՜տ երիտասարդ։ Ի՞նչ կրնայ տալ աշխարհ՝ որմէ համ առնեմ։ Ամէն ինչ պիտի թերանայ քեզ, ամէն ինչէ պիտի թերանաս դու։ Ահա այս յաւիտենական յանկերգս մեր ամենուս ականջներուն մէջ կը հնչէ, և կեանքերնուս ամէն մէկ ժամն ալ կը կրկնէ զայն բեկեալ ձայնով։ Առաւօտուն սարսափով մը կ'արթննամ անկողնոյս մէջ. պէտք է լեղի արցունքներ թափել տեսնելով այդ օրը՝ որ իր ընթացքը մէջ իղձերէս և ո՛չ մին պիտի կատարէ. կը լսե՞ս, և ոչ մին կ'ըսեմ. այդ օրը՝ որ ներքին տուայտներով մարդուս մինչև հաճոյք մը նախազգալու ուժն ալ պիտի հիւծէ, և որ բիւրակերպ սրտնեղութիւններով պիտի ջլատէ բազմայոյզ սրտիս ամէնէ ազնիւ ներշնչումները։ Իսկ գիշերը հասնելուն պէս՝ հարկ է որ ջիղաձիգ շարժումով մը անկողնիս վրայ իյնամ՝ ուր հանգիստ ըսուած բանը չպիտի գտնեմ, և ուր անդոհական երազներ պիտի գան խռովեն զիս անդադար։ Սրտիս մէջ բնակող աստուածը իմ բոլոր էութիւնս կրնայ յուզել զօրեղապէս, այլ ան որ իմ բոլոր ուժերս կը կառավարէ՝ շուրջս գտնուածներէն և ոչ մէկ բան

կարգը կրնայ աւրել։ Ահա՛ այս պատճառաւ կեանքը ինծ համար բեռ մըն է ծանրակիր, ահա՛ այս պատճառաւ կ'ատեմ զայն՝ մահ փափաքելով։

Մեֆիս.—Եւ սակայն մահը բարեկ հիւր մը չէ՛ բնաւ։

Ֆաուստ.—Ո՜հ, երանի անոր՝ որ յաղթանակի փառաւորութեան մէջ արիւնազանգ դափնի մը կ'ընդունի մահուան ձեռքէ. ո՜հ, երանի անոր՝ որ խանդավառ պարի մը արբշռութենէ ետքը՝ կնոջ մը թեւերուն մէջ անոր այցը կ'ընդունի յանկարծուստ։ Ա՜խ, ինչու չը կարենայի մեծ Ոգւոյն առջեւ յափշտակուիլ հոգեզմայլ և ապա դառնալ յոչնչութիւն։

Մեֆիս.—Եւ սակայն ո՞վ էր այն մարդուկը որ թխագոյն ըմպելի մը ճաշակեց այս գիշեր...։

Ֆաուստ.—Կ'երեւի թէ կ'ախորժիս լրտեսութենէ։

Մեֆիս.—Տիեզերական գիտութիւն չունենալով հանդերձ՝ մէկ շատ բաներ գիտեմ ու կը հասկնամ։

Ֆաուստ.—Որովհետեւ գեղազուարճ ծանօթ ձայներ խլեցին զիս զգայութեանցս արհաւիրքէն՝ զուարթագոյն ժամանակներու պատկերին հետ՝ մանկութեան հաճելի զգացումները ընծայելով սրտիս... կ'անիծե՛մ ա՛յն ամէն բաները՝ որոնց վրայ մարդկային հոգին որ և է հրապոյր կամ սնոտի քաղցրութիւններ կը դնէ, կ'անիծե՛մ ա՛յն ամէն բաները՝ զոր շքեղ ու սուտ փայլով մը կը վարագուրէ նա՝ այս թախծալի կենցաղի մէջ։ Բայց նախ և առաջ անիծեա՜լ ըլլայ ա՛յն բարձր համարումը՝ որով մեր միտքը կ'արբշռի ինքնովին։ Անիծեա՜լ ըլլայ մեր զգայարանքները շրջապատող կեղծ ու պատիր երեւոյթներու շքեղութիւնը։ Անիծեա՜լ ըլ-

լայ ինչ որ կը հրապուրէ զմեզ մեր երազներու մէջ, փառաց և անմահութեան ցնորքնե՜ր։ Անիծեա՜լ ըլլան ա՛յն ամէն առարկաները՝ որոնց ստացումը ողոքալի է մեզ համար. կին կամ զաւակ, ծառայ կամ արօր։ Անիծեա՜լ ըլլայ Մամոնայ, երբ իր գանձերու ունայն տեսիլով՝ խիզախ ձեռնարկութեանց կը մղէ զմեզ, կամ երբ դատարկասուն վայելումներով հեշտալի սնարներ կ՚ընծայէ մեր գլխին։ Անիծեա՜լ ըլլայ սիրային ամէն խանդ և յափշտակութիւն։ Անիծեա՜լ ըլլայ յոյսը. անիծեա՜լ՝ հաւատքը. և ամէն բանէ յառաջ անիծեա՜լ համբերութիւն կոչուած առաքինութիւնը։

Դաս Ոգւոց (անտեսանելի).—Աւա՜ղ, աւա՜ղ, դու քու հզօր ձեռքովդ քանդեցի՛ր, ջախջախեցի՛ր երանաւէտ աշխարհը. աւերակ վիճակի մէջ է այն՝ կիսաստուածի մը ձեռքով տապալած...։ Անոր բեկորները անէութեան մէջ տանել տանելով՝ փճացած գեղեցկութեանը վրայ կ՚ողբանք ու կոտրատուենք։ Ո՜հ, ամենամե՛ծդ երկրի բոլոր զաւակներու, կանգնէ՛ զայն, կանգնէ՛ միւսանգամ սրտիդ մէջ, նոր կեանք մը սկսէ՛, և ահա՛ մեր երգերը նորէն պիտի հնչեն՝ երկոյդ ընկերանալու համար։

Մեֆիս.— Ձեռքիս տակ գտնուած ոգիներուն փոքրագոյններն են ասոնք։ Մտիկ ըրէ՛ ի՛նչպիսի իմաստութեամբ կը խրատեն քեզ՝ որպէս զի յօժարիս հաճութեանց ու գործունեայ կեանքի մը վերադառնալու։ Անոնք կ՚ուզեն քաշել տանիլ զքեզ աշխարհի մէջ, կը բաղձան որ փրկուիս այս առանձնութենէ՝ որ մարդուն թէ՛ հոգին և թէ՛ անոր սնունդ տուող հիւթերը կը թանձրացնէ ու կը սառեցնէ։ Դադրէ՛ ուրեմն թախծութեան հետ խաղալէ, թախծութիւն՝

որ անգղի նման կը կրծէ քու կեանքդ, քու էութիւնդ · Ինչպիսի անշահ ընկերութեան մէջ ալ գտնուիս՝ պիտի զգաս որ մարդերու հետ մարդ ես. ասով մէկտեղ՝ զքեզ վարնոցներու մէջ մտցնելու դիտում չունիմ: Ես ինքս առաջին կարգի ոգիներէն մէկը չեմ, այլ եթէ ուզես ինձ հետ միացած՝ կեանքի մէջ քայլերդ ուղղել, քեզ ծառայելու պիտի յարմարիմ իսկոյն: Քեզ ընկեր պիտի ըլլամ, և կամ եթէ ընտրելը կը սեպես՝ ծառայ ու գերի:

Ֆաուսթ.—Եւ փոխարէն ի՞նչ պարտականութիւն ունիմ կատարելիք:

Մեֆիստ.—Անոր վրայ մտածելու շա՜տ ժամանակ ունիս:

Ֆաուսթ.—Ո՛չ, ո՛չ: Ինքնապաշտ է սատանան, և Աստուծոյ սիրոյն համար ուրիշին օգտակար եղած բանը չըներ երբե՛ք: Պայմանդ դի՛ր որոշ և բացայայտ, զի կը մտածեմ թէ այս տեսակ ծառայ մը տան մը ձախողութիւն կը բերէ:

Մեֆիստ.—Կ'ուզեմ հոս քու ծառայութեանդ մտնել, և քու ամենափոքր նշաններուդ մինչ ցվերջ հընազանդիլ կատարեալ հլութեամբ, այլ երբ ժամանակը գայ որ վարը տեսնուինք, դու ալ միեւնոյն կերպով պիտի վարուիս ինձ հետ:

Ֆաուսթ.—Այդ վարը իմ հոգս չէ բնաւ. նախ և յառաջ ջարդուփշուր ըրէ՛ այս աշխարհս, ապա թող միւս աշխարհը գայ՝ եթէ կ'ուզէ: Այս երկիրէս կը բղխին իմ հաճութիւններս, և տառապանքներս լուսաւորողը այս արեւն է. թող անգամ մը փրկուիմ տառապանքներէս, յետոյ ի՛նչ կ'ուզէ՝ ըլլայ: Այդ մասին ևս բան սորվիլ հասկնալ չեմ ուզեր, փոյթ չէ՝ թէ

ապագային մէջ սիրելու կամ ատելու պէտք մը կ'ենայ, և թէ՝ այս գունդերս վեր և վար մը ունենան։

Միքիս.— Մոքի այդպիսի տրամադրութիւններով կրնաս ամէն բանի դիմադրաւել. խօսքդ առ՛ւր ինծի, և պիտի տեսնես թէ ինչ հաճոյքներ կըրնամ հայթայթել քեզ իմ արուեստով. այնպիսի բաներ պիտի վայելես՝ որ ուրիշ մարդ մը ընդնշմարել իսկ կարողացած չէ։

Ֆաուստ.— Եւ ինչ կրնաս ընծայել ինծի, ո՛ դեւ ողորմելի։ Քու նմաններդ կարող եղա՞ծ են երբեք հասկնալ բարձր ներշնչումներու մէջ գտնուող մարդկային հանճարը։ Մատակարարած սնունդներդ փոր չկշտացնող պարապ բաներ են. տժգոյն ոսկի՝ որ սնդիկի նման ձեռքերէ կը փախչի միշտ. խաղ ուր շահիլ չկայ, աղջիկ՝ որ թեւերուս մէջ գտնուած պահուն իսկ՝ ուրիշին աչք յօնք կ'ընէ, պատի՛ւ, ինչ չքնա՜ղ ստացուածութիւն՝ որ մէտէօրայի նման կը կորսուի անհետ։ Ցուցուր ինծի պտուղ մը որ լինալէ յառաջ չը փտի, ցուցու՛ր ինծի ծառ մը որ կանաչագեղ տերեւներ արձակէ ամէն օր։

Միքիս.— Այս տեսակ ձեռնարկներու մէջ բափորձ ըլլալով՝ կը խոստանամ սիրով այդ ամէն ուզածներդ ի գործ դնել։ Այո՛, բարեկա՛մ, եկած է նաև այն ժամանակը՝ ուր չուայտութեան մէջ կրնանք լողալ աներկեւան։

Ֆաուստ.— Եթէ երբեք հանգչելու համար փետրեայ մահիճի մը վրայ կարենամ տարածուիլ, թող գործս անդէն և անդ լմննայ, եթէ կարենաս մինչեւ այն կէտ շողոմել զիս՝ որ ինքզինքս հաւնիմ, եթէ կարենաս

վայելուչներով զիս հրապուրել՝ թող ինծ համար յետինն ըլլայ այն օրը. այս գլուխս կ'առաջարկեմ ահա:

Մեֆիս.—Կ'ընդունիմ:

Ֆաուսթ.—Ես ալ կ'ընդունիմ: Եթէ ըսեմ այդ պահուն. «կեցի՛ր, ինծ հաճելի ես», այն ատեն՝ կրնաս զիս կապերու տակ կաշկանդել, այն ատեն՝ մահուան զանգակը կրնայ հնչել ինծ համար, այն ատեն՝ դուն ալ կ'ազատիս ծառայութենէ...: Թող ժամը հնչէ, թող ասեղն իյնայ, թող ժամանակն ինծ համա՛ր գոյութիւն չունենայ ալ:

Մեֆիս.—Աղէկ մտածէ՛ գրաւիդ վրայ, չը պիտի մոռնանք զայն:

Ֆաուսթ.—Կատարելապէս իրաւունք ունիս այդ մասին, այլ ես այն դաշինքը թեթեւօրէն չեմ կնքեր քեզ հետ, և ըստ որում գերի եմ յաւէտ՝ ինչ փոյթս որ կա՛մ քու կամ ուրիշին ստրուկն եղած ըլլամ:

Մեֆիս.—Ուրեմն այս օրէս, այս ժամէս սկսեալ՝ գերապանծ վարդապետիդ սեղանին վրայ սպասաւորի դերս պիտի կատարեմ հաւատարմօրէն: Խօսք մը եւս ունիմ. կենա՛ց կամ մահուա՛ն սիրոյն համար ըլլայ՝ կ'ուզեմ որ երկտող մը գրես ու յանձնես ձեռքս:

Ֆաուսթ.—Ի՞նչ, գի՞ր ալ կ'ուզես, ո՛ աւելորդ ձեւապաշտութեանց երկրպագու: Չե՞ս գիտեր արդեօք թէ ի՞նչ է մարդս, և թէ ի՞նչ արժէք ունի անոր խօսքը: Բաւական չէ՞ որ խոստումս յաւիտեանս յաւիտենից կապի տակ պիտի դնէ իմ կեանքս: Երբ բիւր մրրիկներով կը յուզուի աշխարհ՝ կը կարծե՞ս, կը հաւատա՞ս թէ գրաւոր խօսք մը բաւական զօրեղ պարտականութիւն մը եղած ըլլայ: Սակայն՝ այս ցնո-

րական փափաքը ամենուն սրտին մէջ կը գտնուի, և ո՞վ կարող է զերծ ըլլալ անկէ։ Երանի՛ այն մարդուն որ իր աննենգ խօսքը սրտին խորը կը կրէ. որ և է գոհողութիւն իրեն ցաւ չպատճառեր բնաւ։ Այլ սակայն գրուած ու կնքուած մագաղաթ մը ամենուն համար խրտուիլակ մըն է անհարկու, երդումը գրչի տակ աներևոյթ կ՚ըլլայ, և կնքամոմի ու մագաղաթի իշխանութիւն միայն կը ճանչնան։ Ի՞նչ կը պահանջես ինձմէ, ոգի՛ չարանենգ, արո՞յր, մարմա՞ր, մագաղա՞թ, թո՞ւղթ։ Սլաքո՞վ գրել պէտք է, քանդակագործի՞չ կամ գրիչով. խօսէ՛, ընտրութիւնը քեզ կը թողում։

Մեֆիս.—Ի՞նչ օգուտ ունին այդ բարբաջներն. ինչո՞ւ այդչափ տաքնաս ու բորբոքիս, ինձ համար հասարակ թղթի կտոր մը բաւական է. արեան փոքր շիթով մը պիտի ստորագրես անունդ։

Ֆաուսթ.—Եթէ քեզ համար բանը նոյնն է՝ կատակի համար է ըսածդ։

Մեֆիս.— Բոլորովին զուտ և մասնաւոր հիւթ մըն է արիւնը։

Ֆաուսթ.—Ա՜լ որ և է երկիւղ մը չկայ որ խոստումս դրժեմ, զի ճիշդ իմ բոլոր ոյժիս կիրառութիւթիւնը կը խոստանամ քեզ։ Շատ փքացայ, և այժմ հարկ է որ դիւական իշխանութեան հպատակիմ. մեծ Ոգին արհամարհեց զիս, բնութիւնը կը փակուի իմ առջևս, մտածմանս թելը խզուած է՝ և ամէն գիտութիւն ինձ զզուելի դարձած։ Հարկ է որ հրատապ խանդերս շիջանին հեշտութեան վհին մէջ։ Թող նորանոր հրաշքներ պատրաստուին մոգական անթափանցելի քօղերու մէջ։ Ժամանակներու շշունջին մէջ՝

բաղդի մրրկալի հոսանքներուն մէջ գահավիժի՛նք, և անկէ վերջ թախիծ՝ և վայելում, յաջողութիւն և ձախողութիւն, ուզածնուն պէս թող իրար յաջորդեն։ Անկէ վերջ մարդ-արարածը պէտք է որ զբաղի անդուլ և անդադար։

Մեֆիս.— Գիտցի՛ր թէ սահման մը, նպատակ մը նշանակուած չէ՛ քեզ. եթէ ախորժ կ'զգաս ամէն բանի համէն մէյմէկ քիչ առնելու, և ինչ որ փախչելու վրայ է՝ բռնելու՝ կրնաս քմացդ համեմատ վարուիլ ազատօրէն։ Հապա՛, կապուէ՛ ինձ հետ ու մի վեհերիր։

Ֆաուսթ.—Դու ինքդ կ'զգաս թէ փնտռածս զբօսանք չէ։ Ինքզինքս կը նուիրեմ աղմուկի, ցաւագին վայելումներու, ատելութիւն հոտող սիրոյ, յուսաբեկութիւն բուրող խաղաղութեան։ Սիրտս գիտութեան խանդէն բուժուած՝ անկէ վերջը որ և է թախծութեան համար փակուած չպիտի ըլլայ։ Էութեանս ամէնէ խորունկ խորշերուն մէջ կ'ուզեմ կեդրոնացնել ինչ որ բովանդակ մարդկութեան բաժինն է։ Ի՛նչ ամենաբարձր և ամենածածուկ բաներ որ ունի այն՝ կ'ուզեմ անոնց ամենուն հասնիլ, կ'ուզեմ անոր բովանդակած բոլոր բարին ու բոլոր չարը կուրծքիս մէջ կուտակել, և՝ անոր նման ուռելով տկարելով՝ նոյնպէս խորտակուիլ անոր նման։

Մեֆիս.— Կրնաս հաւատալ այնպիսի մէկու մը խօսքին՝ որ հազարաւոր տարիներէ հետէ դժնդակ սնունդ մը ծամած է. հաւաստի եղի՛ր թէ օրօրոցէ մինչև դագաղ՝ որ և է մահկանացու չէ՛ կարող մարսել հին խմորը։ Հաւատա՛ թէ այս ամէն բաները միայն Աստուծոյ մը համար եղած է՝ որ անոնց

ինքզինք կը նկատէ հոգեպէս՝ յաւիտենական շողիւնով մը փայփլուն. նա խաւարը մեզի համար հաստատած է, իսկ ձեզի համար՝ օր և գիշեր հաւասար և բոլորովին նոյն բանն է։

*Ցառուար.*—Այլ ես կ'ուզեմ զայն։

*Մեֆիս.*—Համաձայն ենք։ Մէկ կէտի վրայ կը վարանիմ տակաւին. ժամանակը կարճ է, իսկ արուեստը՝ երկայն. կարծեմ լաւ կ'ըլլաս միտքդ հրահանգելով։ Քերթողի մը հետ ընկերացի՛ր. թող իր երեւակայութեանց մէջ ճախրէ նա, և միեւնոյն ժամանակ գլուխիդ վրայ ամենափառ և գերազնիւ յատկութիւններ դիզէ կուտակէ. զոր օրինակ՝ առիւծի քաջասրտութիւն, եղջերուի արագաշարժութիւն, Իտալացւոց հրաբորբոք արիւնը, Հիւսիսի բնակիչներու հաստատամտութիւնը. հոգւոյդ վեհութիւնը նրբամտութեան հետ միաբանելու գաղտնիքը թող գտնէ նա, և միանգամայն երիտասարդական բորբոքուն կիրքերով քու սիրտդ հրահրէ։ Այսպիսի մարդ մը ճանչնալ կ'ուզէի, Փոքր-Աշխարհ պիտի դնէի անոր անունը։

*Ցառուար.*—Եւ ես ի՞նչ եմ ուրեմն,...։ Միթէ անհնա՞ր է ինձ հասնիլ մարդկութեան այն պսակին՝ որու կը ձգտին բովանդակ սրտեր։

*Մեֆիս.*—Դու... ես, ինչ որ ես։ Գլուխդ բիւրաւոր խոպոպիկներով ծածկէ՛, մէկ կանգուն բարձրութեամբ կօշիկներ անցո՛ւր ոտքդ, դարձեալ նոյնը՝ միշտ նոյնը պիտի մնաս։

*Ցառուար.*—Ես իսկ կ'զգամ թէ մարդկային մտքի բոլոր գանձերը դիզեմ յիս՝ դարձեալ պարապ է...։ Երբ վերջապէս հանգիստ առնել կ'ուզեմ՝ որ և է նոր-

գոյութիւն մը չըխիր որտէս. մազի մը թանձրութեան չափ չեմ կարող մեծնալ, և ո՛չ ալ քիչ մը ըլլալ՝ մօտենալ անհունութեան։

Մեֆիս.—Պատճառն այն է որ իրերն այնպէս կը նայիս՝ ինչպէս կը նային սովորաբար. լաւագոյն է որ մարդ՝ երբ տակաւին կենաց հաճութիւնները խոյս տուած չեն իրմէ՝ բոլորն ընդունի ինչպէս որ կուգան։ Ձեռքերդ, ոտքերդ, գլուխդ և կռնակդ քուկդ են հարկաւ, բայց միթէ առաջին անգամ վայելած բանդ ալ քուկդ չէ՞։ Եթէ վեց ձի ունիս՝ այս վեց ձիերուն ոյժը քու ոյժդ ըսել չէ՞ արդեօք։ Կը հեծնես անոնց վրայ, և ահա դու՝ հասարակ մարդ՝ քսան և չորս ոտք ունեցածի պէս կ'ըլլաս։ Շո՛ւտ, թո՛ղ զգայարանքներդ հանդարտ և երիվարներուդ հետ բոլոր աշխարհ արշաւէ՛։ Լաւ ուշ դի՛ր այս խօսքիս. մա՛րդ մը որ զուարճասէր է և փիլիսոփայելու կ'ելնէ՝ կը նմանի այն կենդանիին՝ զոր ոգին մէկը առել և ամայի դաշտի մը չորս կողմը կը դարձունէ, մինչդեռ գեղեցիկ ու կանանչ արօտ մը կը տարածուի շուրջանակի։

Ֆաուստ.—Եւ ինչպէ՞ս սկիզբ պիտի ընենք։

Մեֆիս.— Անմիջապէս ճամբայ ելնելով. բուտ տրոնմ այս գրասենեակդ ուրիշ բան չէ՝ բայց եթէ տանջանարան մը. ինքզինք և նորընծայ համբակները ձանձրացունելը կեա՞նք է միթէ։ Այդ գործը քու մեծփոր դրացիիդ թող։ Ցարդը ծեծելով խոնջենալէ ի՞նչ օգուտ կրնայ ելնել երբեք։ Ամենէ քաջ գիտցած բանդ՝ աշակերտներուդ չպիտի իշխես խօսելու։ Անոնցմէ մէկը եկած պիտի ըլլայ, քալելու ձայն կը լսեմ։

Ֆաուստ.—Մարդու երես տեսնել չեմ ուզեր։

*Մեֆիս.*— Խե՛ղճ պատանին երկար ժամանակէ ի վեր կ'սպասէ դուրսը, և պէտք չէ որ սիրտը կոտրած մեկնի։ Ո՛հ, ինձ տո՛ւր քու հագուստդ ու փեղոյրդ, այս ծպտումով շնորհքով մէկը պիտի ըլլամ։ (կը հագնի)։ Հիմայ գործը ինծի ձգէ՛. քառորդ մը միայն կ'ուզեմ։ Դուն մեր ընելիք գեղազուարճ ճամբորդութեան համար գնա՛ ամէն ինչ պատրաստէ։

(Ֆաուստ դուրս կ'ելլէ)։

*Մեֆիս.* (Ֆաուստի երկար հագուստներուն մէջ).— Գերագոյն ո՛յժ մարդկութեան, արհամարհէ՛ բանական և գիտութիւն։ Սատանայի կախարդանքներով և ցնորական տեսիլներով մնացի՛ր զինքզինքդ, և առա՛ ողջ բովանդակ իմ սեփականութիւնս կ'ըլլաս։— Բաղդը զայն այնպիսի ոգիի մը ձեռք յանձնած է՝ որ միշտ իբր ճամբան կը քալէ անվեհեր և որ շուտով մը երկրի բոլոր հաճութիւններէն վե՛ր բարձրանալ իր արագաթեւ թռիչով։—Կ'ուզեմ զինքը կեանքի ամայի անապատներուն մէջ առաջնորդել անդուլ. մոքսած ժամանակը զիս պիտի բռնէ ու կպչի, և իրեն յատուկ եղած անյագութեամբ՝ շրթանցը առջեւ ճօճացող անունդներ և ըմպելիներ պիտի նշմարէ՝ առանց երբեք հասնելու անոնց. սփոփում պիտի հայցէ, այլ ի զո՛ւր, և եթէ սատանայի յանձնուած ալ չըլլար՝ դարձեալ պիտի կորսուէր անվրէպ։

(Աշակերտ մը կը մտնէ)։

*Աշակերտ.*—Այս կողմերը գալս երկար ժամանակ չէ։ Կ'ուզեմ հլու ոգւով ծանօթանալ և խօսակցիլ այնպիսի մէկու մը հետ՝ որուն անունը մեծ ակնածութեամբ կը յիշուի։

Մեֆիս.—Շնորհակալ եմ քաղաքավարութենէդ, սակայն գիտցի՛ր որ ես ալ մարդ մ'եմ ուրիշմարդոց նման, և անոնցմէ տարբերութիւն չունիմ բնաւ։ Շատ ուսում առա՞ծ ես դու։

Աշակերտ.—Հոս գալուս բուն նպատակն է զիս ձեզի յանձնել։ Առոյգ արիւն, ըստ բաւականի դրամ և մանաւանդ բարի յօժարութիւն ըսուած բանն ունիմ. մայրս մեծ դժուարութեամբ բաժնուեցաւ ինձմէ, և ես տարակայութենէս կ'ուզեմ օգուտ քաղել՝ պիտանի բան մը սորվելու համար։

Մեֆիս.—Բուն իսկ աղբիւրին եկած ես։

Աշակերտ.—Ճշմարիտը խօսելով՝ արդէն այս տեղէս հեռանալու իղձ կ'զգամ, ըստ որում այս պատերուս ու այս սրահներուս մէջ չպիտի կրնամ համ մը առնել։ Խեղդուած տեղ մըն է այս՝ ուր դալարի ըսուած բանը չկայ։ Այս սենեակներու մէջ և այս նստարաններուն վրայ լսողութիւն և տեսողութիւն և նոյն իսկ դատողութիւն կորսնցնելը բան մը ըսել չէ։

Մեֆիս.— Սովորութենէ կախեալ բան մըն է այդ։ Երախան ի սկզբան տեսակ մը զզուանքով մօրը ստինքը բերանը կ'առնու, և սակայն շատ չանցած կը տեսնես որ հաճութեամբ իր սնունդը կը ծծէ անկէ։ Իմաստութեան ծիծն ալ այսպէս է, և դու օր ըստ օրէ ա՛լ աւելի համով պիտի գտնես զայն։

Աշակերտ.—Այո՛, ուրախ սրտիւ պիտի կախուիմ իմաստութեան պարանոցէն. սակայն անոր հասնելու միջոցը սորվեցնէիք ինձ։

Մեֆիս.—Նախ և յառաջ հասկցո՛ւր ինձ թէ ի՞նչ ուսում կ'ուզես ընտրել։

Աշակերտ.—Կը փափաքիմ խիստ գիտնական մէկն ըլլալ, և երկրի վրայ ու երկնից մէջ գտնուած ամէն բաներուն՝ գիտութիւն ու բնութիւն՝ խելք հասցնել։

Մեփիս.—Լաւ ճամբայի մէջ ես, սակայն պէտք չէ որ խիստ շատ հեռուները երթաս։

Աշակերտ.—Պատրաստ եմ նուիրել հոգիս ու մարմինս. սակայն շատ ուրախ պիտի ըլլայի՝ եթէ ամառուան մէջ հանդիսաւոր տօներու օրեր՝ քիչ մը ազատութիւն ու նաեւ զուարճութիւն վայելէի։

Մեփիս.—Գործածէ՛ ժամանակը, վասն զի շատ կը փախչի ձեռքերնէս, սակայն կարգապահութիւնը պիտի սորվեցնէ քեզ քու ժամերդ շահիլ։ Ամէն բանէ յառաջ կը խնդրեմ որ տրամաբանութեան դասերու հետեւիս։ Այս դասերով միտքդ լաւ պիտի կրթես. սպանիական ընտիր կօշիկներ պիտի հագցընեն անոր՝ որպէս զի աւանդական ճամբային վրայ խոհեմութեամբ արշաւէ և շրջմոլիկ հուրի նման մանուածապատ շրջաններ չառնէ բնաւ։ Յետոյ, բոլոր ժամանակը պիտի սորվեցնեն թէ՝ ուտել և խմելու նման բաներու համար՝ զոր ի քթթել ական կ'ընէ մարդ, մէկ, երկու, երեք՝ անհրաժեշտ կերպիւ հարկաւոր է։ Մտածումներու գործարանը ոստայնանկի գործին կը նմանի՝ ուր ոտքի մէկ շարժումը բիւրաւոր դերձաններ կը խաղցունէ, ուր կկոցը կ'ելնէ կ'իջնէ շարունակ, թելերը կը սահին անտեսանելի կերպով և ուր՝ վերջապէս՝ մէկ անգամուն՝ բիւրաւոր հանգոյցներ կը ձեւանան. անկէ ետքը մէյ մ'ալ ատենես որ փիլիսոփան կուգայ և փորձերով կը հասկցնէ քեզ թէ բանն այդպէս պէտք է ըլլայ. առաջինը ա՛յս է, երկրորդն՝ այս, ապա ուրեմն երրորդն ու չորրորդն

ալ՝ այս. և թէ՝ եթէ առաջինն ու երկրորդը չըլլային՝ երրորդն ու չորրորդն ալ չպիտի ըլլային: Ամէն աշխարհի ուսանողները մեծապէս կը գնահատեն տրամաբանելու այս կերպը, և սակայն անոնցմէ և ոչ մէկը կրցած է ոստայնանկ ըլլալ: Ով որ կենդանի էակ մը ճանչնալ ու ջնջել կ'ուզէ՝ նախ և յառաջ հոգին կը վանէ անկէ. այն ժամանակ բոլոր մասերը ձեռքին մէջ կ'ունենայ, այլ, աւա՜ղ, մտաւոր կօղն է միայն ունեցածը: Տարրաբանութիւնը ասիկայ encheiresin naturae կը կոչէ. այսպէս ինքզինքը կը հեգնէ, և հեգնելն ալ չգիտեր:

Աշակերտ.—Ձեր խօսքերը լաւ մը չեմ հասկնար:

Մեփիս.— Երբ ամէն ինչ մաս մաս բաժնել և պատշաճապէս դասակարգել սորվիս՝ այն ատեն ըսածներս աւելի աղէկ պիտի հասկնաս:

Աշակերտ.— Այս ամէն խօսքերս այն աստիճան կ'ապշեցնեն զիս՝ որ կարծես թէ այս գլուխս իմս եղած չըլլայ:

Մեփիս.— Ամենէ յառաջ հարկ է որ բնազանցութիւն սորվիս, որով մարդկային ուղեղի համար անըմբռնելի եղած բաները խորունկ կերպով քննել հետազօտել պիտի պարտաւորիս. յաջողիս կամ ո՛չ այդ գիտութեան սեփհական բառ մը միշտ պատրաստ ունեցի՛ր բերնիդ մէջ: Այլ նախ՝ առջևնիս եղած կէս տարուան համար՝ ժամանակը կանոնաւոր կերպով կարգադրես՝ որչափ կարելի է: Օրը հինգ ժամ աշխատութեան յատկացուր: Առաջին զանգակի ձայնին՝ հոս գտնուէ՛. սակայն հարկ է որ լաւ պատրաստուած՝ և հատուածներդ ալ աղէկ մը սերտած ըլլաս, որպէսզի գրքին մէջ եղածը միայն զրուցելու աներկեւան վըս-

տահութիւն ունենաս․ միւս կողմէ հոգ տա՛ր որ միշտ բաներ գրես՝ որպէս թէ Հոգին Սուրբ ինքը ներշնչած ըլլար քեզ։

Աշակերտ․— Այս մեթոտիս օգտակարութեան այն աստիճան համոզուեցայ՝ որ վերստին կրկնելու պէտք պիտի չունենանք բնաւ։ Երբ մէկը բան մը շարագրած է՝ գոհունակ սրտիւ տուն կը դառնայ միշտ։

Մեփիս․— Սակայն հարկ է որ համալսարանական ուսում մը ընտրես քեզի։

Աշակերտ․— Իրաւագիտութիւն սորվելու փափաք չեմ զգար։

Մեփիս․— Անիկայ քեզ յանցանք չեմ կրնար սեպել, ըստ որում այդ գիտութեան ի՛նչ ըլլալը շատ քաջ գիտեմ։ Օրէնքներն ու իրաւունքներն յաւիտենական հիւանդութեան մը պէս իրար կը յաջորդեն, սերունդէ սերունդ կը քաշկռտուին և անյայտ կերպով մը մէկ վայրէ ուրիշ վայր կը յառաջանան։ Խելքը յիմարութիւն կ'ըլլայ, բարիքը չարիք։ Վա՜յ քեզի, ո՛վ քու հարցդ զաւակը, վա՜յ քեզի, զի ընդածին իրաւունքի՝ աւա՜ղ, խօսքն իսկ չկայ։

Աշակերտ․— Ձեր խօսքերը լսելով՝ զգացած խորշումս աւելի կը սաստկանայ։ Ո՜հ, երանի՜ անոնց՝ որ ձեր ոտից ներքեւ կը մարզուին։ Աստուածաբանութիւն սորվելու փափաք մը գրեթէ կ'զգամ սրտիս մէջ։

Մեփիս․— Կ'ուզեմ այդ գիտութեան մասին չխաբել կամ չսխալեցընել զքեզ։ Աստուածաբանութեան մէջ ամենադժուար է մոլոր ճամբայ մը չբռնել, գաղտնածածուկ թոյն մը կը պարփակէ այն՝ զոր դեղէն զատել որոշելը գրեթէ անյաղթելի դժուարու-

թիւններ կ՚ընծայէ։ Այս դասերուն մէջ՝ եթէ երբէք հետամուտ ըլլաս, լաւագոյն ճամբան վարժապետին խօսքերը կոյրկուրայն ընդունելն ու գործածելն է։ Վերջապէս ամէն բանէ աւելի բառերու կարեւորութիւն տուր։ Այս կերպով ապահով ճամբայ մը կը գտնես ստուգութեան տաճարը հասնելու համար։

Աշակերտ.— Սակայն բառ մը հարկ է որ գաղափար մը պարունակէ։

Մեփիստ.— Իրաւ է ըսածդ, այլ պէտք չէ այդ-բանը հոգ ընել, քանզի ուր որ գաղափար կը պակսի՝ խօսքը կամ բառը խիստ պատեհ կերպով կրնայ անոր տեղ գրուիլ. մարդս խօսքերով կրնայ պատուական վիճաբանիլ, խօսքերով կրնայ ամբողջ դրութիւն մը շինել. խօսքերու սովորաբար դիւրին հաւատ կ՚ընծայէ մարդ և անոնց մէջէն տառ մը անգամ վերցուիլը չուզեր։

Աշակերտ.— Ներեցէք ինձ որ կը ձանձրացնեմ զձեզ, այլ նոր հարցումի մը հարկը կ՚զգամ....։ Բիչ մըն ալ բժշկութեան վրայ չխօսի՞ք ինձ։ Երեք տարի շատ ժամանակ չէ, և միւս կողմէ՝ դաշտը լայնատարր է և ընդարձակ. մատով ցուցուած նշան մը կը բաւէ ս ոէպ հեռուները տանելու զմեզ։

Մեփիստ. (առանձին).— Այս անհամ խօսուածքը զիս կը յոգնեցնէ, և սատանայի դերս ձեռք պիտի առնեմ կրկին։ (Բարձր ձայնիւ)։ Բժշկութեան հոգին դիւրին է ըմբռնել։ Ժողովրդեան թէ՛ բարձր թէ՛ ստորին դասերը լաւ մը կ՚ուսումնասիրես՝ որպէս զի թողուս զանոնք՝ որ ինչ կ՚ուզեն ըլլան։ Ի՜նչ ջանք ընես գիտութեան ետեւէ վազելու համար՝ զուր է, իւրաքանչիւր ոք կրցածը միայն կրնայ սորվիլ

ով որ առիթէն օգուտ քաղելը գիտէ՝ ան է խելացի վարպետ մարդ։ Կազմութիւնդ տկարին տեղն է, համարձակութիւն չպակսիր քեզի, եթէ ինքզինքիդ վըրայ վստահութիւն ունենաս՝ այդ վստահութիւնն ուրիշներուն ալ կրնաս ներշնչել։ Հոգ տա՛ր մանաւանդ որ կիներն առաջնորդելու արուեստը լաւ սորվիս, ձայնի այլ և այլ աստիճաններու վրայ գեղգեղուած իրենց ափսոսանքները նայէ՛ որ միշտ միևնոյն ճամբով դարմանես, և որչափ ժամանակ որ հետերնին կէս-յարգական դիրքի մէջ գտնուիս՝ զանոնք ամենքն ալ ձեռքիդ մէջ կ՚ունենաս։ Ամէն բանէ յառաջ փառաւոր տիտղոս մը պէտք է համոզէ զիրենք՝ որ քու արուեստդ շատ աւելի գերիվեր է ուրիշներէն. այն ատեն կրնաս տեսակ մ՚ազատութիւններ ձեռք առնել՝ որոնց՝ ուրիշները չա՛տ տարիներէ ետքը՝ հազիւ թէ իրաւունք պիտի ունենային։ Հոգ տա՛ր որ երակնին ստէպ ստէպ զննես, և շարժումիդ հետ մէկտեղ հրացայտ աչք մ՚ալ նետած ժամանակդ՝ թեւդ անոնց բարակ մէջքին անցո՛ւր՝ իբր տեսնելու համար թէ իրենց սեղմակը լաւ մը պնդուա՞ծ է։

Աշակերտ.— Ատիկայ շատ քաջ կը հասկցուի. ես աշխարհքը կը ճանչնամ, ապահով եղի՛ք։

Մեֆիս.— Բարեկա՛մ, գիտցի՛ր որ ամէն տեսական վարդապետութիւն չոր ու ցամաք բան մ՚է, մինչ կենցաղի պատուական ծառն է ծաղկաւէտ և զարդարուն։

Աշակերտ.— Այս լսած խօսքերս երազի մը պէս կուգան. կրնա՞մ ուրիշ անգամ ես գալ անհանգիստ ընել զձեզ՝ որպէսզի լաւագոյն ևս օգտուիմ ձեր իմաստութենէ։

Մեֆիս.—Ամէն ուշադրութիւն պիտի նուիրեմ քեզ։

Աշակերտ.— Սակայն անկարելի է ինձ մեկնիլ՝ ա-

ռանց յիշատակարանս անգամ մը ներկայացնելու․ հաճեցէք, կ'աղաչեմ, գիտողութիւն մը, բան մը գրել անոր մէջ։

*Մեփիս*.— Լաւ։ (Կը գրէ եւ թերթը ետ կը դարձնէ)։

Եղիցիս իբրև զԱստուած, գիտակ բարւոյ և չարի։
Eritis sicut Deus, bonum et malum scientes։

(Աշակերտը կը բարեւէ ակնածութեամբ եւ կը խաչուի)։

*Մեփիս*.— Ինձ ազգակից Օձին վաղեմի վճռոյն հետեւէ՛, և քիչ ատենէն քու աստուածային նմանութեանդ վրայ պիտի սկսիս կասկածիլ։

*Ֆաուստ*.— Ո՞ւր պիտի երթանք հիմայ։

*Մեփիս*.— Ուր որ ուզես։ Թէ՛ բարձր և թէ ստորին ընկերութիւնները կրնանք յաճախել։ Տեսնե՛ս ինչ հաճութիւններ և ինչ օգուտներ պիտի ծագին քեզ այս արշաւէն։

*Ֆաուստ*.—Այլ ես կենցաղավարութեան ամենէ հասարակ կանոններն իսկ չգիտեմ, ընկերութիւններու մէջ մտած ելած չըլլալով՝ իմ խուզարկութիւնս յաջողութիւն չպիտի գտնէ, ուրիշներու քով այնչափ պզտիկ կ'զգամ ինքզինքս՝ որ ամէն վայրկեան պիտի շփոթիմ, ամէն վայրկեան պիտի շուարիմ։

*Մեփիս*.— Այդ ամէն բաներուն մէջ կրնաս յաջողիլ, ո՛վ բարեկամ, ինքզինքիդ վրայ վստահութիւն ունեցի՛ր և արդէն ապրիլ գիտցած պիտի ըլլաս։

*Ֆաուստ*։— Ի՞նչպէս պիտի ելնենք ասկէ։ Ո՞ւր պիտի գտնենք կառք, ձիան և սպասաւորներ։

*Մեփիս*.— Այս վերարկուն պարզելով՝ կրնանք օդին մէջ սուրալ․ այսպիսի յանդուգն արշաւի մը համար ծանր կապոց մը մի՛ առներ հետդ։ Ես հիմայ կտոր մը դիւրավառ օդ կը պատրաստեմ, և իսկոյն

երկրէ վեր կը բարձրանանք, եթէ թեթեւ ըլլանք՝ քանի շուտ մը կը յաջողի: Ընտրած նոր կեանքիդ համար կը շնորհաւորեմ զքեզ:

---

# ՄԱՌԱՆ ՕՁԵՐՊԱԽԻ, ԼԷՅՓՑԻԿԻ ՄԷՋ

## Գործաւորներու զուարթ ընկերութիւն մը

Ֆրօշ.— Ո՛չ խմող կայ, ո՛չ ծիծաղող: Ես պիտի սորվեցնեմ ձեզ թէ ի՞նչ ըսել է երեսնիդ այդպէս կախած նստիլը: Դուք որ սովորաբար ուրախութեան աղուոր հուրի մը պէս կը շողշողաք՝ հիմայ թրջուած յարդի նման՝ խեղճօրէն կը մխաք:

Պրանտէր.— Մեր այսպէս կախելուն պատճառը դո՛ւ ես, բան մը չես հաներ մէջտեղ. ո՛չ խնդութիւն մը ո՛չ մեծ կամ փոքր զազրութիւն մը:

Ֆրօշ.— Անոր գլուխը բաժակ մը գինի կը թափէ. Ահա երկուքէ՛ն ալ քեզի:

Պրանտէր.— Ո՛հ, Թշուառակա՜ն:

Ֆրօշ.— Դու ինքդ ասանկ բան մը չուզեցի՞ր:

Սիեպէլ.— Բարկացողը թող ձգէ՛ երթայ մեր մէջէն, դուռը բաց է: Երգ մը երգե՛նք մեր բոլոր ձայնով, խմե՛նք և պոռա՛նք, ա՜հ, է՜հ, ա՜յ:

Ալդմէյէր.— Ո՛հ Տ՛էր Աստուած, այս ի՜նչ քաշուելիք ձայն է, ականջներս կը խուլնան, չո՛ւտ, բամպակ հասցուցէ՛ք ականջներուս:

Սիեպէլ.— Կամարին այդպէս հնչելէն հասկցէ՛ք թէ որչա՜փ ահարկու է Ալդմէյէրի բամբային ձայնը:

Ֆրօշ.— Իրա՛ւ է, դռնէ՛ն դուրս՝ որոնք որ չեն ուզեր ընկերութեան յարմարիլ: Լա՜, լա՜, լա՜, լա՜, լա՜:

*Ալդմեյեր*.— Լա՛, լա՛, լա՛, լա՛, լա՛։
*Ֆրուֆ*.— Կոկորդները գործի մէջ են։

(Կ'երգէ)

Սուրբ Պետութիւն Պապին Հռովմայ
Ի՞նչպէս կանգուն դեռ կը մնայ։

*Պրանտեր*.— Անճոռնի՛ երգ մը յիրաւի։ Գետնին տա՛կը անցնի քաղաքական երգ մը, տխո՛ւր երգ մը...։ Ամէն առաւօտ փառք տուէ՛ք Աստուծոյ որ Հռովմի իշխանութեան հետ խնդիր մը չունինք։ Շատ անգամ բաղդաւոր կը սեպեմ ինքզինքս որ ո՛չ կայսր եմ և ո՛չ պաշտօնեայ։ Ի վերայ այսր ամենայնի պէտք չէ որ առանց գլխի մնանք և Պապ մ'ընտրելն հարկաւոր է։ Գիտէք արդէն թէ մարդ մ'այդ աստիճանին բարձրանալու համար ո՞ր յատկութիւնն է ամենէ աւելի կարեւոր։

*Ֆրուֆ*.—(Կ'երգէ)

Ե՛լ, ո՛ սոխակ, ե՛լ, հոգւոյս լո՛յս,
Հազար բարեւ տա՛ր սիրուհւոյս։

*Սիեպէլ*։— Ո՛հ, խնդրեմ, սիրուհւոյդ բարեւ մ'անգամ մի՛ խրկեր, անոր խօսքը լսել չեմ ուզեր։

*Ֆրուֆ*.— Բարե՛ւ. Նաեւ համբո՛յր սիրուհիիս, դուն ո՞վ ես որ իմ գործերուս պիտի խառնուիս։

(Կ'երգէ)

Դի՛ր պարզունակդ, զի գիշեր է,
Դի՛ր, տարփածուդ քեզ կը հսկէ,
Դի՛ր անշշուկ, ատենն ուշ է։

*Սիեպէլ*.— Հա՛, նայիմ. երգէ՛, երգէ՛, գովէ՛ զանի, երկինք հանէ՛ եթէ կրնաս, իմ ալ խնդալու կարգս պիտի գայ։ Ինչպէս զիս թողուց նէ՝ զքեզ ալ օր մը պի-

տի թողու։ Խպլիկ մը տան իրեն՝ իրր սիրող, պատրաստ է՝ եթէ փողոցն իսկ գտնուի, կատակներ ընել անոր հետ։ Գլօքսպերկէ դարձող ծեր նոխազ մ'արշաւակի անցած ժամանակ՝ անոր բարի իրիկուն մը կրնայ մաղթել, այլ քեզի ու ինծի նման երիտասարդ մ'այս տեսակ ողջկան պէտք եղածէն աւելի բան մ'է։ Կ'ուզեմ որ իրեն ուրիշ տեսակ բարեւ մը չտրուի՝ բայց եթէ իր պատուհանին ապակիները ջարդուբուրդ ընելով։

*Գրանտէր* .— (*Սեղանին հարուածներ տալով*)

Լռութի՜ւն, լռութի՜ւն, մտիկ ըրէ՛ք ինծի. պիտի խոստովանիք, պարոններ, որ ես ապրիլ ի՛նչ է գիտեմ։ Հոս սիրահարներ կը գտնուին, ուստի կը պարտաւորիմ ըստ սովորութեան լաւ բան մը մեծարել անոնց՝ գիշերուան համար։ Ուշադրութի՜ւն, վասնզի նոր՝ բոլորովին նոր երգ մը պիտի երգեմ, և ամէնքնիդ ալ ուժեղ ձայնով մը նագարաթը կրկնեցէ՛ք ինծի հետ։

*Կ'երգէ*

Խոշոր մի մուկ խոհանոցի,
Ա՛նքան ընտիր լաւ ծամոցներ
Թշեց, կերաւ՝ որ Լուտերի
Նախանձն անգամ պիտի շարժէր։
Այլ օր մ'ահա խե՜ղճ կենդանին
Թունաւորուած դուրս կը նետուէր,
Տրտում, տխուր ու ցաւագին.
Սէրը կարծես կրծէր հոգին։

ԳԱՐԸ

Սէրը կարծես կրծէր հոգին։

ՊՐԱՆՏԷՐ

Վազվզելով՝ շունչ քաշէր վեր,
Թէ՛ կը խածնէր թէ՛ կը քերթէր,
Բոլոր տան մէջ շրջան կ'առնուր,
Գալարուելով խիստ ծամածուռ...։
Հեգնաբան մը կատակաւէր
Տեսնելով ցաւն այդ խեղճ մուկի՝
Անտարակոյս պիտի ըսէր,
«Հոգւոյն խորը, սէ՛ր մը ունի»։

ՊԱՐԸ

«Ներսը, բարէ՛, սէ՛ր մը ունի»։

ՊՐԱՆՏԷՐ

Փուռն մէջ հէք մեր ախտաւոր
Երթալ պահուիլ միտքը դրաւ.
Այլ սխալ էր այդ, ինչու որ
Զարչրկուելով հոն սատկեցաւ։
Սպասուհին, աղջիկ անգութ,
Ձայն տեսնելով կը ծիծաղի.
«Ի՜նչպէս», կ'ըսէր, կը խորվի շուտ,
Ներսըն ա՛յո՛ սէր մը ունի»։

ՊԱՐԸ

«Ներսըն, այո՛, սէր մը ունի»։

Սիէպէլ.— Այդ անպիտանները ի՜նչպէս կը հրճուին, ի՜նչպէս կ'ուրախանան։ Խեղճ մկան մը թունաւորութիւն, յիշատակաց արժանի դրուա՜գ մը ստուգիւ։

Պրանտէր.— Ի՜նչպէս նմաններուդ կողմը կը քաշես, Սիէպէլ։

Ալդմայէր.— Տե՛ս մէյ մը սուինկայ, խոշոր փորովը և կունտ գլուխովը բուղխ սիրտ մէկը կը դառնայ դժ-

բաղդութեան առջև։ Այդ սատկող մուկը տեսնելով՝ կարծես ճիշդ իր պատկերը տեսած ըլլար։

## ՖԱՈՒՍԹ. ՄԷՖԻՍԹՕՖԷԼԷՍ

### ՄԷՖԻՍԹՕՖԷԼԷՍ

Ամէն բանէ յառաջ պէտք է որ զուարթ ընկերութեան մը մէջ տանիմ զքեզ, որպէսզի տեսնես թէ կեանք վարել ու զուարճանալ ի՛նչպէս կ'ըլլայ աշխարհի վրայ։ Հոս ամէն օր տօն է ժողովրդեան համար. Նա քիչ խելքով և շատ անփութութեամբ զուարճութեանց անձուկ շրջանակին մէջ կը դառնայ ու կը դառնայ՝ իր պոչին հետ խաղացող կատուին նմանելով. ո՛րչափ ժամանակ որ գլուխի ցաւէ գանգատ մը չունին, և որճարանապետը եղքէն վճարուելու պայմանաւ ըմպելիներ կուտայ իրեն՝ գոհ և ուրախ կեանք մը կը վարէ և հնհնուք ի՛նչ է՝ չգիտեր բնաւ։

Պրանտէր.— Այսոնք ճամբորդ կ'երեւին. իրենց օտարոտի կերպարանքէն յայտնի կը տեսնուի թէ Լէյփցիկի մէջ գտնուելնին շատ ժամանակ չէ։

Ֆրօշ.— Իրաւունք ունիս։ Պատի՛ւ մեր Լէյփցիկին՝ այն փոքր Բարիզին՝ ուր ամէն կողմէ օտարականք կը վազեն։

Սիէպէլ.— Ո՞վ կը կարծես թէ ըլլան այդ օտարականները։

Ֆրօշ.— Դուն գործն ինծի թո՛ղ. մէկ գաւաթ գինիով այդ անպիտաններուն բերնէն իրենց գաղտնիքները կ'առնում։ Ընտանիքէ ըլլալ պէտք են, ըստ որում աէգ և դժգոհ նայուածք մ'ունին.

Բրանտեր.— Գրամ կը դնեմ թէ ի արբերաներ են երկուքն ալ:

Ալթմայեր — Թուցէ:

Ֆրոշ.— Ուշադրութի՛ւն. պիտի սկսիմ քթերնէն բռնել:

Մեֆիստ.— Խե՛ղճ մարդիկ, սատանան մաքերնէն չանցնիր՝ եթէ վզերնէն բռնած ըլլայ անգամ:

Ֆաուստ.— Բարեւ ձեզ, պարոններ:

Սիպէլ.— Բարի եկաք: (Ցած, արհամարհանօք Մեֆիստոֆելէսը դիտելով:) Ի՞նչ ունի այս անզգամն՝ որ մէկ ոտքով կը կաղայ:

Մեֆիստ.— Թոյլ կուտա՞ք որ ձեզ հետ նստինք: Ընկերովի զուարճանալով պիտի մոռնանք թէ ընտիր գինի կը պակսի մեզ:

Ալթմայեր.— Դիւրակամ մէկը չէք՝ ինչպէս կ՚երեւի:

Ֆրոշ.— Րիբբախէ խիստ ուշ պէտք է ճամբայ ելած ըլլաք, Յովհաննէսի տունը ընթրեցի՞ք այս գիշեր:(*)

Մեֆիստ.— Իր տան առջեւէն անցանք, այլ ներս չմտանք: Վերջին անգամ տեսնուած էինք իր հետ, երկար ատեն իր ազգականներուն վրայ խօսքեր բացաւ, եւ խնդրեց մեզմէ որ իր կողմէ շատ շատ բարեւներ տանինք անոնց:

Դէպ ի Ֆրոշ կը խոնարհի:

Ալթմայեր, ցած.— Ճարպիկ մէկն է. նա՛ քու քըթէդ կը բռնէ:

Սիպէլ.— Հնարած-վարածին մէկը կ՚երեւայ:

Ֆրոշ.— Համբերէ քիչ մը, ես հիմայ անոր կը բռնեմ

Մեֆիստ.— Մտած ժամանակնիս՝ եթէ չեմ սխալիր՝ վարժ ձայներու պարերգ մը լսեցինք: Երգի ձայները

(*) Գերմանական հասարակաբանութիւն:

սքանչելի կերպով պէտք է հնչէին այս կամարներուն տակ։

Ֆրոշ.— Նուագագէ՞տ մ'էք արդեօք։

Մեֆիսթ.— Ո՜հ, ո՛չ, տաղանդս փոքր է, այլ իղձս՝ մեծ։

Ֆրոշ.— Հանեցէ՛ք մեզ երգ մը երգել։

Մեֆիսթ.— Պատրաստ եմ՝ եթէ կ'ուզէք։

Սիպէլ.— Նոր երգ մը՝ եթէ կարելի է։

Մեֆիսթ.— Սպանիայէն կը դառնանք. գինիի և երգի հայրենիք է այն։

կ'երգէ

Սիրուն մի լու բնակէր
Թագաւորի ապարան...,

Ֆրոշ.— Մտի՛կ ըրէ՛ք... լսեցի՞ք, լո՛ւ մը։ Լուն անախորժ հիւր մը կը թուի ինձ։

ՄԷՖԻՍԹՕՖԷԼԷՍ, կ'երգէ

Սիրուն մի լու բնակէր
Թագաւորի ապարան,
Իշխանը զինք կը սիրէր
Բուն զաւակի մը նման։
Պատմութիւնը կ'ըսէ որ
Իր դերձակին պատուիրեց
Երթալ առնուլ չափն անոր,
Եւ պատրաստել հագուստ պերճ։

Պրանտէր.— Մի՛ մոռնաք ազդարարել դերձակին որ կրցածին չափ ճշդիւ առնու չափը, և՝ եթէ չուզեր որ իր գլուխը կորեն, թող զգուշութիւն ընէ որ վարտիքին վրայ ամենափոքր փոթ մը չտեսնուի։

ՄԷՖԻՍԹՕՖԷԼԷՍ

Լուն հրճուեցաւ չափազանց՝
Երբ իր վրայ տեսաւ շատ

Թուիչ, ոսկի ու արծաթ,
Ու վզէն ալ՝ կախուած խաչ։
Իսկոյն բերել նա տուաւ
Քոյր և եղբայր, ազգական՝
Որք արքային հրամանաւ
Աւագանւոյ կարգ անցան։
Այլ գեղեցկութիւնն այն եղաւ՝
Որ պալատի մարդիկներ
Ձկռնալով խօսիլ բնաւ՝
Կը ջերուէին օր, գիշեր։
Ի՜նչ դժուարին կացութիւն,
Ի՜նչ տաղտուկ է աւիկայ....։
Երբ մեզ խայթէ անշահ լուն՝
Ձայն ջախջախենք անխնայ։

ՊԱՐ, ուրախութեան աղաղակներով,
Երբ մեզ խայթէ անշահ լուն՝
Ձայն ջախջախե՛նք անխնայ։

Ցրուֆ,— Ազնի՜ւ, ազնի՜ւ, լաւ կերպն ա՛յդ է։

Սիկապեղ.— Ո՞ւր էր թէ բոլոր լուերն այդ փորձանքին հանդիպէին։

Պռանսկէր.— Սեղմեցէ՛ք մատերնիդ և ուժով մը կըռմըթեցէ՛ք զանոնք։

Այղմէջէր.— Կեցցէ՛ ազատութիւն, կեցցէ՛ գինի։

Մեֆիսթ.— Ի պատիւ ազատութեան գաւաթ մը պիտի պարպէի սիրով՝ եթէ քիչ մը լաւագոյն ըլլային ձեր գինիները։

Սիկապեղ.— Այդ խօսքը մէյ մ'ալ բերանդ չառնես։

Մեֆիսթ — Կը վախեմ որ պանդոկապետին սիրտը պիտի վիրաւորուի, եթէ ոչ՝ մեր մառանի լաւագոյն

գինիները պիտի հրամցունէի այս պատուական ընկերութեան։

Սիպէլ,— Դուք այդ մասին հոգ մի՛ ընէք, ամէն ինչ վրաս կ'առնում։

Ֆրօշ.— Եթէ կ'ուզէք որ մասամբ գովենք՝ ձեր գինիներէն բաժակ մը մեծարեցէք մեզ, ըստ որում գինիի մը վրայ երբ դատաստան ընել ուզեմ՝ հարկէ որ բերանս ողողուած ըլլայ անով։

Ալթմայեր, ցած.— Կ'երեւի թէ Հռենոսի կողմերէն են այս պարոնները։

Մեֆիստ.— Գայլիկոն մը տուէ՛ք։

Պրանտեր.— Ի՞նչ պիտի ընէք գայլիկոնը։ Չեմ կարծեր որ ձեր գինւոյ տակառները դրան առջև պատրաստ գտնուած ըլլան։

Ալթմայեր,— Հոն՝ ետին՝ պանդոկապետը գործիքներով լեցուն կողով մը դրած է։

Մեֆիստ.—(գայլիկոնը կ'առնու Ֆրօշէն)։ Հիմայ ըսէք թէ ի՞նչ գինի կը փափաքիք։

Ֆրօշ.— Ի՜նչ, ամեն տեսակ գինի ունի՞ք։

Մեֆիստ.— Իւրաքանչիւր ոք թող ընտրէ իր ուզածը։

Ալթմայեր՝ Ֆրօշին.—Ա՜հ, ա՜հ, արդէն շրթունքներդ լզել կ'սկսիս։

Ֆրօշ.— Լա՛ւ, եթէ ազատ եմ ընտրելու՝ Հռենոսի գինի կ'ուզեմ, լաւագոյն գինին հայրենիքը կուտայ միշտ։

Մեֆիստ.— (Ֆրօշի բազմած տեղը սեղանին եզրին վրայ ծակ մը բանալով)։ Քիչ մը կնքամոմ տուէք որ ծակը խցեմ։

Ալթմայեր,—Օ՜հ, օ՜հ, ձեռնածութեան սկսանք։

Մեփիս. — (Պրանտերին). Իսկ դուք ի՞նչ գինի կ'ուզէք։

Պրանտեր. — Շամպանեի գինի, և փրփրալի ըլլայ այն որչափ կարելի է։

Մեփիսթ. — (մինչ ծակեր կը բանայ. այն միջոցին ընկերութեան մէջէն մէկը խիցեր պատրաստելով՝ ծակերուն մէջ կը խօթէ)

Պրանտեր. — Օտար բաները չփնտռել չըլլար, ըստ որում աղուորը երբեմն խիստ հեռուները կը գտնուի։ Հայրենասէր Գերմանացի մը չկրնար Գաղղիացիները սիրել, այլ սակայն անոնց գինին կը խմէ սիրով։

ՍԻԵՊԷԼ, մինչ Մեփիսթ. իր նստած կողմին կը մօտենայ. Շի՛տակն ըսելով՝ ես թթուն չեմ սիրեր, անոյշ գինի մը հրամցունէիք ինծ՝ եթէ կարելի է։

Մեփիսթ. — Ուրեմն քեզ ալ Հունգարիայի քաղցրահամ գինի մեծարեմ։

Ալթմայեր. — Ո՛չ, պարո՛ն, այդ չըլլար, աղէկ նայեցէ՛ք երեսս։ Կը տեսնեմ թէ դուք զմեզ խաբել կուզէք։

Մեփիսթ. — Է՜հ, է՜հ, ասանկ ազնիւ կոչնականներու հետ վտանգաւոր ընթացք մը պիտի ըլլար այդ։ Սակայն գործի սկսի՛նք, այդչափ խօսք բաւական է. ի՞նչ գինի կրնամ հրամցունել։

Ալթմայեր. — Ամէն գինիներէն ալ, կը լսէ՞ք, և խօսքերը լմննա՛ն։

(Բացուած ծակերուն խցուելէն վերջը Մեփիսթ. ոտք կ'ելնէ։

Մեփիսթ. — (տարօրինակ շարժումներով). Եթէ ճակատն այծքաղի

Բարձր եղջիւր կը բուսնի՝
Եթէ խաղողք պատուական
Որթատունկէ յառաջ գան՝
Ծակուած փայտէ սեղանն ալ
Աղուոր գինի կրնայ տալ։
Հրաշք մ՚է աս, հաւատացէք․
Այլ գիտէք թէ ամէն բան
Հնարին է բնութեան։

Բացէ՛ք խիցերն, խմեցէ՛ք։

Ամենքը․— (խիցերն հանելով եւ իրենց ցանկացած գինին բաժակի մէջ ընդունելով։) Աս ի՜նչ աղուոր աղբիւր կը հոսի մեզ համար։

Մեփիսթ․— Հոգ տարէ՛ք միայն որ շիթ մը չթափէք գետին։

ԱՄԷՆՔԸ, (կ՚երգեն)

Խմե՛նք, խմե՛նք յաւիտեան
Ո՛չ չափ ճանչնանք, ո՛չ սահման։

(Նորեն կ՚սկսին խմել։

Մեփիսթ․— Մէյ մը որ սկսան՝ նայէ՛ ո՛րչափ կը խմեն աս անպիտանները։

Ֆաուստ․— Ես չեմ ուզեր մնալ հոս, կ՚ուզեմ մեկնիլ։

Մեփիսթ․— Պահ մ՚ես ուշադրութիւն՝ և պիտի տեսնես անասնութիւնը իր բոլոր պարզութեան մէջ։

Սիեպել․— (խմած ժամանակ զգուշութիւն չըներ, եւ գինին գեsին կը թափէ՝ որ բոցերու կը փոխուի։ Օգնութի՛ւն, օգնութի՛ւն, հասէ՛ք, կրակ կայ, դժոխքը կ՚այրի հոս։

Մեփիսթ․— (խօսելով բոցին)։ Հանդարտէ՛, տարրդ իմ սիրական։ (գործաւորներուն)։ Այս անգամ քաւարանի

փոքրիկ մէկ հուլն էր միայն։

Սիէպէլ.— Ի՞նչ կը նշանակէ այս։ Կեցի՛ր, Թշուառակա՛ն, ըրածդ շատ սուղի պիտի նստի, կ'երեւի թէ մեր ո՞վ ըլլալը չես ճանչնար։

Ֆրոշ.— Թող մէյ մ'ալ ընէ այդ բանը՝ ու կը տեսնէ։

Ալդմէյէր.— Ըստ իս, քաղաքավար կերպով պէտք է աղաչենք որ ձգէ երթայ այս տեղէ։

Սիէպէլ.— Այս պարոնն ի՞նչ կ'ուզէ. ի՞նչ, իր հօքիւսփօքի՞ւսը (*) ի գործ պիտի դնէ։

Մէֆիսթօ.— Կարկէ՛ բերանդ, գինիի տակա՛ռ։

Սիէպէլ.— Կախարդութիւնդ բաւական չէ, կոպի՞տ ալ կ'ըլլաս։

Պրանտէր.— Սպասէ՛ քիչ մը, լաւ ծեծ մը պիտի ուտես հիմայ։

Ալդմէյէր.— (սեղանէն խից մը հանելով՝ բոց մը կելլէ եւ կը հասնի մինչեւ իրեն)։ Կ'այրի՜մ, կ'այրի՜մ. օգնութի՜ւն։

Սիէպէլ.— Կախարդութի՜ւն...։ Ցատքէ՛ վրայէն. սա՛ անզգամը լաւ մը պատժենք։

Դանակնին հանելով Մէֆիսթօֆէլէսին վրայ կը վազեն։

Մէֆիսթօ.— Ծանր շարժումներով։

Խօսք և նկա՛րք մոգային,
Ձեր դիւթութեամբք յորդաբուխ
Խառնեցէ՛ք գլխովին
Զգայարանք և գլուխ։

Զարմացմամբ իրարու երես կը նային։

Ալդմէյէր.— Ո՞ւր կը գտնուիմ։ Ի՞նչ գեղեցիկ երկիր է այս։

(*) Կախարդական բառ.

Ֆրօշ. — Այգեւէտ բլո՜ւր մը։ Աչքերս կը խաբե՞ն արդեօք զիս։

Սիեպել. — Եւ մեր ձեռաց տակ խաղո՜ղի ողկոյզներ։

Պրանտէր. — Տեսէ՛ք, դալարագեղ բարունակներուն տակ ի՜նչ բուն, ի՜նչ ողկոյզ է այն։

Սիեպելը քթէն կը բռնէ, միւսներն ալ փոխադարձաբար նոյնն ընելով՝ իրենց դանակները վեր կը բարձրացնեն:

Մեփիսթ. — (աւելի բարձր ձայնիւ)

Հիմայ մեկնի՛նք, բաւական է։
Անհետացի՛ք, ցնորքնե՛ր, չո՜ւտ,
Աղբի՛ւր գինւոյ, ճոխ այգեկո՛ւթ։
Ա՛յսպէս դժոխք վրէժ կը լուծէ։

Ֆաուստի հետ աներեւոյթ կ'ըլլայ. գործաւորք մէկ մէկու քթերը կը թողուն։

Սիեպել. — Ի՞նչ է այս։

Ալդմեյեր. — Ի՞նչ բան։

Ֆրօշ. — Ի՞նչ. բանածս քու քի՞թդ էր ուրեմն։

Պրանտէր. — Ես ալ քո՞ւկդ բռներ եմ։

Ալդմեյեր. — Անդամներուս ուժասպառ ձգող բան մ'էր այս. պիտի իյնամ նուաղիմ, աթոռ մը հասցուցէք։

Ֆրօշ. — Ո՛հ, ըսէ՛, ի՞նչ է սա եղածը։

Սիեպել. — Ո՞ւր է այն ապիրատը, մէյ մը թէ զինքը բռնեմ՝ ա՛լ չկրնար ձեռքէս ողջ ազատիլ։

Ալդմեյեր. — Տեսայ որ մառանին դռնէն դուրս կ'ելլէ.... տակառի մը վրայ հեծած....։ Ոտքերս կապարի նման ծանրացած են։ (Դէպ ի սեղան կը դառնայ։) Ա՛խ, ի՜նչ աղէկ կ'ըլլար որ գինին վազէր շարունակ:

Սիեպել. — Այս ամէն պատահածները պատրա՜նք,

*ցնո՛րք և խաբէութի՛ւն են եղեր։*

**Ֆրոշ**.— *Սակայն աներկբայ էի թէ ստուգիւ գինի կը խմեմ։*

**Բրանտեր**.— *Եւ այն աղուոր ողկոյզներն ի՞նչ եղան։*

**Ալդմէյեր**.— *Ա՛լ ո՞վ կրնայ ըսել թէ հրաշքներու պէտք չէ՛ հաւատ ընծայել։*

## ՎՀՈՒԿԻ ԽՈՀԱՆՈՑ

Խորունկ հնոցի մը մէջ՝ խոշոր պտուկ մը կը տեսնուի կրակին վրայ. Ելած մուխին մէջէն զարմանահրաշ պատկերներ կ'երեւին։ Պոչաւոր մատակ կապիկ մը, պտուկին քովը նստած, վրայէն փրփուրը կ'առնէ, կը ժողվէ եւ հոգ կը տանի որ եփուածը դուրս չթափուի։ Արուն իր ձագերով անոր քով՝ կը տաքնայ կրակին։ Որմերը եւ ձեղունը ծածկուած են վհուկին յատուկ տեսակ տեսակ տարօրինակ գործիքներով։

## ՖԱՈՒՍԹ, ՄԷՖԻՍԹՕՖԷԼԷՍ

### ՖԱՈՒՍԹ

*Կախարդական այս տարօրինակ կազմածս տեսնելով՝ նողկանք կ'զգամ. լսէ՛ ինձ, խնդրեմ, ի՞նչ զուարճութիւն կրնայ գտնել մարդ այդպիսի այլանդակութիւններու մէջ։ Պառաւուկէ մը ի՞նչ խորհուրդ, ի՞նչ խրատ կրնայ երբէք սպասել։ Եւ միթէ այս խոհանոցիս մէջ կը գտնուի՞ այնպիսի ըմպելի մը՝ որ մարմնոյս վրա-*

յէն երեսուն երկար տարիներ վերցունէ....։ Վա՜յ գլխուս, եթէ ինձ նպաստելու լաւագոյն բան մը չգիտես։ Արդէն կորուսի ամէն յոյս։ Կարելի է բնութիւնը և գերագոյն ոգի մ'իմ վիճակս բարելաւող բալասան մը չունենան։

**Մեֆիսթ.**— Բարեկամ, իմաստութեամբ կը խօսիս տակաւին։ Իրաւ է որ երիտասարդանալու համար ամենաբնական միջոց մը կայ, այլ ուրիշ գրքի մը մէջ կը գտնուի այն, որու և զարմանալի մէկ գլուխը կը կազմէ։

**Ֆաուսթ.**— Կ'ուզեմ, կը փափաքիմ գիտնալ զայն։

**Մեֆիսթ.**— Լաւ, այնպիսի միջոց մ'է այն՝ որ ո՛չ դրամէ պէտք ունի, ո՛չ դեղէ և ո՛չ կախարդութենէ։ Գնա՛ նետուէ՛ դաշտերու մէջ, բրել և փորել սկսէ՛, և միտքդ անձուկ շրջանակի մը մէջ ամփոփած՝ պարզ սնունդով մը գոհ եղի՛ր. անասուններու հետ անասունի նման ապրէ՛, և պղտիկութիւն մի՛ համարիր հայրենական հողդ աղբով պարարտցնել։ Հաւտա՛ ինձ, լաւագոյն միջոցն է այս՝ ութսուն տարի ետ դառնալու։

**Ֆաուսթ.**— Այդ բանին սովրած չեմ, չեմ կրնար ձեռքս բահ առնել։ Անձուկ կեանք մ'իմ բանիս չգար։

**Մեֆիսթ.**—Ապա ուրեմն գործին մէջ վհկուհիի մատ մտնել պէտք է։

**Ֆաուսթ.**— Այլ ի՞նչու այդ քաւթարին պէտք ունենանք, միթէ դու ինքդ կարող չե՞ս ըմպելիքը պատրաստել։

**Մեֆիսթ.**— Ի՜նչ գեղեցիկ ժամանց ինծի համար. ես կարող եմ բիւրաւոր գործեր յառաջ տանիլ աւելի սուղ միջոցի մէջ։ Ո՛չ միայն արուեստ և հմտութիւն կը պա-

հանջէ այդ աշխատութիւնը՝ այլ նաև անհնարին երկայնմտութիւն։ ժամանակը միայն կրնայ ոյժ և ազդեցութիւն տալ խմորումի, և գիտնայի՞ր թէ պէտք եղած այլ և այլ նիւթերը ի՞նչ արասաուոց բաներ են։ Աս բանն իրեն սորվեցնողը սատանան եղած է, այլ սատանան ինքը կարող չէ՛ պատրաստել զայն։ (Կենդանիները կը նուագէ։) Տե՛ս սա՛ սիրուն կենդանիները։ Ահա՛ սպասուհին. ահա՛ սպասաւորը։

Կենդանիներուն.

Բարեկամներ, ձեր տիրուհին
Չեմ տեսներ հոս։

Կենդանիները

Կրակարանին
Ծակէն ելաւ՝ անտարակոյս
Իր ընթրիքը ընելու դուրս։

Մեֆիսթօֆելէս

Արդեօք ո՞րչափ ատեն պէտք է՝
Որ դառնայ նա իր արշաւէն։

Կենդանիները

Որչափ ատեն որ պէտք է մեզ...
Տաքցունել մեր ոտքեր այսպէս։

Մեֆիսթ.— (Ֆաուսթի) Այս չքնաղ կենդանիները ի՞նչպէս կը գտնես։

Ֆաուսթ.— Ամենանողկալի. անոնց նմանը չեմ տեսած բնաւ։

Մեֆիսթ.— Ո՛չ, ինձ ամենէն աւելի յարմար երևցողը այս տեսակ խօսակցութիւն մէ։

Կենդանիներուն․

*Ըսէ՛ք նայիմ, անպիտաններ,*
*Ի՞նչ է հոդ ձեր հանդերձանքներ:*

Կենդանիները

*Կենդանեաց մենք պատրաստենք թոն:*

Մէֆիսթ․

*Ըսէ՛ք նայիմ, հոդ չատեր կա՞ն:*

Կատուն կը մօտենայ եւ կը շողոմէ զՄէֆիստօֆէլէս

*Խաղա՛նք միասին,*
*Դրամ տուր խեղճիս:*
*Տեսքը դրամին*
*Ուրախ կ'ընէ զիս:*
*Ո՛հ, խաղանք, խաղա՛նք,*
*Թշուառ մ'եմ անանկ,*
*Այլ սակայն թէոր*
*Փող ունենայի՝*
*Պաշտօն փառաւոր*
*Ես կ'ստանայի:*

Մէֆիսթ․ — *Ո՞րչափ երջանիկ պիտի՞ ըլլար կապիկը՝ եթէ այս բանին մէջ պզտի մաս մ'ունենար անգամ:*

Այս միջոցին՝ միւս կենդանիները մեծ գունդի մը հետ կը խաղան եւ կը գլորեն զայն:

Կատուն

*Աշխարհ ա՛յսպէս է.*
*Մէկ գունդ մը կլոր*
*Թեթեւ, գոգաւոր՝*
*Որ կ'ելնէ, կ'իջնէ:*
*Իբրեւ ապակի՝*
*Դիւրաւ կը բեկի.*

Խոյս տո՛ւր, պատանի՛,
Այդ մանանիկ պզտի՝
Որու կայծ քեզի
Հաճոյ կը թուի,
Մահ կուտայ միայն.
Մի փափաքիր զայն։

Մեֆիսթ.— Ըսէ՛ ի՞նչ ոյժ այս մաղ(*) ունի։

Կատուն ձեռքը կ'առնու զայն։

Հոգին կ'ըսէ տեսանելի
Թէ անպիտան անհատ մ'ես դուն՝
Կը հասկնանք անով իսկոյն։

Մատակին քովը կերթայ, եւ մաղին մէջ նայիլ կու-տայ անոր։

Սիրելի՛ս, սա՛ ծակէն նայէ,
Անունը տալ կրնաս գուցէ
Սա անպիտան մարդուն անշահ՝
Որ մեր դիմացը կը կենայ։

Մեֆիսթ.— Այս մեծ կաթսան ի՞նչ է հապա։

Արու եւ էգ կատուները

Ո՛հ, ի՞նչ անմիտ. չճանչնար նա
Թան եփելու յատուկ կաթսան։
Տեսնուա՞ծ է ասանիկ անբան։

Մեֆիսթ.— Պատասխանեցէ՛ք, կենդանի՛ք չար։

Կատուն

Եկու՛ր նստի՛ր գահին վրայ աս,
Ձեռքդ բռնէ սա հողմահար՝
Որ անսանձ իշխան ըլլաս։

(*) Քաղաքական խարբալը՝ որ գողերը երեւան կը հանէ։

Մեֆիստոֆելէսը կ'ստիպէ նստելու:

**Ֆաուստ**.— (որ այս միջոցիս հայելիին առջեւ կեցած է միշտ, մերթ մօտենալով, մերթ հեռանալով): *Ի՞նչ կը տեսնեմ. այս ի՞նչ հրեշտակային պատկեր է՝ որ այս մոգական հայելիին մէջ հիացած աչքերուս կ'երեւի։ Ո՛վ սէր, պարգեւէ՛ ինձ քու ամենէ արագաթռիչ թեւդ, որպէսզի այս սքանչելի էակին բնակած վերնագաւառը սլանամ։ Ա՛հ, երբ այս կեցած տեղէս ելլելով՝ քիչ մ'աւելի յառաջանալ համարձակիմ՝ նա այլ եւս որպէս թէ ամպի մը մէջէ կ'երեւի աչքերուս։— կանացի ի՞նչ հիասքանչ ձեւ եւ կերպարանք. միթէ հնարի՞ն է որ կին մ'այս աստիճան չքնաղ ըլլայ եւ գեղանի։ Ի՞նչ, աչացս առջեւ տարածուած այս հրաշագեղ մարմինը երկինքի մէջ գտնուած բոլոր հրաշալեաց մէկ համառօտ պատկե՞րը կը ներկայացնէ արդեօք։ Ասոր նման բան մը կը գտնուի՞ երբէք երկրի վրայ։*

**Մեֆիստ**.— *Երբոր Աստուած մը եօթ օր չարունակ կ'աշխատի, եւ ըրած գործին ինքն ալ կը հաւնի, անտարակոյս աղուորիկ բան մը արտադրուած ըլլալ պէտք է։ Ցյագ դիտէ՛ այդ պատկերը, ասոր նման սքանչելի գանձ մը դիմացդ պիտի հանեմ։ Ո՛հ, երանի՛ անոր՝ որ բաղդ պիտի ունենայ ցուցնելիք հրաշագեղ արարածս իբր հարս իր տունը տանելու։* Ֆաուստ հայելիին կը դիտէ միշտ։ Մեֆիստ. բազկաթոռի մը վըրայ երկննալով եւ հովահարին հետ խաղալով իր խօսքը կը շարունակէ։ *Անհաւատրիկ թագաւորի նման բազմած եմ գահիս վրայ, մականը ձեռքս է, եւ միայն արքայական պսակը կը պակսի գլխուս։*

կենդանիները՝ որ մինչեւ այն ժամանակ հազար այլանդակ շարժումներ ի գործ դրած էին, աղաղակնե-րով պսակ մը կը բերեն Մեֆիսթօֆելեսի:

*Ընդունեցէ՛ք, տէր, զայս պսակ.*
*Կորուստնքներն ահա՛ անոր.*
*Գուցէ արեամբ կարող ըլլա՛ք,*
*Զայն շտկրտել և ընել նոր։*

Անծանօթ կերպով պսակին վրայ վազելով՝ զայն եր-կու կտոր կ'ընեն՛ եւ այդ կտորներով կը պարեն բոլորաձեւ:

*Լա՛ւ, սկսի՛նք նորէն մենք...։*
*Կը խօսակցինք, կը տեսնենք.*
*Մտիկ կ'ընենք, կը քերթենք։*

Ֆաուսթ, (հայելիին առջեւ) .— *Վա՜յ ինծի, ինքզինքս կորուսած եմ բոլորովին։*

Մեֆիսթ, (կենդանիները ցուցնելով).— *Իմ գլուխս իսկ դառնալ կ'սկսի։*

Կենդանիները

*Եթէ այս բան յաջողի՝*
*Փա՜ռք և պատի՜ւ մեր խելքի։*

Ֆաուսթ, (աւելի բարձր ձայնով) .— *Կուրծքս կրակի պէս կ'սկսի վառուիլ. ո՜հ, հեռանանք շուտով այս տեղէս։*

Մեֆիսթ. Նոյն դիրքին մէջ .— *Սակայն չկրնար ու-րացուիլ թէ ճշմարիտ քերթողներ են ասոնք։*

Կապիկը պահ մը փրփուրը ժողվելու հոգ չտանելով՝ պտուկին պարունակութիւնը կ'սկսի դուրս թափիլ, որմէ մեծ մուխ մը կ'ելլէ բուխերիկին մէջ: Կախարդուհին՝ բոցին մէջէն՝ զարհուրելի ձայնով մը դուրս կ'ելլէ։

Կախարդուհի

*Վա՜յ, վա՜յ, վա՜յ, վա՜յ, վա՜յ,*
*Կապիկ անիծեալ,*
*Թանը կը թափես,*
*Չես կ'այրես այսպէս,*
*Սատկի՛ք ամէնքդ ալ։*

**Մեֆիստոֆելէսը եւ Ֆաուստը տեսնելով։**

*Ի՞նչ կը տեսնեն իմ աչքեր.*
*Ի՞նչպէս մտնէք, յանդուգներ,*
*Այս գործանոց սրբազան։*
*Առ ի՛ս, մատեա՛ն դիւթական,*
*Հո՛ւր, արշաւէ՛ անոնց վրայ.*
*Ոսկորնին իսկ չմնայ։*

**Պարզուտը պտուկին մէջ խօթելով՝ Ֆաուստի, Մեֆիստոֆելէսի եւ կենդանիներուն ետեւէն բոցեր կ'արձակէ։ Կենդանիները կ'ոռնան։**

**Մեֆիս. ձեռքի հողմահարը վերցնելով աջ եւ ահեակ բաժակներուն եւ անօթներուն կը զարնէ։**

*Կոտրուեցէ՛ք երկուքի*
*Ո՛ սպաներ վհուկի.*
*Կոտրուեցէ՛ք հին շիշեր,*
*Հին ամաններ ու սաներ։*
*Ո՛ լիրբ պառաւ գու հոտած,*
*Կեցի՛ր, մէկ հաստ գաւազան*
*Ուսիդ տալով խիստ հարուած՝*
*Քեզ կը բերէ ուղղութեան։*

**Մինչդեռ վհկուհին ետ ետ կը քաշուի՝ սրտմտած եւ ահաբեկ.**

Կը ճանչնա՞ս զիս, ո՛ քաւթար, ո՛ գերեզմանէ փախած ճիւաղ, կը ճանչնա՞ս հիմայ քու տէրդ և իշխանըդ։ Ո՞վ կարող է արգիլել որ թէ՛ զքեզ և թէ՛ քու կատու ոգիներդ ջարդուբուրդ չընեմ։ Դու կարմիր բանձրոնակին պատկառանք չունի՞ս ա՛լ. դու չե՞ս ճանչնար աքաղաղի փետուրը. միթէ երեսս պահե՞մ ի քեզմէ. ի՞նչ, անո՞ւնս տալ պէտք պիտի ըլլայ։

Կախարդուհի.—Ո՜հ, տէր, ո՜հ, թագաւոր, տմարդի ընդունելութեանս ներէ՛, կ'աղաչեմ։ Չկրցայ լաւ մը ճանչնալ զքեզ. ո՞ւր է եղջիւրակիր ոտքդ. ի՞նչ ըրիր քեզ յատուկ եղող կրկին ագռաւները։

Մեֆիսթ.— Այս անգամ կը ներեմ քեզ, զի շատ ժամանակներէ հետէ իրարու հետ չենք տեսնուած։ Քաղաքակրթութիւնը՝ որ այսօր բոլոր աշխարհը բարակցուցած է, մինչև անգամ սատանային վրայ իր ներգործութիւնը ըրաւ. ո՛չ հիւսիսային ճիւաղ կը տեսնուի հիմայ, ո՛չ եղջիւր, ո՛չ ագի, և ո՛չ մագիլ։ Ոտքիս գալով՝ որու ճար մը չեմ կարող ընել, ըստ որում մարդիկներու հետ եղած ժամանակս կրնայ վնասել ինձ՝ այս պատճառաւ կեղծ բումրի (faux mollet) նորաձևութիւնը շատ երիտասարդներու նման ես ալ ընդունած եմ վաղուց։

Կախարդուհին, պարելով.

Կը խենդենամ, կը ցնորիմ,
Պարոն Սադան գա՛յ ի տուն իմ։

Մեֆիսթ.—Կի՛ն դու, այդ անունը մի՛ տար, խնդրեմ։

Կախարդուհի.— Ինչու. ի՞նչ պատճառաւ. ի՞նչ վնաս կուտայ քեզ այդ անունը։

**Մեֆիսթ.** — *Երկար տարիներէ հետէ առասպելներու մատեաններուն մէջ արձանագրուած է այն, այլ սակայն՝ ասով մեկտեղ՝ մարդիկ լաւագոյն ճամբու մէջ չեն գըտնուիր· իրաւ ազատած են դեւէն՝ այլ դեւերը իրենց էութիւնը կը շարունակեն միշտ: Շատ աւելի լաւ կ'ըլլայ տիար Սեպուհ անուանես զիս, վասնզի ես ալ ասպետ մ'եմ ուրիշներու նման, և չեմ կարծեր թէ ազնուականութեանս վրայ տարակուսիս երբէք. ահա՛ եթէ տեսնել կ'ուզես՝ իմ զինանշանի վահանս:*

**Անպատկառ շարժում մը կ'ընէ:**

**Կախարդուհին քրքրուկ մը կը ձգէ.** — *Ա՜հ ա՜հ, ճիշդ քու ձեւերդ են ասոնք. անառակ մ'ես և պիտի մնաս յաւիտեան:*

**Մեֆիս. Ֆաուստին.** — *Ահա՛ դաս մը քեզի համար: վհուկներու հետ վարուելու կերպն ա՛յս է:*

**Կախարդուհի.** — *Հիմայ ըսէ՛ք ինծի, պարոններ, թէ ի՞նչ կ'ուզէք:*

**Մեֆիս.** — *Բաժակ մը քու այն գիտցած ըմպելիքէդ, այլ ամենէ հին տեսակէն ըլլայ, ըստ որում տարիներու հետ կ'աւելնայ անոր ոյժը:*

**Կախարդուհի.** — *Յօժարակամ. սրուակ մ'ունիմ՝ զոր ես ինքս կը գործածեմ երբեմն՝ և որ գէշ հոտ ըսուած բանը չունի. ճիշդ անկէ բաժակ մը տամ ձեզ:* **(Մեղմաձայն Մեֆիսթօյի):** *Եթէ այս մարդը խմէ այդ ըմպելիքէն՝ առանց օրինաւորապէս պատրաստուած ըլլալու, գիտես թէ՛ ժամ մ'իսկ չկրնար ապրիլ:*

**Մեֆիս.** — *Բարեկամ մեկն է, և քու ըմպելիքդ վնասակար ներգործութիւն մը չկրնար ընել. պատրաստած*

*ամենազօրաւոր գինիս անգամ կրնամ տալ անոր՝ ա-ւանց փոքր երկիւղի։ Շրջանակդ գծէ՛, բանաձեւերդ զրուցէ՛ և տո՛ւր լեցուն գաւաթ մը որ խմէ։*

Կախարդուհին արտառոց շարժումներով շրջանակ մը կը գծէ, եւ անոր մէջ հազար տեսակ այլանդակ բաներ կը դնէ. նոյն միջոցին բաժակները կ'սկսին ձայներ հանել, պտուկը՝ որոտալ, որպէս թէ երաժշտութիւն մ'իգործ դրուէր: Հուսկ ուրեմն վհկուհին խոշոր գիրք մը բերելով կատուները շրջանակին մէջ կը դնէ, ուր անոնք իբր գը-րակալ կը ծառայեն՝ միեւնոյն ժամանակ ջահերը բռնե-լով։ Նշան կ'ընէ Ֆաուստի որ դէպի իրեն քայլեր առնու։

Ֆաուստ՝ Մեֆիսթոյի.—*Օ՜ֆ, ըսէ՛ ինծ թէ ի՞նչ պիտի ըլլայ ասոր վերջը։ Այս այլանդակ շարժումները, այս գռեհիկ կախարդութիւնը բաւական ծանօթ են ինծ ու զզուանք կը պատճառեն միայն։*

Մեֆիս.— *Ի՜նչ պարապ խօսքեր, կը զուարճանանք միայն, այդչա՛փ ծանրագլուխ մարդ մի՛ ըլլար, գէշ բան է։ Իբր բժիշկ՝ կախարդութիւն մ'իգործ պիտի դնէ՝ որպէսզի ըմպելին օգտակար ըլլայ քեզ։*

Ֆաուստը կը բռնադատէ որ շրջանակին մէջ մտնէ։
Կախարդուհին, ճոռոմօրէն գիրքը ձեռքը կ'առնու՝ բացախօսելու համար։

*Ընկե՛ր, լսէ՛ հաւատալով.*
*Պիտի ընես՝ մէկով տաս,*
*Նոյնպէս երկու՝ երեքով.*
*Այսպէս պիտի հարստանաս։*
*Անցի՛ր չորրորդ*

Եւ հինգերորդ, վեցերորդ,
Թէ՛ եօթն ու թէ՛ ութերորդ
Կը յաջողին ճիշդ նոյնպէս....։
Վհկուհին կ'ըսէ այսպէս։
Հաս աւարտի
Գործ վհուկի.
Թէ ինն մէկ է՝
Տասն բան մ'ալ չէ,
Գաղտնիքս ա՛ս է։

Ֆաուստ.— Կարծեմ թէ պառաւը կը ցնորի։

Մեֆիս.— Ա՛լ շատ չմնաց. իր գիրքը՝ որ այսպիսի ափեղցփեղ խօսքերով լեցուն է, կարդացած ըլլալով այս ամէն բաներս գիտեմ։ Կախարդական արուեստին խորերը թափանցելու համար շատ ժամանակ կորսնցուցած եմ, ըստ որում բացարձակ հակասութիւն՝ խորհրդալի բան մ'է այն ինչպէս յիմարներու՝ նոյնպէս և իմաստուններու համար։ Արուեստը, բարեկա՛մ, հին է միանգամայն և նոր։ Ամէն ժամանակներու ազատութիւնն եղած է ճշմարտութեան տեղ մոլութիւնը ծաւալել երեք և մէկով, մէկ և երեքով. այս նիւթիս վրայ մարդիկ կը լեզուագարեն շարունակ, և ինչպէս մէկ շատ ուրիշ բաներ՝ նոյնպէս և զայս կը սորվին. այլ այսօրինակ յիմարութիւններ հասկնալու համար ո՞վ գլուխ պիտի յոգնեցնէ։ Մարդս՝ բառեր լսած ժամանակը՝ կը կարծէ սովորապէս թէ անշուշտ և անպատճառ իմաստ մը կը պարունակեն։

Կախարդուհին, կը շարունակէ.

Ամենախոր հմտութիւն
Չէ շնորհուած ո՛չ մէկուն,

Հող, ջանք, դրամ, տքնութիւն՝
Եւ ահա շուտ յայտնուի
Խուզարկու խոկ չեղողի՝
Համաշխարհիկ գիտութիւն։

Ֆաուսթ — Ի՞նչ այլանդակ և մտքի դէմ խօսքեր։ Քիչ մը ևս՝ և ահա՛ գլուխս պիտի պայթի այս ափեղ-ցփեղութիւններով։ Կարծես հարիւր հազար խենդերու պարերգի մ'ունկնդիր կ'ըլլամ։

Մեֆիս.— Բաւակա՛ն է, բաւակա՛ն է այդչափը, ո՛ գերընտիր գուշակուհի. տո՛ւր ընկերիս քու խորհրդաւոր ըմպելիքդ, և թող բաժակը մինչև եզրը լեցուն ըլլայ։ Այդ պատուական պատրաստութիւնը չկրնար վնասել անոր. այնպիսի անձ մ'է ինք՝ որ հմտութեանց բազմադիմի աստիճաններէ անցած է և իր դերը խաղացած։

Կախարդուհին շատ մ'արարողութեամբ ըմպելիքը գաւաթին մէջ կը պարպէ։ Այն կէտին՝ ուր Ֆաուսթ բերնին կը տանի բաժակը՝ թեթեւ բոց մ'ահա կը բարձրանայ դէպ ի վեր։

Մեֆիս.— Շուտո՛վ մը. քի՛չ մը ևս. խմած դեղաջուրդ տեսնես ի՞նչպէս սիրտդ պիտի բանայ։ Ի՞նչ, դեւին հետ մտերմացած ըլլաս, և վախնա՞ս բոցէն։

Կախարդուհին շրջանակը ջնջելով՝ Ֆաուսթ դուրս կ'ելլէ։

Մեֆիս.— Հապա՛, յառաջ. պէտք չէ՛ որ հանգիստ նստիս։

Կախարդուհին.— Կը մաղթեմ որ բաժակս օգտակար ըլլայ։

Մեֆիս.՝ Կախարդուհւոյն.—*Եթէ բանէ մը պէտք ունիս՝ կախարդաժողովին մէջ իմացո՛ւր ինձ։*

Կախարդուհի.—*Ահա՛ երգ մը, երգէ՛ զայն առեն առեն, և անոր զարմանալի ներգործութիւնը պիտի տեսնես։*

Մեֆիս.՝ Ֆաուսթին.— *Շո՛ւտ, եկուր հետս, հետեւէ՛ առաջնորդութեանս. հիմայ քիչ մը քրտնիլ պէտք ես որպէս զի ըմպելիքին զօրութիւնը թէ՛ ներսը և թէ՛ դուրսը ներգործէ։ Անկէ վերջ ազնիւ անգործութեան մը հրապոյրները ճաշակել պիտի տամ քեզ, և ներքին յափշտակութիւններէդ պիտի ճանչնաս ընդ հուպ Կուպիտոնի ազդեցութիւնը, Կուպիտոնի՝ որ աշխարհի շուրջը երկնից անջրպետներուն մէջ կը թռչի։*

Ֆաուսթ.— *Թո՛ղ ինձ որ անգամ մ'ևս սուղ նայուածք մը ձգեմ սա հայելւոյն. այն կնոջ պատկերը զոր կը տեսնէի՝ հիանալի բան մ'էր։*

Մեֆիս.— *Ո՛չ, ո՛չ, դու կանանց չնչող և կենդանի տիպարը պիտի տեսնես հիմայ,* (Մեկուսի։) *Անգամ մ'որ այն ըմպելին փորդ մտաւ՝ որևիցէ կին հրաշագեղ Հելէն մը պիտի երևի աչքիդ։*



# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՓՈՂՈՑ ՄԸ

### ՖԱՈՒՍԹ, ՄԱՐԿԸՐԻԴ՝ ՈՐ Կ՚ԱՆՑՆԻ

Ֆաուսթ.— Կրնա՞մ համարձակիլ, ո՛ սիրուն ազնիւ օրիորդ, իմ թեւս ու առաջնորդութիւնս ձեզ ընծայելու յանդուգն փորձը փորձել։

Մարկրիդ.— Պարո՛ն, ո՛չ սիրուն ո՛չ ազնիւ օրիորդ մ՚եմ ես, ու կրնամ մինակս երթալ տուն։

Ֆաուսթի ձեռքէն պրծելով կը փախչի։

Ֆաուսթ.— Ո՜հ, ի՜նչ հրաշագեղ աղջիկ՝ որու նմանը տեսած չեմ կեանքիս մէջ. ո՜րքան պարկեշտ ու առաքինի կ՚երեւայ, և միեւնոյն ժամանակ ո՜րքան ախորժ երեւոյթ մ՚ունի։ Մինչև յետին շունչս չպիտի մոռնամ անոր կարմրալար շուրթերը ու պայծառ այտերը։ Ի՜նչ ալ շուտ փախաւ ձեռքիս մէջէն....։ Ո՜հ, խելք թռցնելը բան մ՚ըսել չէ։

Մեֆիս. կը յառաջանայ։

Ֆաուսթ.— Մտիկ ըրէ՛, անպատճառ այդ նորատի աղջիկը ձեռք անցունես ինծ համար։

Մեֆիս.— Ո՞ր նորատի աղջիկը։

Ֆաուսթ.— Ան որ քիչ մը յառաջ ասկէ կ՚անցնէր։

Մեֆիս.— Այն աղջկան համա՞ր կը խօսիս։ Խոստովանանքէ կ՚ելլէր իր մեղքերուն արձակումը ընդունած։ Բոլոր ժամանակ իր քով սողոսկած՝ միտ կը դնէի իր

ըստածներուն։ Պարզմիտ աղջիկ մ՚է որ ոչինչ բանի մը
համար խոստովանանքի կը վազէ։ Անոր վրայ ազդե-
ցութիւն չունիմ ես։

Ֆաուստ.— Տասն և չորս տարեկան է սակայն, ու-
քիչ մ՚ալ աւելի։

Մեֆիս.— Այնպիսի մէկու մը պէս կը խօսիս՝ որ
աչք կը տնկէ ամենասիրուն ծաղիկներու, ու կը կար-
ծէ ոչինչ արժանիքով ձեռք բերել ամէն շնորհք ու պա-
տիւ։ Գիտցի՛ր սակայն թէ ամէն անգամ չըլլար այդ։

Ֆաուստ.— Մի՛ գլուխս ցաւցներ, պարո՛ն վարժա-
պետ. երկու խօսքով միտքս հասկցնեմ քեզ։ Եթէ այն
մատղաշ անուշիկ աղջիկը թևոցս մէջ չհանգչի այս ի-
րիկուն՝ կէս գիշերին բաժնուած եմ քեզմէ։

Մեփիս.— Անանկ բան մ՚անցո՛ւր մտքէդ՝ որ հնարին
չըլլայ. պատեհ առիթ մը գտնելու համա՛ր միայն առ-
նուազն տասն և հինգ օրի պէտք ունիմ։

Ֆաուստ.— Դիմացս ճիշդ եօթ ժամ կայ, ու այս-
պիսի հէք աղջիկ մը հրապուրելու համար սատանային
աջակցութիւնը օգուտ մը չունի՛ բնաւ։

Մեֆիս.— Ճիշդ Ֆրանսացւոյ մը նման սկսար խօ-
սիլ, այլ խնդրեմ սիրտդ մի՛ վհատեցներ։ Ըսէ՛ ի՞նչ օ-
գուտ ունի բան մը վայելելու համար արտորալ այս
տարիքին։ Հաճոյքն այնքան մեծ չըլլար որչափ՝ եթէ
մէկն առաջէն իր ձեռքով ու ամէն կերպ սուտումուտ
բաներով շտկրտէ ու սեթևեթէ իր պզտի պուպրիկը
(poupée), ինչպէս այս տեսակ նկարագրութիւններ շա՛տ
կը կարդացուին հին գաղղիական առասպելներու մէջ։

Ֆաուստ.— Ես առանց այդ պատրաստութեանց ալ
տենչ ու ախորժ ունիմ արդէն։

Մէֆիս.— Այս մասին չեմ սաստեր կամ հեգներ զքեզ, այլ կը յայտնեմ բացարձակապէս թէ այդ չքնաղ պարմանուհւոյն գործն այդքան հապճեպ չկրնար լմննալ։ Թանին մէջ որևէ բուռն միջոց պէտք չէ գործածել, այլ ընդհակառակն խորամանկութիւնը ձեռք առնելու է։

Ֆաուստ.— Գնա՛ քան մը բե՛ր ինձ այդ հրեշտակէն. տա՛ր զիս իր գտնուած տեղը. բե՛ր ժապաւէն մ'իմ սիրուհիէս, կամ փոքր պերող (fichu) մ'որ անոր կուրծքն սքողած ըլլայ։

Մէֆիս.— Այսօր իսկ պիտի առաջնորդեմ զքեզ իր սենեակը. տակէ պիտի հասկնաս որ վիճակիդ կը կարեկցիմ անկեղծօրէն, ու կ'ուզեմ վիշտդ մեղմել։

Ֆաուստ.— Ի՞նչ, պիտի կրնա՞մ տեսնել ու սեղմել զինքը թևերուս մէջ։

Մէֆիս.— Ո՛չ, դրացուհւոյ մը տուն պիտի գտնուի և դու ապառնի երանութեան սպասելով՝ պիտի կրնաս ըստ կամս արբշռիլ անոր շնչած օդով։

Ֆաուստ.— Կը մեկնի՞նք հիմայ։

Մէֆիս.— Շատ կանուխ է տակաւին։

Ֆաուստ.— Է՛հ, նուէր մը ճարէ՛ ինձ որ ընծայեմ օրիորդին։

Մէֆիս.— Շուտո՞վ մը նուէր. լա՛ւ ճամբայ. յաջողելու խիստ ապահով միջոց մ'է այդ. մի շատ տեղեր թաղուած հին գանձեր գիտեմ, երթամ անգամ մ'աչքէ անցնեմ զանոնք։

Դուրս կ'ելլէ։

## ԻՐԻԿՈՒՆ.— ԿՈԿԻԿ ԽՑԻԿ ՄԸ։

*Մարկըրիդ, (մազերը հիւսելով ու կապելով)։* Շատ կը փափաքէի գիտնալ թէ ո՞վ էր այս առաւօտուան ջոջ պարոնը՝ որուն նայուածքն ա՜յնքան ազնիւ էր. պէտք է որ մեծ ընտանիքէ մէկն եղած ըլլայ նա. երեսէն ալ յայտնի էր....։ Եթէ ոչ՝ չպիտի ցուցնէր այնքան համարձակութիւն։

*Դուրս կ'ելլէ։*

*Մեֆիսթ.—* Մտի՛ր կամացուկ մը. ծօ՛ն, մտի՛ր։

*Ֆաուսթ, պահ մը լռութենէ ետք.—* Կ'աղաչեմ, թո՛ղ զիս առանձին։

*Մեֆիս, սենեկին մէջ դեգերելով.—* Ամէն աղջիկ այսչափ կարգաւոր ու կոկիկ չըլլար։

*Ֆաուսթ, չորս կողմը դիտելով.—* Ողջո՜յն քեզ, քաղցըր վերջալոյս՝ որ կը լուսաւորես այս սրբավայրը։ Գըրաւէ՛ սիրտս, քաղցր վի՛շտ սիրոյ՝ որ ակարութեանդ մէջ յուսոյ ցօղովը կ'ապրիս. Ի՜նչպէս ամէն ինչ կը շընչէ հոս կարգ կանոն, լռութիւն, գոհունակութիւն. ո՜րքան լիութիւն այս չքաւորութեան մէջ։ *(Անկողնոյն մօտ, կաշեայ թիկնաթոռի մը վրայ կը նետուի։)* Ո՛հ, ընդունէ՛ զիս, ո՛ թիկնաթոռ, որ թեւատարած ընդունած ես արդէն խնդագին կամ թախծալի սերունդներ։ Ա՜հ, քանի՜ քանի՜ անգամներ մանկանց երամ մը կախուած է այս նահապետական գահիս թեւերէն։ Գուցէ իմ սիրուհիս՝ նորահաս ընտանիքէ մը շրջապատեալ՝ իր մեծ հօր թոռմած ձեռքն համբուրած ըլլայ ի յիշատակ Յիսուսի։ Կ'զգամ, նորատի օրիորդ, քու կարգապահ ոգիդ՝ որ կը փախայ իմ շուրջս, այն ոգին, կ'ըսեմ,

որ գործակցին մօր մը նման կը կանոնէ քու օրերդ, որ կը հրահանգէ զքեզ օթոցդ վայելչօրէն փռել սեղանիդ վրայ՝ ոտիցդ տակ ճզմուող փոշիի ամենափոքր հատիկներն անգամ նշմարելով։ Ո՜հ, չքնաղագեղ աջ սիրեցեալ։ Թեղմով խրճիթը պալատ՝ արքայութիւն կը դառնայ։ Իսկ հո՛ս....։ (Անկողնի վարագոյրը վեր կը վերցնէ): Ի՜նչ տեսակ հեշտութիւններ սիրտս ու միտքս կը գրաւեն։ Երկա՜ր, երկա՜ր ժամեր կրնայի անցունել հոս։ Հոս, ո՛ բնութիւն, երազել կուտայիր այն մարմնացեա՜լ հրեշտակը, հո՛ս կը հանգչէր այն աղջիկը՝ նորատկիզք կեանքով մ'իր արիւնը տրոփուն. հո՛ս այն քաղցր պատկերը Աստուծոյ՝ կը ձեւանար, կը կազմուէր սուրբ և մաքուր սափսուած մը մէջ։

Իսկ դո՛ւն, ո՞վ բերաւ զքեզ հոդ. այդ ի՞նչ տեսակ զգացումներով կը յուզուիս։ Ի՞նչ կ'ուզես այս բնակութեան մէջ։ Ի՞նչու սիրտդ կը ճնշուի....։ Թշուա՛ռ Ֆաուստ, ա՛լ չեմ ճանչնար զքեզ։

Դիւթական շնո՞րհ մը արդեօք կը շրջապատէ զիս այս տեղ։ Ծարաւ կ'զգամ հաճոյքի, և ինքզինքս կը կորսընցնեմ սիրոյ երազներու մէջ։ Ի՜նչ, օդի մէկ մի փըչումին խաղալի՞կ մ'ենք արդեօք։

Եթէ օրիորդն ելլէր գա՜ր այս պահուս....։ Գործած յանցանքիդ համար ի՜նչպէս սիրտդ պիտի տրոփէր. ի՜նչպէս պիտի պզտիկնար մեծ մարդը՝ ու ամօթահար նետուէր անոր ոտից տակ։

Մեֆիս.— Շո՜ւտ. կը տեսնեմ որ կուգայ։

Ֆաուստ.— Երթա՛նք, երթա՛նք. ա՛լ ոտք չեմ կոխեր հոս։

Մեֆիս.— Ահա ծանրկեկ արկղիկ մը՝ զոր տեղէ մը

վերուցի. զետեղէ՛ զայն աղջկան դարանին մէջ, ու տեսնես թէ խելքը գլխէն պիտի երթայ. քեզ պզտի բան մը կուտամ՝ որ անով պզտի բան մը շահիս. ստոյգ է թէ տղայ մը տղայ է, ու խաղ մը խաղ։

Ֆաուստ.— Չգիտեմ թէ պէ՞տք եմ....։

Մեֆիս.— Կը հարցնե՞ս. ի՞նչ, արդեօք գանձը քե՞զ պահել կը մտածես։ Եթէ այսպէս է՝ խորհուրդ կուտամ ագահութեանդ խնայել ժամանակիդ՝ որ սուղ է, ու այլ ևս չտալ ինձ նեղութիւն։ Չեմ յուսար որ աւելի մտացի ըլլաս երբէք. այս բանիս համար որչափ գլուխս քերեմ՝ որչափ ձեռքերս շփեմ՝ ընդունայն է....։ (Տուփը դարանին մէջ կը դնէ ու կը բանիփէ։) Հայդէ՛, եկուր շո՛ւտ. կ'ուզես որ այն սիրունիկ աղջիկը իղձերուդ ու տենչանացդ պատասխանէ, ու այնպէս մը տնկըուեր մնացեր ես հոդ՝ որպէս թէ ունկնդրութեան սրահ մը մտած ըլլայիր, և կամ բնագիտութիւն ու բնազանցութիւն՝ իբր կենդանի էակներ՝ կանգնած ըլլային դիմացդ։ Եկո՛ւր նայիմ։ Միասեղ դուրս կ'ելլեն։

Մարկըրիդ, կանթեղով մը: Հոս օդը ո՛րչափ թանձր է ու հեղձուկ։ (Պատուհանը կը բանայ։) Եւ սակայն դուրսն այնքան տաք չըներ։ Չգիտեմ թէ ի՛նչ եղեր եմ։—Կը փափաքէի որ մայրս տուն չգար։ Սարսուռ մը կ'ընթանայ բոլոր մարմնոյս վրայ....։ Ո՜հ, կը դողամ խելացնոր մէկու մը պէս։

Հանուելու ժամանակ կ'սկսի երգել:

Ատենով Թուլէի(*) մի արքայ
Սիրոյն մէջ անյողդողդ՝ յիշատակ

---

(*) Անուն զոր հիները կուտային Ատլանտեանի հիւսիսային կղզիներուն մէկուն, (Իսլանտա կամ Օրքատեաններուն մին):

Մանամերձ կնոջմէն կ'ստանայ՝
Թանդակեալ ոսկիէ ըմպանակ։

Իր ձեռքէ չէր թողուր զայն երբէք.
Շէն ու շող կոչունքի իսկ ատեն
Տեսնելով զայն՝ իսկոյն վշտաբեկ
Արտասուք կը հոսէր աչքերէն։

Այս իշխան իր կենաց վախճանին՝
Թողուց փառք, քաղաքներ, ամէն բան,
Այլ սակայն բաժակն այն թանկագին
Իր ձեռքէ չհանեց մի վայրկեան։

Ծովամերձ դղեկին վաղեմի
Հնամեայ փառաւոր սրահին մէջ
Նա մի օր հրաւիրեց սեղանի
Ասպետներ և իշխանք մեծամեծ։

Յանկարծ հին գինարբուն դէպի հին
Կ'ուղղուի պատշգամբ ոսկիէ.
Հոն դանդաղ խմելով իր գինին՝
Ըմպանակն ալեաց մէջ կը նետէ։

Կը դառնայ սկահակ, ջուր կ'եռայ,
Կոհակներ զայն շուտով կ'անհետեն,
Ծերունին գունատած կը դողայ.
Հրաժարած է այլ ևս գինիէն։

Դաւանը կը բանայ զգեստները դնելու համար եւ գո-հարներու տուփը կը տեսնէ։

Այս գեղեցիկ արկղիկն ո՞ւսկից եկած է հոս. և սա-կայն խիստ ապահով կերպիւ կղպած էի դարանս։ Զար-մանալի է այս, և մէջը ի՞նչ կրնայ գտնուիլ արդեօք։ Թերևս իբրև գրաւ բերուած ըլլայ, ու այս գրաւին

վրայ մայրս ալ սատակ փոխ առած ըլլայ։ Ժապաւէնի կտորէ մը պզտի բանլիք մը կայ կախուած. ըսել է թէ կընամ բանալ զայն՝ առանց անխորհուրդ բան մը րրած ըլլալու։ Ի՞նչ է այս, Տէ՛ր Աստուած. կեանքիս մէջ սասանկ բան չեմ տեսած։ Ծքեղ պաճուճանք մը... որով հարուստ տիկին մը կընայ զարդարուիլ հանդիսաւոր օրեր։ Ի՜նչպէս պիտի վայլէր ինծի այս շղթան։ Այսքան ճոխութիւն ո՞րու կընայ եղած ըլլալ։ (Պճնուելով հայլիին դիմացը կը վազէ։) Ա՜խ, ի՞նչ կ'ըլլար եթէ այս գինդերը իմս ըլլային՝ որք մարդու բոլորովին ուրիշ երեւոյթ մը կուտան։ Ի՞նչի կը ծառայէ գեղեցկութիւնը, դեռահաս աղջիկներ։ Իրաւ, լաւ բան է այն, այլ միշտ բարձի թողի ու գրեթէ անտես կ'ըլլայ. եթէ գովեն քեզ՝ առ գթութեան է միայն, ամենքը ոսկիի ետեւէ կը վազեն. ոսկիէն կախեալ է ամէն ինչ։ Ա՜խ, ո՜րքան խեղճ ենք ու եղկելի։

---

## ՃԵՄԱՎԱՅՐ ՄԸ

*ՄԻՖԻՍ. ՖԱՈՒՍԹ՝ որ կը պտըտի մտախոհ։*

*Մեֆիս, մտածելով.*— Սէրն ամենուրեք արհամարհուի. անէ՛ծք ու շա՜նթ.... կ'ուզէի աւելի անշահ յիշոց մը գտնել՝ անով հայհոյելու համար։

*Ֆաուստ.*— Ի՜նչ կայ, ի՞նչ ունիս. այդ ի՞նչ կերպարանք է։

*Մեֆիս.*— Այս վայրկեանիս ինքզինքս սատանի պիտի տայի՝ եթէ ես ինքս եղած չըլլայի սատանը։

Ֆաուստ.— Խելքիդ գլխա՞ն եկած է, կամ հաճոյք կ'զգաս դիւահարի նման պոռչտալով։

Մեֆիս.— Մտածէ որ Մարկըրիդի նուիրուած գոհարները տէրտէրի մը գրպանը մտան։— Աղջկան մայրը՝ ի տես անոնց՝ կ'սկսի գաղտնի անհանգստութիւն մ'զգալ։ Քիթը սուր ըլլալով՝ աղօթագրքերուն մէջ կը հոտուըտայ, կահկարասիները իրարու ետեւէ կը հոտուըտայ՝ տեսնելու համար թէ պղծուա՞ծ են կամ սուրբ մնացած։ Կռահելով պայծառապէս թէ գոհարներուն Աստծու մէկ օրհնինքը չէին՝ «Զաւակս, կը պոռայ, ապօրինի ստացուած ինչքը մարդուս հոգին կը սեւցնէ, արիւնը կը խանձէ. Աստուածամօր նուիրե՛նք զանոնք՝ որ երկնից մանանայով պիտի ուրախացնէ զմեզ։» Պզտի Մարկըրիդը անշնորհ կերպով մը քիթը բերանը ծռեց մօրը այս խօսքերուն։ «Պարգեւ մը միշտ լաւ բան է, մտածեց եւ զայն բերողը ճարպկօրէն դարանին մէջ դնողը չէր կրնար վատ կամ ամբարիշտ մէկն՝ ըլլալ»։ Մայրը քահանան բերել կուտայ՝ որ բանն իմանալուն պէս՝ բոլոր ուշը արկղիկին վրայ դարձնելով՝ «Ո՛րչափ լաւ մտածեր էք, ըսաւ. իր անձին յաղթողը վարձքը կ'ընդունի միշտ։ Լաւ ստամոքս ունի եկեղեցին. որով ամբողջ երկիրներ կլլած է առանց բնաւ անմարսութեան հանդիպելու։ Գիտցէ՛ք, սիրելի զաւակներս, թէ անարժան կերպով վաստըկուած ինչքը եկեղեցին միայն կրնայ լաւ մարսել։»

Ֆաուստ.— Իրեն հասարակ դարձած սովորութիւնն է այդ. հրէայն ու արքայն ալ կ'ընէ այդ բանը։

Մեֆիս.— Ասոր վրայ ամէն ինչ, գինդ, մանեակ ու շղթայ առաւ այդ անպիտան քահանան, որպէս թէ փուճ բաներ եղած ըլլային, եւ ընկոյզի կողով մ'ընդու-

նած ըլլալու չափ շնորհակալութիւն յայտնեց՝ խոստանալով երկնից առատ պարգեւները....։ Մայր ու աղջիկ բարի օրինակ մ'առած եղան ասով։

Ֆաուսթ.— Իսկ Մարկըրիտ ի՞նչ վիճակի մէջ է հիմա։

Մեփիս.— Նստած է մտածում. ոչ ի՞նչ ուզելը գիտէ, ոչ ի՞նչ ընելը. գոհարներու տուփին վրայ կը խորհի գիշեր ցորեկ, նամանաւանդ զայն բերողին։

Ֆաուսթ.— Սիրուհւոյս վիշտը ցաւ կը պատճառէ սրտիս. գնա՛ շուտ ուրիշ տուփ մը բե՛ր. արդէն առաջինը մեծ բան մը չէր։

Մեֆիս.— Ո՜հ, այո՛, քեզի համար ամէն բան ոչինչ է։

Ֆաուսթ.— Իմ գաղափարովս գործ տե՛ս. դրացուհւոյն հետ բարեկամութիւն կապէ՛. մի՛ ըլլար անճարակ սատանայ, ու նոր պարգեւ մը բե՛ր ինձ։

Մեֆիս.— Ա՛յո, մեծաշուք տէր, բոլոր սրտովս։ (Առանձին։) Այսպիսի խենթ մը՝ սիրահար դարձած՝ իր սիրուհւոյն զուարճութեան համար պատրաստ է արեւ, լուսին եւ աստղեր օդին մէջ նետելու իբրեւ մէյմէկ հրթիռներ։

Դուրս կ'ելլէ։

---

## ԴՐԱՑՈՒՀԻՈՅՆ ՏՈՒՆԸ

ՄԱՐԹԱ, առանձին։

Երկանս վարմունքը մեղք չսեպէ Աստուած. նա զիս չմտածեց երբէք, հեռաւոր աշխարհներ դեգերելու ելաւ՝ զիս մատնելով ամենայետին չքաւորութեան։ Սակայն ես որ եւ է նեղութիւն չտալէ զատ՝ Տէրն ալ գիտէ թէ սիրած եմ զինք բոլոր սրտով։ (Կ'արտասուէ։)

թերևս մեռած ըլլայ արդէն։— Ո՞րքան մեծ է վիշտըս։ —Գոնէ իր մահուան արձանագրի պատճէ՛նն ունենայի։

*Մարկըրիդ կը մտնէ*.— Տի՛կին Մարթա։

*Մարթա*.— Ի՞նչ կ'ուզես, պզտի Մարկըրիդ։

*Մարկըրիդ*.— Ծունկերս կը դողան. պահարանիս մէջ միևնոյն տեսակէ նոր տուփ մը գտայ՝ որուն պարունակութիւնը առաջինէն աւելի ճոխ է ու մեծագին։

*Մարթա*.— Բան չըսես մօրդ. ան ալ կը տանի դարձեալ խոստովանահօրը կը յանձնէ։

*Մարկըրիդ*.— Տե՛ս մէյ մը, ի՛նչ հիանալի բաներ են։

*Մարթա, զարդարելով զՄարկըրիդ*.—Բաղդաւո՜ր աղջիկ։

*Մարկըրիդ*.— Մե՜ղք որ աղքատ եմ, ու չեմ կրնար այսպէս երևիլ փողոցը ու եկեղեցին։

*Մարթա*.— Ինծ եկո՛ւր ստէպ, և այս գեղեցիկ պըճինքը կրնաս գաղտնապէս փորձել և հայելիին դիմաց երթևեկել ուզածիդ չափ. առով կը զուարճանանք, և եթէ առիթ մը՝ հանդէս մը պատահի՝ կրնաս այս գոհարները իրարու ետևէ ցոյց տալ բազմութեան. նախ և յառաջ պզտի շղթայ մը, յետոյ օղ մը։ Մօրդ մտքէն բան պիտի չանցնի, և սուտ մը կրնանք շտկել։

*Մարկըրիդ*.— Ո՞վ կրնայ բերած ըլլալ այս երկու տուփերը. բնական բան չէ այս։

*Դուռը կը զարնեն։*

*Մարթա, վարագոյրին ետևէն դիտելով*.— Օտարական մ'է։—Ներս հրամեցէ՛ք, պարոն։

*Մեֆիս. ներս կը մտնէ*.— Այսպէս յանկարծակի ներս մտնելս մեծ համարձակութիւն մ'է անշուշտ, որուն համար ձեզմէ թողութիւն կը խնդրեմ, ազնիւ տիկիններ։

(Մարկըրիդի առջեւ խոնարհութիւն մը կ՚ընէ։) Կը փափաքէի խօսիլ տիկին Մարթա Սուէրտլէյնի հետ։

Մարթա.— Ե՛ս եմ, պարոն. ի՞նչ կ՚ուզէիք խօսիլ։

Մեֆիս. ցած ձայնով.— Ձեզ ճանչցայ, զայս առայժմ բաւական կը համարիմ, զի կը տեսնեմ թէ ազնուազգի այցելուհի մ՚ունիք այս միջոցիս։ Եթէ համարձակութեանս ներէք՝ կը խոստանամ այսօր կէսօրէ ետք նորէն գալ զձեզ տեսնելու։

Մարթա, զուարթօրէն.— Տե՛ս, աղջիկս, ի՜նչ բան է աշխարհք. պարոնը զքեզ տոհմիկ օրիորդ մը կը կարծէ։

Մարկըրիդ.— Ո՜րչափ ազնիւ էք, պարոն. այլ գիտցի՛ք թէ աղքատ հէք աղջիկ մ՚եմ ես. այս պճինքն ու զոհարներն իմս չեն։

Մեֆիս.— Միայն պճինքէն չէ. ա՜յնպիսի կերպարանք մ՚ունիք, ա՜յնպիսի ազնիւ նայուածք մը....։ Ուրախ եմ որ կ՚արտօնուիմ մնալ հոս։

Մարթա.— Պարոնը ի՞նչ պիտի ծանուցանէ մեզ։ Շատ հետաքրքիր եմ....։

Մեֆիս.— Կը փափաքէի աւելի զուարթ լուրի մը պատգամաւորն ըլլալ, սակայն կը յուսամ որ այդ բանին կարող չըլլալս յանցանք չպիտի սեպէք ինձ։ Ձեր ամուսինը մեռաւ, և իմ միջոցաւս իր յետին բարևները կը խրկէ ձեզ։

Մարթա.— Ի՞նչ կ՚ըսէք, մեռա՜ւ իմ սիրելի ամուսինս. մեռա՞ւ այն ազնիւ սիրտը։ Տէ՜ր Աստուած, մեռա՞ծ է ուրեմն հոգւոյս հատորը։ Ա՜հ, հիմայ կը նուաղիմ։

Մարկըրիդ.— Ո՜հ, մի՛ յուսահատիք այդպէս, սիրելի տիկին։

 

Մեֆիս.— Մտիկ ըրէ՛ք այդ տխուր անցքին պատմութիւնը,

Մարթա.— Այո՛, պատմեցէ՛ք թէ ի՞նչպէս վերջացաւ իմ սիրականիս կեանքը։

Մեֆիս.— Բատուայի մէջ՝ սուրբ Անտոն եկեղեցւոյ մօտ թաղուեցաւ օրհնած հողի վրայ՝ ուր կը հանգչի յաւիտեան։

Մարթա.— Եւ ուրիշ բան մը չէ՞ք բերած ինծի։

Մեֆիս.— Այո՛, ծանր ու կարեւոր աղաչանք մը. կը խնդրէ որ իր հոգւոյն համար երեք հարիւր պատարագ ընել տաք. ստակ մը՝ բան մը չկայ։

Մարթա.— Ի՛նչ, չկա՞յ յուշապակ (médaillon) մը, որեւէ յիշատակ մը իր կողմէն. ամէնէ աղքատ անգամ իր տոպրակին մէջ բան մը կը պահէ՝ եթէ մուրայ՝ եթէ սովամահ մեռնի անգամ։

Մեֆիս.— Տիկի՛ն, կը ցաւիմ այդ բանին համար, այլ ստոյգ է թէ նա իր ստակը չվատնեց. մեծ զիղջ յայտնեց իր մեղքերուն համար, նամանաւանդ ողբաց դառնօրէն իր անբաղդութիւնը։

Մարկըրիդ.— Ա՜խ, ի՞նչու այս աստիճան թշուառ ըլլային մարդիկ. չմոռնամ քանի մը հոգւոց ընել տալ իրեն համար։

Մեֆիս.— Ազնիւ զաւակ մ'ես դուն՝ և արժանի՝ ամուսնութեան։

Մարկըրիդ.— Ո՜հ, ո՛չ. ամուսնութիւնը ինծի համար չէ տակաւին։

Մեֆիս.— Եթէ ոչ ամուսին՝ տարփածո՛ւ մը գէթ. այսպիսի սիրուն օրիորդ մը թեւերուն մէջ ունենալը երկինքի ամենէ մեծ պարգեւն է յիրաւի։

Մարկըրիդ.— Այս երկրի սովորութեան մէջ չկայ տարփածու ունենալ։

Մարթա.— Խնդրեմ, չարունակեցէ՛ք ձեր պատմութիւնը։

Մեփիս.— Իր մահուան անկողնոյն քով նստած էի, փտած յարդէ անկողին. մ'որ աղբիւսէ քիչ տարբերութիւն ունէր։ Պէտք է խոստովանիմ թէ ճշմարիտ քրիստոնէի պէս մեռաւ՝ այնպէս համարելով որ արժանիքէն աւելին իսկ ունէր։ «Ո՜նչպիսի մեծ մեղաւոր մ'եմ, գոչեց, որ կ'լինա, ամէն ինչ այսպէս երեսի վրայ թողուցի. ա՜հ, այս մտածումս կը մեռցնէ զիս, և միթէ կինս պիտի ներէ՞ ինձ այս կենցաղի մէջ....»։

Մարթա, լալով.— Ո՜հ, պատուակա՜ն ամուսինս. վաղուց ներած եմ իրեն։

Մեփիս.— «Բայց՝ վկա՛յ է Տէր, ինք այս մասին քան զիս աւելի յանցաւոր է»։

Մարթա.— Սո՛ւտ է։ Ի՞նչ, գերեզմանի դուռը հասած՝ սու՜տ խօսիլ այդպէս։

Մեֆիս.— Յայտնապէս կը բաջաղէր նա իր հոգեվարքի միջոցին՝ որքան որ կրնամ հասկնալ։ «Հանգիստ առնելու ժամանակ չ'ունէի, կ'ըսէր. նախ և յառաջ պէտք էր զաւակներ տալ անոր, և յետոյ՝ օրուան հացը հոգալ....։ Երբ հաց կ'ըսեմ՝ բառին ամենաճըշգրիտ իմաստովն է, և չէր թողուր որ գէթ իմ մասս հանգիստ ուտեմ։»

Մարթա.— Մոռցա՞ւ այնչափ սէր և այնչափ հաւատարմութիւն....։ Մոռցա՞ւ տառապանքներս՝ գիշեր ու ցորեկ։

Մեփիս.— Ո՛չ, անկեղծօրէն յիշեց այդ բանն և ըսաւ.

«Մալթայէն մեկնած միջոցիս կնոջս ու զաւակներուս համար աղօթեցի սրտագին։ Երկինք ձեռնտու եղաւ ինձ, և նաւ մը գերի բռնեցինք որ տէրութեան գանձը կը տանէր։ Իբր վարձատրութիւն մեր արիութեան՝ մեզ տրուեցաւ այդ գանձը՝ որմէ օրինաւորապէս և ճիշտ չափով իմ բաժինս առի։»

Մարթա.— Եւ ու՞ր է այդ բաժինը. թերևս տեղ մը թաղած ըլլայ։

Մեփիս.— Ո՞վ գիտէ ու՞ր նետեցին զայն դէպքերու բերմունք։ Իբր օտարական Նաբոլիի մէջ պտըտած ժամանակը՝ գեղեցիկ օրիորդ մը մեծ համակրութիւն զգաց անոր վրայ, և այնչափ սէր ու հաւատարմութիւն ցուցուց՝ որ մինչև իր դժբաղդ մահը կը յիշէր զան։

Մարթա.— Անզգամ ստահա՛կ, իր զաւակներուն գո՛ղը։ Այսպէս ուրեմն ոչ աղքատութիւն, ոչ պէտք չարգիլեցին զինք այսպիսի գայթակղական կեանք մը վարելէ։

Մեփիս.— Է՛հ. կը տեսնէք ահա թէ այդ կեանքին զո՛հ գնաց։ Հիմայ եթէ ձեր տեղն ըլլայի՝ մէկ տարի կուլայի անոր վրայ, այլ միևնոյն ժամանակ նոր տարփածուի մ'այցելութիւնները չէի մերժէր։

Մարթա.— Ո՛հ, չպիտի կրնամ առաջինն ամուսնոյս նման մէկը գտնել աշխարհի վրայ։ Իրաւ խենդ մէկն էր, այլ ամենասիրուն խենդ մը. սա պակասութիւնն ունէր միայն որ ճամբորդութիւններ, օտարազգի կիներ, օտար գինի և ամէն տեսակ անիծեալ խաղեր քիչ մը շատ կը սիրէր։

Մեփիս.— Է՛հ, այդ պակասութեանց կարելի էր հանդուրժել՝ եթէ ան ալ իր կողմէն փոխադարձ ներողա-

մութիւն ցուցուց ձեզի ։ Ես իմ մասիս՝ ճշմարիտն ըսելով՝ այս պայմանով մտնելի փոխանակութիւն մը սիրով պիտի ընէի ձեզ հետ ։

Մարթա .— Ո՛հ, պարոնը կը սիրէ կատակել ։

Մեփիս .— Ելլե՛նք շուտով ասկէ, զի այս կինը սատանան իսկ իբր էրիկ պիտի ընդունի սիրով ։ (Մարկըրիդին)․ Ի՞նչ վիճակի մէջ է ձեր սիրտը, սիրուն օրիորդ ։

Մարկըրիդ .— Պարոնը ի՞նչ ըսել կ'ուզէ այդ խօսքով ։

Մեփիսթոփելէս, առանձին .— Բարի՛, պարզմի՛տ աղջիկ ։ (Բարձր)․ Մնա՛ք բարեաւ, տիկնայք ։

Մարկըրիդ .— Երթա՛ք բարեաւ, պարոն ։

Մարթա .— Ո՛հ, պարոն, խօսք մը միայն․ փափաքելի էր ինձ հաւաստի նշանակ մ'ունենալ թէ ու՞ր, ե՞րբ և ի՞նչպէս մեռած և թաղուած է իմ սիրականս, զի միշտ բարեկամ եղած եմ կարգի կանոնի․ փափաքելի էր անոր մահը տեսնել ծանուցմանց մէջ ։

Մեֆիս .— Այո՛, ազնիւ տիկին, ամէն երկրի մէջ երկու վկայով ճշմարտութիւնը կը հաստատուի ։ Ուրիշ բարեկամ մ'ունիմ զոր եթէ ուզէք վկայութեան կը տանիմ ձեզ համար ։ Պահիկէ մը հոս կը բերեմ զինք ։

Մարթա .— Ո՛հ, այո՛, բերէ՛ք, կ'աղաչեմ ։

Մեֆիս .— Այս օրիորդն ալ թող հոս գտնուի ։ Ընտիր երիտասարդ մ'է․ շատ ճամբորդութիւններ ըրած է, և օրիորդներու մասին ամէն կարելի քաղաքավարութիւն կը յայտնէ ։

Մարկըրիդ .— Այդ պարոնին առջև պիտի խպնիմ ես ։

Մեֆիս .— Թագաւորին առջև իսկ չխպնիք, օրիորդ ։

Մարթա .— Տանս ետևի կողմը՝ պարտէզին մէջ ձեզ պիտի սպասենք ուրեմն ։

# ՓՈՂՈՑ ՄԸ

## ՖԱՈՒՍԹ, ՄԷՖԻՍԹՕՖԵԼԷՍ

Ֆաուստ.— Ի՞նչ կայ. բանը կը յառաջանա՞յ. պիտի կարգադրուի՞ շուտով:

Մեֆիս.— Ո՜հ, լա՛ւ. հուր ու բոց կը տեսնամ զքեզ: Մարկըրիդ քիչ ատենէն քուկդ պիտի ըլլայ, այս իրիկուն իսկ իր դրացուհւոյն՝ տիկին Մարթայի տունը պիտի տեսնես զինք: Այդ կինը կարծես յատկապէս ընտրուած է կաւատի ու գնչուհւոյ դեր կատարելու:

Ֆաուստ.— Խիստ լա՛ւ:

Մեֆիս.— Սակայն բան մը պիտի պահանջեն մեզմէ:

Ֆաուստ.— Ծառայութեան մը փոխարէն ծառայութիւն մը խնդրել իրաւացի է:

Մեֆիս.— Պէտք է երկուքս վաւերական վկայութիւն տանք թէ այդ տիկնոջ ամուսնոյն մարմինը օրինաւորապէս օրհնած հողի մէջ կը հանգչի ի Բատուա:

Ֆաուստ.— Ի՞նչ, պէտք պիտի ըլլայ հիմա ճամբորդութի՞ւն ընել ի Բատուա:

Մեֆիս.— Սո՛ւրբ պարզութիւն: Ատիկայ ընելու պէտք չկայ, առանց բան գիտնալու վկայութիւնդ տու՛ր կը լմննայ:

Ֆաուստ.— Յատակագիծդ ի դերև ելած սեպէ՛ եթէ լաւագոյն միջոց մը չունիս:

Մեֆիս.— Ով սո՛ւրբ մարդ..... տակաւին երկար ատեն պիտի մնա՞ս այդպէս սուրբ. կենացդ մէջ առաջին անգա՞մն է որ սուտ վկայած պիտի ըլլաս: Ամուր

աներկեւան սրտով անպատկառ սահմաններ տուած չե՞ս միթէ Աստուծոյ վրայ, աշխարհի և անոր մէջ պատահած ամէն պարագաներու վրայ, մարդիկներու և անոնց գլուխն ու սիրտը վարող ամէն բաներու վրայ, և որտեղ խորն իջած ժամանակդ՝ կրնա՞ս ուրանալ թէ Մարթայի երկան Պ. Սուերտլէյնի վրայ որչափ բան որ գիտես՝ աւելին չէիր գիտեր միւս պարագաներուն վրայ։

Ֆաուսթ.— Ստախօս իմաստակ մ՚ես ու պիտի մնաս յաւիտեան.

Մեֆիս.— Այո՛, եթէ քիչ մ՚աւելի բան չգիտնայի։ Ըսէ՛ ինծ, վաղը բարի սրտով ու բարի դիտումով պիտի չերթաս չհրապուրե՞ս այն խեղճ Մարկըրիտը՝ երդում ընելով թէ ամենամաքուր սէր մը կ՚զգաս անոր համար։

Ֆաուսթ.— Բոլոր սրտովս պիտի ընեմ այդ երդումը։

Մեֆիս.— Շա՛տ պատուական։ Անկէ ետք պիտի գան սիրոյ և մշտնջենաւոր հաւատարմութեան երդումները, անվախճան և միակ սիրոյ։ Այս ալ նոյնպէս սըրտէդ պիտի բխի, այնպէս չէ՞։

Ֆաուսթ.— Այո՛, այդպէս պիտի ըլլայ։ Երբ զգացմանցս ու սրտիս խանդին համար անուններ կը փնտռեմ ու չեմ գտներ, և բոլոր հոգւոյս աշխարհին մէջ նետուելով՝ ամենէ ազդու բացատրութիւնները ձեռք կ՚առնեմ, և այն հուրը՝ որով կ՚այրիմ կը տոչորիմ, անսահման ու յաւիտենական կը կոչեմ՝ միթէ սադայէլի արժանի սու՞տ մ՚է ատիկայ։

Մեֆիս.— Սակայն ըսածս ճիշդ է։

Ֆաուսթ.— Մտիկ ըրէ՛ խնդրեմ — և խնայէ՛ թոքերուս։— Ով որ իրաւունք շահիլ կ՚ուզէ, և ունեցածը

լեզու մ'է միայն, հարկաւ կը շահի այդ իրաւունքը։ Շաղակրատութիւններէ կշտացայ ես. եթէ երբէք իրաւունք ունիս՝ պատճառն այն է որ լռելը ընտրելի կը սեպեմ։

---

# ՊԱՐՏԷԶ ՄԸ

## ՄԱՐԿԸՐԻԹ՝ ՖԱՈՒՍԹԻ թեւը. ՄԱՐԹԱ, ՄԵՖԻՍԹՕՖԵԼԷՍ՝ վեր վար պտըտելով

*Մարկըրիդ.*— Կ'զգամ թէ պարոնը կը խնայէ ինծի, կը խոնարհի՝ զիս չամչցնելու համար։ Ուղեւորք սովոր են այսպէս ամէն բան աղէկ աչքով ու աղէկ սըրտով առնուլ. համոզուած եմ որ ձեզի նման փորձառու մէկը իմ խեղճ խօսքերէս չկրնար համ առնուլ։

*Ֆաուսթ.*— Քեզմէ նայուածք մը՝ խօսք մը միայն՝ աշխարհի բոլոր իմաստութիւններէն աւելի բան կը յայտնէ ինծի։

*Մարկըրիդի ձեռքը կը պագնէ։*

*Մարթա.*— Եւ միթէ, պարոն, այսպէս ճամբորդութիւննե՞ր կ'ընէք միշտ։

*Մեֆիս.*— Պաշտօնս ու պարտաւորութիւնս կը հարկադրեն զիս այս կեանքը վարել։ Կան տեղեր՝ որոնցմէ մարդ սրտի ցաւով կը հեռանայ, սակայն և այնպէս և ոչ ալ կրնայ մնալ հոն։

*Մարթա.*— Երիտասարդութեան ժամանակ օգտակար բան է հոս հոն ազատօրէն դեգերիլ աշխարհի մէջ։ Սակայն ձմեռը կը հասնի վերջէն, և մինչև գերեզման ամուրի կեանք վարելը այնպիսի փորձ մ'է՝ որմէ ոչ ոք կրցած է յաջողապէս դուրս ելլել։

Մէֆիս .— Սոսկում կ'զգամ այդ դժբաղդութեան հետզհետէ մօտենալը տեսնելով ։

Մարթա .— Այդ պատճառաւ, ազնիւ պարոն, պէտք է որ ժամանակին խորհուրդ հարցնէք ձեր սրտին ։

Կ'անցնին ։

Մարկըրիդ .— Այո՛, աչքն ալ միտքն ալ կը մոռնայ շուտով ամէն բան. շատ մը քաղաքավար խօսքեր կ'ընէք, այլ ունիք մի շատ բարեկամներ քան զիս խելացի ։

Ֆաուսթ .— Ո՜հ, սիրելիդ իմ. մարդոց խելք անուանով պատուած բանը ոչ այլ ինչ է ստէպ՝ բայց եթէ յիմարութիւն ու սնափառութիւն ։

Մարկըրիդ .— Ի՞նչպէս ։

Ֆաուսթ .— Ո՜հ, ի՜նչպէս պարզութիւնն ու անմեղութիւնը չեն կարող ճանչնալ ինքզինքնին և գնահատել իրենց սուրբ արժանիքը ։ Թող խոնարհութիւնը, անփառութիւնը, ըսել կ'ուզեմ բարեգործ բնութեան ամենէ թանկագին պարգևները ....։

Մարկըրիդ .— Պահ մը միայն խորհեցէ՛ք իմ վրայ, ու ես յետոյ երկա՛ր ատեն պիտի ունենամ ձեր վրայ խորհելու ։—

Ֆաուսթ .— Միշտ առանձի՞ն ես ուրեմն ։

Մարկըրիդ .— Այո՛, մեր ընտանիքը փոքր է, այլ պէտք է ամէն բանի հոգ տանիլ ։ Սպասուհի չունինք. հարկ կ'ըլլայ կերակուր պատրաստել, աւլել, կարել ու գուլպայ հիւսել, վազել առաւօտ ու իրիկուն, զի մայրըս ամենափոքր բաներու մէջ խիստ յոյժ ճշդապահ է....։ Ասով չկարծէք թէ հարկադրուած ըլլայ ինքզինք չափազանց նեղելու. մենք ալ կրնանք ուրիշներուն ճամբան բռնել՝ եթէ ուզենք ։ Հայրըս բաւական՝ բան

ձգած է մեզի. պզտի տուն մը ու պարտէզ մը՝ քաղաքին մօտ: Խաղաղիկ կեանք մը կ՚անցընեմ սակայն. եղբայրս զինուոր է, իսկ պզտի քոյրս մեռաւ. իրաւ, այդ պըզտիկը շատ նեղութիւն պատճառած է ինծ, սակայն այնչափ կը սիրէի զինք՝ որ աչքիս բան չէր երեւար:

Ֆաուսթ.— Պզտի քոյրդ հրեշտակ մը ըլլալ պէտք էր՝ եթէ կը նմանէր քեզ:

Մարկըրիդ.— Ես կը մեծցրէի զինք, որով մեծ սէր ունէր վրաս: Նա հօրս մահուընէ վերջ ծնած էր: Խե՜ղճ մայրս այն աստիճան կթոտ էր և ոյժէ ինկած՝ որ մազ միայն պիտի կորսնցնէինք զինքը: Շատ ուշ և կամաց կամաց կազդուրուեցաւ, և անկարող իր տղեկը սընուցանելու՝ ես մինակս մեծցուցի զան կաթ ու ջուր խմցնելով. սեպէ թէ բուն իմ զաւակս եղած ըլլար: Թեւերուս մէջ, կուրծքիս վրայ կը ժպտէր, կը խաղար, կը մեծնար:

Ֆաուսթ.— Ի՜նչ երանութիւն կ՚զգայիր արդեօք:

Մարկըրիդ.— Սակայն ունեցած եմ անհանգստութեան ժամեր ալ: Օրօրոցը գիշերը անկողնոյս քով դըրուած էր. մանուկը քիչ մը շա՛րժելուն պէս՝ կ՚արթըննայի իսկոյն. պէտք կ՚ըլլար բան մը խմցնել, քովս պառկեցնել. եթէ չը լռէր՝ ելլել անկողնէս ու սենեկին մէջ հոս հոն վազվռտելով խաղցնել զան: Առաւօտ կանուխ ալ պէտք կ՚ըլլար լուացարան ու յետոյ շուկայ երթալ՝ տան պէտքերուն համար, և միշտ ամէն օր այսպէս: Իրաւ է որ ասանկ կեանքով մը մարդս միշտ ուրախ ժամանակ չանցըներ՝ այլ սակայն հանգստութիւն աւելի կը վայելէ, և կերածէն ալ աւելի համ կ՚առնէ:

Կ՚անցնին:

Մարթա.— Այդ ձեր ըսածը սակայն խեղճ կիներուն համար աղէկ չգար. ամուրիի մը վարքն ուղղելը միշտ դժուար բան է։

Մեֆիս.— Ձեզ նման կին մը ելլէ դիմացս՝ ու ես վարքս կը շտկեմ։

Մարթա.— Ճշմարիտը խօսեցէ՛ք. իրաւ մէկը գտած չէ՞ք տակաւին. ձեր սիրտը մէկու մը հետ կապուած չէ՞ բնաւ։

Մեֆիս.— Առածը կ՚ըսէ. Տուն մը մ՚որ քուկդ է եւ ընտիր կին մը՝ ոսկիի ու մարգարտի նման պատուական են։

Մարթա.— Ո՛չ մէկէ մը սիրոյ նշաններ չէ՞ք տեսած։

Մեֆիս.— Ստոյգ է թէ ամենուրեք մեծ քաղաքավարութեամբ ընդունուած են զիս։

Մարթա.— Սա՛ կ՚ուզեմ հարցնել թէ երբե՛ք ձեր սիրտը լրջօրէն կապուա՞ծ է մէկու հետ։

Մեֆիս.— Կանանց հետ կատակելու չգար։

Մարթա.— Ո՜հ, միտքս չէք հասկնար։

Մեֆիս.— Կը ցաւիմ. կը հասկնամ սակայն թէ.... ձեր սիրտը լի է բարութեամբ իմ մասին։

Կ՚անցնին։

Ֆաուսթ.— Այսպէս ուրեմն պարտէզը հանելո՛ւս պէս ճանչցար զիս, ո՛ պաշտելի հրեշտակ։

Մարկրիդ.— Աչքերս անմիջապէս վար առնելէս չհասկցա՞ք այդպէս ըլլալը։

Ֆաուսթ.— Եւ կը ներե՞ս համարձակութեանս և յանդուգն վարմունքիս զոր ցուցուցի երբ դուն անկէ յառաջ կ՚ելլէիր եկեղեցիէն։

Մարկրիդ.— Շփոթեր մնացեր էի. երբեք այսպիսի բան գլուխս չէր եկած. ոչ ոք մինչև հիմայ կրցած

է չարախօսութիւն մ'ընել իմ մասին ։ «Ա՜հ, քաղուածքիս մէջ արդեօք համարձակ կամ անվայել բա՞ն մը տեսաւ, կը մտածէի իւրովի. քանզի ինծի հետ կարծես ո՛րպէս վարուեցաւ՝ ինչպէս պիտի վարուէր անպարկեշտ աղջկան մը հետ ։» Կը խոստովանիմ սակայն թէ չգիտեմ ի՛նչ բան ձեզի համար կը յուզուէր, կը խլրտէր սրտիս մէջ. ասով մէկտեղ ես ինձ դէմ բարկացայ ձեզ հետ աւելի խստօրէն չվարուելուս համար ։

Ֆաուսթ.— Ո՜հ, անո՜ւշիկ հրեշտակս ։

Մարկրիդ.— Թողէ՛ք զիս, բան մը պիտի ընեմ ։

Մարգարտածաղիկ (ապրիմ-մեռնիմ) մը փրցնելով՝ ետեւ ետեւ կը փետտէ անոր տերեւները ։)

Ֆաուսթ.— Ի՞նչ, ծաղկեփո՞ւնջ մը շինել կ'ուզես ։

Մարկրիդ.— Ո՛չ, ըրածս խաղ մ'է միայն ։

Ֆաուսթ.— Ի՞նչպէս ։

Մարկրիդ.— Գիտեմ, դուք հիմայ պիտի ծաղրէք զիս ։

Տերեւները փետտելով կը մրմռայ յուշիկ ։

Ֆաուսթ.— Ի՞նչ այդպէս կը մրմռաս ։

Մարկրիդ, կես-ձայնով.— Կը սիրէ ։— Չսիրեր ։

Ֆաուսթ.— Երկնքի անուշիկ ու անմե՛ղ հրեշտակ ։

Մարկրիդ, կը շարունակէ.— Կը սիրէ ։— Չսիրեր ։

(Քաղցր հրճուով մը վերջին տերեւը փետտելով ։) Կը սիրէ՜ ։

Ֆաուսթ.— Այո՛ այս ծաղիկին գուշակութիւնը թող քեզի համար երկնից պատգա՛մ ըլլայ, ո՛ սիրուն հրեշտակ ։ Կը սիրէ՜. կը հասկնա՞ս թէ ի՛նչ կը նշանակէ այս խօսքը. կը սիրէ՜ ։

Անոր երկու ձեռքերը կ'առնու իր ձեռաց մէջ ։

**Մարկրիդ.**— *Սարսուռ մը կ'զգամ մարմնոյս վրայ։*

**Ֆաուսթ.**— *Ո՜հ մի՛ դողդղար այդպէս. Թող այս նայուածքը, ձեռաց այս սեղմումը հասկցնէ քեզ ինչ որ չկրնար բացատրուիլ. յանձնուիլ մէկմէկու և արբշռիլ հեշտութեամբ մ'որ վերջ չունի ու յաւիտենական է։ Յաւիտենակա՜ն... ի՜նչ յուսահատութի՜ւն եթէ վերջ ունենար...։ Ո՛չ, չկայ վերջ, չկայ վախճան մեր երանութեան համար։*

Մարկրիդ Ֆաուսթի ձեռքը կը սեղմէ եւ յանկարծ զան թողլով կը փախչի։ Ֆաուսթ պահ մը մտածմանցը մէջ խորասոյզ՝ ետեւէն կ'երթայ։

**Մարթա**, մօտենալով.— *Գիշերը կը հասնի։*

**Մեֆիս.**— *Այո՛, և հարկ է որ մեկնինք։*

**Մարթա.**— *Պիտի խնդրէի ձեզմէ մնալ տակաւին, բայց կը վախնամ, զի այս կողմերու մարդիկ խիստ չարլեզու են. կարծես թէ ամէն մէկը ուրիշ բան գործ չունենար հոս՝ բայց եթէ իր դրացիին եկող գացողները դիտել, լրտեսել. ինչ կերպով ալ որ վարուիս՝ բամբասանքի առարկայ կ'ըլլաս անպատճառ։ Իսկ մեր երիտասարդները ի՞նչ եղան։*

**Մեֆիս.**— *Ծառուղիէն սրացան գացին. յեղյեղո՜ւկ թիթեռնիկներ։*

**Մարթա.**— *Բարեկամդ կ'երևայ թէ կ'ախորժի դրացուհիէս։*

**Մեֆիս.**— *Դրացուհիդ ալ նոյնպէս անորմէ։ Այսպէս կ'երթայ աշխարհ։*

---

Պարտէզի պզտիկ խրճիթ մը։— Մարկրիդ կը ցատքէ դրան ետեւը եւ կը կծկուի, եւ մատերուն ծայրը շրթանցը վրայ՝ դուրսը կը դիտէ ճեղքուածքէն։

Մարկըրիդ.— *Կուգայ ահա։*

Ֆաուստ կը մտնէ.— *Ո՜հ, չարաճճի՛ որ կ'ուզես մեղմեղել. ահա կը բռնեմ զքեզ։*

Կը համբուրէ զան։

*Մ*արկըրիդ, երիտասարդը բռնելով ու փոխադարձ համբոյր մը տալով.— *Ո՜հ, մարդերուն ազնուագո՛յնը, կը սիրեմ զքեզ բոլոր սրտովս։*

Մեֆիստոֆելէս դուռը կը զարնէ։

Ֆաուստ, ոտքով գետինը զարնելով.— *Ո՞վ է ան։*

Մեֆիս.— *Բարեկամ մը։*

Ֆաուստ.— *Անպիտա՛ն մը։*

*Մ*եֆիս.— *Ժամ է որ բաժնուիք իրարմէ։*

*Մ*արթա, կը մտնէ.— *Այո՛, ժամանակը ուշ է, պարոն։*

Ֆաուստ.— *Օրիորդ, կրնա՞մ տուն առաջնորդել զքեզ։*

*Մ*արկըրիդ.— *Գուցէ մայրս...։ Երթա՛ս բարեաւ։*

Ֆաուստ.— *Ա՜խ, ի՞նչու մեկնիլ։ Մնա՛ս բարեաւ։*

*Մ*արթա.— *Գիշե՛ր բարի։*

*Մ*արկըրիդ.— *Ցտեսութի՛ւն։*

Ֆաուստ ու *Մ*եֆիստոֆելէս դուրս կ'ելլեն։

*Մ*արկըրիդ.— *Աստուա՛ծ իմ, ի՜նչ կատարեալ երիտասարդ՝ որ ամէն ինչ կը մտածէ, ամէն ինչ գիտէ։ Իր առջև ամչնալուս՝ ամէն բաներուն* այո՛ *կ'ըսեմ։ Խեղճ ու տգէտ աղջիկ մ'եմ, ու չեմ հասկնար թէ ինչ բան կրնայ գտած ըլլալ վրաս։*

Դուրս կ'ելլէ։

---

# ԱՆՏԱՌ ԵՒ ՔԱՐԱՅՐՆԵՐ

Ֆաուստ, առանձին.— *Ո՛ ոգի վսեմ, քեզմէ հայցածս շնորհեցիր. այո՛, շնորհեցիր ինծ ամէն բան.*

քու հրեղէն դէմքդ ինծ չդարձուցիր ընդունայն։ Վեհաշուք բնութիւնը իբր թագաւորութիւն ինծ նուիրած ժամանակդ՝ զայն զգալու և վայելելու շնորհն ալ պարգևեցիր. դուն չուզելով որ ցուրտ ու շուարուն սքանչանք մ'ունենամ միայն՝ թոյլ տուիր որ դիտեմ անոր խորագոյն ծոցին մէջ, որպէս թէ բարեկամի մը ծոցն ըլլար ան։ Դուն իմ առջև բերիր կենդանի արարածոց երկարաձիգ շղթան, և ուսուցիր ինծ ճանչնալ իմ եղբայրներս խաղաղիկ մացառին, օդին ու ջուրին մէջ։ Եւ երբ փոթորիկը անտառին մէջ մռնչէ ու գոռայ՝ գետին տապալելով հսկայաձև շոճեր՝ որոնց մօտակայ բուները կը ճմլուին մեծաշռինչ, երբ անոնց թաւալման թնդիւնը որոտնման հնչէ լեռէ ի լեռ՝ այն ժամանակ կ'առաջնորդես զիս դէպի քարանձաւներու անքոյթ ապաստանը, կը յայտնես ինծ իմ անձս, և ծոցիս մէջ սքօղուած թաքուն հրաշալիքները կը պարզուին առջիս մերկապարանոց։ Յետոյ լուսինը՝ ջինջ ու պայծառ՝ իմ դիմացս կ'ելլէ կը բարձրանայ յուշիկ դէպ ի երկին, և ժայռերու երկայնքը՝ տամուկ մացառներու վրայ անցեալին արծաթանշոյլ ստուերները կը յածին՝ ամոքելով, բարեխառնելով խոկմանց խստըմբեր հեշտութիւնը։

Ո՜հ, կ'զգամ հիմայ թէ մարդս կատարեալ երանութիւն չպիտի ունենայ երբեք. այն հեշտութեանց հետ՝ որք ես քան զես աստուածներու կը մօտեցնեն զիս, տուիր ինծ ընկեր մ'որմէ այլևս չեմ կարող ձեռնթափ ըլլալ, մինչդեռ նա պաղարիւն ու խրոխտ՝ զիս իմ առջևս կը նուաստացունէ շարունակ, և իր մէ՛կ խօսքովը ինձի ըրած բոլոր պարգևներդ կը փճացնէ անո-

ղօրմաքար։ Հոգւոյս մէջ վայրագ հուր մը վառած է նա՝ որ զիս կը քաշէ կը տանի անդադար դէպի ամէն պատկերները գեղեցկութեան։ Այսպէս՝ յափշտակեալ խանդով տենչանքէ կ'անցնիմ վայելումի, և վայելքի մէջ՝ տենչանք կը փնտռեմ ափսոսալով։

Մեֆիստոֆելես կը մտնէ։

Մեֆիս.— Ի՞նչ, վերջ չպիտի՞ տաս այդ կեանքին. ի՞նչ ախորժ կրնաս գտնել այդ նուաղկոտ վիճակի մէջ. զայն անգամ մը փորձելը գէշ չէ, այլ պէտք է նորանորի անցնիլ առանց ժամանակ կորուսելու։

Ֆաուստ.— Կը փափաքէի որ չխռովես զիս իմ լաւ ժամերուս մէջ։

Մեֆիս.— Քաջ է. կը թողում զքեզ հանգիստ եթէ կ'ուզես. այլ չես կրնար լրջօրէն ըսել այդ խօսքը։ Քեզի նման անախորժ, խոժոռ ու յիմար ընկեր մը կորուսելով մեծ բան կորուսած չպիտի ըլլամ։ Լիաձեռն կը ներկայանամ քեզ յաւէտ, այլ ի զուր. չէ կարելի առնուլ բերնէդ թէ ո՞ր բանն է քեզ ախորժելին, և թէ թէ քեզ հաճելի ըլլալու համար ի՞նչ պէտք եմ ընել։

Ֆաուստ.— Ահա ճիշտ իր հանապազօրեայ ոճն ու ձևը. զիս տաղտկացնելուն համար կ'ուզէ որ շնորհակալ ալ ըլլամ։

Մեֆիս.— Առանց ինծի քու կեանքդ ի՞նչպէս պիտի անցընէիր, ո՛ հէք զաւակ աշխարհի. ես էի որ պահ մը բուժեցի քեզ երևակայութեան մոլորումներէ. եթէ ես չըլլայի՝ արդէն շատոնց այս աշխարհէ հեռուները պիտի գտնուէիր։ Ի՞նչ պատճառ կայ բուի նման երթալ բնակութիւն ընտրել քարանձաւներն և ժայ-

ռածերպը՛րը. փտած մամուռին ու տամուկ վէմերու մէջ ի՞նչ սնունդ կը փնտռես: Գորտի՛ հաճութիւն. ի՛նչ գեղեցիկ և ախորժելի՛ զբօսանք: Գիտնական մ՚եղած ըլլալդ չես կարող մոռնալ:

Ֆաուստ.— Կը հասկնա՞ս արդեօք որ անապատի մէջ այս արշաւը ի՛նչ նոր ոյժով, ի՛նչ զօրութեամբ կ՚օգնէ իմ կեանքս: Այո՛, եթէ այս բանս զգայիր դու՝ իբրև չարասէր սատանայ չպիտի շնորհէիր ինձ այսպիսի երանութիւն:

Մեֆիս.— Գերբնակա՛ն հաճոյք յիրաւի. գիշերը ցօղաթուրմ լեռներու վրայ տարածուիլ, հիացմամբ ընդգրկել երկինք ու երկիր, ինքզինք աստուածու-թիւն մը կարծելու չափ ուռիլ փքիլ, յափշտակեալ մտքով մը թափանցել մինչև երկրի ծուծը, Արարչա-գործութեան վեց օրերը աչքիդ առջև բերել ու բերել, յետոյ հեշտօրէն տարածուիլ վեհաշուք ամբողջութեան մէջ, մարդկային բնութիւնը մերկանալ իսպառ, և այս վեհ ու բարձր հայեցողութիւնը վերջացնել…: (Շարժուածքով մը:) Չեմ համարձակիր ըսել ի՛նչպէս…:

Ֆաուստ — Բո՜ւհ քեզի:

Մեֆիս.— Խօսքերս չէին կրնար հաճելի ըլլալ, ուստի և իրաւունք ունէիր քաղաքավար բուհդ ար-ձակել ինձ դէմ: Ցանդգնութիւն է սրբասէր ականջ-ներու առջև արտասանել այն բանը՝ որմէ սակայն սրբասէր սրտեր չեն կրնար հրաժարիլ. մէկ խօսքով՝ կը մաղթեմ որ ատեն ատեն դուն քեզի ստելով հա-ճոյք և բերկրութիւն զգաս: Պէտք չէ սակայն որ այդ վիճակը տևէ ընդ երկար, զի շատ չանցած զքեզ պի-տի քաշէ տանի սանձարձակ, և եթէ չարու-

 

նակուն միշտ՝ յիմարութեան անդունդի և թախծութեան
մէջ պլտի սուզուիս ընկղմիս նորէն։ Այլ բաւական է
այսքան խօսք. սիրականդ՝ սիրտն ու միտքը ցաւով
ու հնհնուքով լի՝ քեզ կ'սպասէ. չարունակ իր յիշո-
ղութեան մէջ ես, և խեղճին զգացած հրայրքը իր ոյ-
ժէն գերիվեր է արդէն...։ Քիչ ատեն առաջ սիրոյդ
մոլեգնութիւնը կը յորդէր, կը զեղուր վտակի մը նը-
ման՝ որ ձիւներու հալումով կ'ուռի կը բարձրանայ.
այդ մոլեգնութիւնը դո՛ւն վաթեցիր անոր սրտին մէջ,
և հիմայ քու վտակդ ցամքեր է իսպառ։ Իսկ այնպէս
կը թուի թէ վեհ մարդը անտառներու մէջ թագաւո-
րելու տեղ՝ աւելի լաւ կ'ընէր իր սիրոյն մէջ խաբուած
այդ հէք աղջիկը վարձատրելով՝ որու ժամերը դըժ-
բաղդ ձանձրութեամբ մը կ'անցնին։ Խե՛ղճ արարա-
ծը չարունակ պատուհանը կեցած՝ քաղաքին հնօրեայ
պարիսպներուն վրայէն ամպերուն անցնիլը կը դիտէ։
**Է՞ր թռչնիկ մը ըլլայի**. ա՛յս երգս կ'երգէ ահա օրն ի
բուն ու գիշերուան ալ կէսը։ Մերթ զուարթ է, ստէպ
տխուր. մերթ տեսնես որ կուլայ, յետոյ փոքր ինչ կը
հանդարտի, ու կը սիրէ միշտ։

**Ֆաուստ**.— Օ՛ձ, օ՛ձ նենգաւոր։

**Մեֆիս, առանձին**.— Օ՞ձ եմ...։ Ա՛խ, մէյմը
փաթտուէի՛ քեզ։

**Ֆաուստ**.— Թշուառակա՛ն դու, կորսուէ՛ աստ, և
ա՛լ այն չքնաղ արարածին անունը մի՛ տար. զայն վայե-
լելու քաղցրիկ տենչը ա՛լ մի՛ ներկայեր իմ կիսովի
յաղթահարեալ սրտիս։

**Մեֆիս**.— Ի՞նչ փոյթ. նա քեզ ձեռքէն թռած փա-
խած կը կարծէ, և կէս մ'ալ այդպէս ես արդէն։

Ֆաուսթ.— Իրեն մօտն եմ միշտ, այլ եթէ հեռուն իսկ գտնուէի՝ ո՛չ կրնամ մոռնալ զինք, և ոչ պատճառ ըլլալ իր կորստեան...։ Այո՛, Յիսուսի մարմինէն կը նախանձիմ՝ երբ սիրուհւոյս շրթունքը կը հպին անոր։

Մէֆիս.— Լաւ կը խօսիս, բարեկամ, ես քեզմէ նախանձած եմ ստէպ այն զոյգ երկուորեակներուն համար՝ որք կը ճարակին վարդերու մէջտեղ։

Ֆաուսթ.— Գնա՛ առջևէս, կաւա՛տ դու։

Մէֆիս.— Դու զիս կը կշտամբես, և ես պէտք է ծիծաղիմ ատոր վրայ։ Այն Աստուածը որ մանչն ու աղջիկը ստեղծեց՝ այդ արուեստն ճանչցաւ իբր գերագնիւ և ի գործ դրաւ ամենէ յառաջ։ —Ո՛հ, յիրաւի մե՜ծ պատճառ խախծութեան. սիրուհւոյդ գիրկը կը դիմես ու չէ թէ մահուան։

Ֆաուսթ.— Իր թևերուն մէջ՝ ի՞նչ պիտի ըլլան երկնքի երանութիւններն։ Թող թոյլ տայ ինձ տաքնալ՝ կաթնած իր կուրծքին...։ Այլ տուով մէկտեղ իր թշուառութիւնը չպիտի՞ զգամ յաւէտ։ Միևնոյն փախըստականը, միևնոյն տարագիրը, միևնոյն աննպատակ ու անհանգիստ հրէշը չե՞մ միշտ՝ որ ժայռէ ի ժայռ մռնչող հեղեղի մը նման վիհը կը փնտռէ՝ մէջը նետուելու համար...։ Այլ նա՝ պարզ ու միամիտ աղջիկ մը՝ Ալպեան լերանց մէջ պզտի խրճիթով ու պզտի դաշտով խաղաղիկ կեանք մը պիտի անցընէր՝ տնական զբաղմանց անձնատուր։ Մինչդեռ ես, թշուառական, Աստուծմէ անիծեալս իր նեցուկները՝ իր երանութեան պայմանները քանդելէ ետք՝ անոր մաքուր հոգւոյն բովանդակ խաղաղութիւնն ալ փճացուցի։ Դժո՛խք, պէտք էր քեզի այդ զոհը։ Փութա՛, Սատա-

յն, վերջացո՛ւր տառապանքներս. ինչ որ պիտի պատահի՝ ո՛ն, թո՛ղ պատահի իսկոյն: Գլորէ՛, տապալէ՛ իմ վրայ անոր բաղդը, ու թող ինծ հետ իյնայ գահավէժ անդունդին մէջ:

Մեֆիս.— Ի՞նչպէս կ'եռաս, ի՞նչպէս կը տոչորիս...: Հապա, եկո՛ւր, հէ՛ք յիմար, եկուր մխիթարէ՛ զինքը: Տկար գլուխ մը եթէ ելք չտեսնէ՝ կը կարծէ թէ կորսուած ըլլայ ամէն բան: Կեցցէ՛ նա՝ որ իր արիութիւնը կը պահէ անդրդուելի: Արդէն լաւ բաւական դիւազնեալ կը տեսնեմ զքեզ, և չեմ կարծեր թէ յուսակտուր դեւէ աւելի ծաղրելի բան գտնուի աշխարհի վրայ:

## ՍԵՆԵԱԿ ՄԱՐԿԸՐԻԴԻ

ՄԱՐԿԸՐԻԴ, առանձին իր ճախարակին առջեւ (*)

Անդորր, հանգիստ ես կորուսի.
Խաղաղութիւնն հիւանդ սրտիս
Գտնել, աւա՜ղ, չէ կարելի.
Բիւր հնհնուք կը տանջեն զիս.

Ուր չտեսնեմ երեսն անոր՝
Է ինծ համար մութ գերեզման.
Եւ մէկ քօղով աղէտաւոր
Ծածկուած է աշխարհ համայն:

Անդորր, հանգիստ ես կորուսի,
Խաղաղութիւնն հիւանդ սրտիս

(*) Այս հատուածս արձակ դրուած է Ֆաուստը Ներվալի թարգմանութեան մէջ: Մեզ ընտրելի երեւցաւ ոտանաւորի վերածել զայն:

Գտնել, աւա՜ղ, չէ կարելի.
Բիւր հնհնուք կը տանջեն զիս։

Պատուհանիս ու կամ դըրան
Օրըն ի բուն առջև կանգնած՝
Կ'սպասեմ որ հուսկ տեսնեմ զան՝
Որ սրանամ իրեն դիմաց։

Ի՜նչ սէգ գնացք, ի՜նչ դէմք պայծառ.
Բերնին ժպիտն ո՜րքան անոյշ.
Այն ի՜նչ աչքեր բորբոք ու վառ՝
Որք կը գերեն հոգիիս ուշ։

Ի՜նչ սխրալի քաղցըր խօսուածք,
Որքա՜ն անոյշ՝ ձեռքին սեղմուածք.
Հապա իրեն չըթա՜նց համբոյր.
Ի՜նչ բերկրութիւն երանաբոյր։

Անգորր, հանգիստ ես կորուսի,
Խաղաղութիւնն հիւանդ սրտիս
Գտնել, աւա՜ղ, չէ կարելի.
Բիւր հնհնուք կը տանջեն զիս։

Երբ մօտենայ դէպ ի ինձի՝
Կը զարնէ հէք սիրտըս ուժով.
Ի՞նչու, բաբէ, չկրնայի
Ձինք յաւիտեան պահել իմ քով,

Շոյել, գգուել սիրատոչոր,
Տալ պագիկներ ջերմ ու անյագ,
Ցետոյ կնքել իմ կեանքիս օր
Իր կենսատու համբուրից տակ։



# ՄԱՐԹԱՅԻ ՊԱՐՏԷԶԸ

## ՄԱՐԿԸՐԻԴ, ՖԱՈՒՍԹ

Մարկըրիդ.— Խոստացի՛ր ինծ, Հանրի։

Ֆաուսթ.— Կը խոստանամ ինչ որ կ'ուզես։

Մարկըրիդ.— Ըսէ՛ նայիմ ի՞նչ է քու դաւանած կրօնքդ. ազնիւ սրտի տէր մարդ մ'ես, այլ կարծես թէ բարեպաշտութիւն ըսուած բանը չկայ հոն։

Ֆաուսթ.— Թողունք այդ կէտը, սիրելիս. գիտես թէ ո՛րքան կը սիրեմ զքեզ. այդ սիրոյն համար պատրաստ եմ մարմինս ու արիւնս նուիրելու, այլ չեմ ուզեր որ և է մէկը անջատել իր հաւատքէն կամ եկեղեցիէն։

Մարկըրիդ.— Բաւական չէ այդչափը. հարկ է նաև հաւատալ։

Ֆաուսթ.— Հա՞րկ է, կ'ըսես։

Մարկըրիդ.— Ո՜հ, ո՞ւր էր թէ խօսքերս զօրէի՜ն վրադ...։ Սուրբ խորհուրդներն ալ չես յարգեր դուն։

Ֆաուսթ.— Ո՞վ ըսեր է. կը յարգեմ զանոնք։

Մարկըրիդ.— Առանց սակայն իղձ մը՝ փափաք մը զգալու. երկար ժամանակներ կայ որ խոստովանանքի ու հաղորդի չես գացած։ Ըսէ ինծի, դուն կը հաւատա՞ս Աստուծոյ։

Ֆաուսթ.— Ո՞վ կը ժտի, ո՛ սրտիս հատորը, «Աստուծոյ կը հաւատամ» ըսելու։ Գնա՛ հարցո՛ւր այդ բանը քահանաներուն կամ իմաստուններուն, ու պիտի տեսնես թէ իրենց տալիք պատասխանը պարզապէս հեգնութիւն մէ հարցումիդ։

Մարկրիդ.— Ուրեմն չե՞ս հաւատար Աստուծոյ։

Ֆաուսթ.— Միտքս լաւ հասկցի՛ր, սիրուն արարած։ Ո՞վ պիտի համարձակի Անոր անունը տալ և ըսել հաւատոյ այս դաւանանքը. «Կը հաւատամ անոր»։ Ո՞ր զգացող արարածը կը համարձակի ըսելու. «Չեմ հաւատար անոր»։ Ան որ ամէն ինչ կը պարփակէ, ամէն ինչ կը պահպանէ, զքեզ, զիս և նոյն իսկ ինքզինքը չպա՞րփակեր, չպահպանե՞ր միթէ։ Վե՛րը՝ երկինք չբոլորուի՞ր կամարաձև, հոս՝ երկիրը չտա՞րածուիր լայնարձակ, և միթէ յաւիտենադիր աստղերը վեր չե՞ն բարձրանար՝ մեզ դիտելով բարեկամօրէն։ Իմ աչքս չտեսնե՞ր քու աչքերդ. Ամէն ինչ չքաշե՞ր չտանիր դէպ ի քեզ թէ՛ գլուխս ու թէ սիրտս, և զիս յանկուցանողը յաւիտենական խորհուրդ մը չէ՞ տեսանելի կամ անտես...։ Որչափ մեծ ալ ըլլայ այդ խորհուրդը՝ լեցո՛ւր անով քու հոգիդ, և եթէ երջանիկ ես այդ զգացումով՝ տո՛ւր անոր ինչ անուն որ կ՚ուզես տալ. երանութի՛ւն, սի՛րտ, սէ՛ր, Աստուած։ —Ես ատոր անուն չեմ տար բնաւ։ Զգացումը ամէն ինչ է. անունը ժխոր մ՚է, մուխ մ՚է որ երկնից պայծառութիւնը կ՚ողողէ մեր աչքերէն։

Մարկրիդ.— Այդ ամէն խօսքերդ լաւ են. քահանային ըսածն ալ կը նմանի ատոր, միայն քանի մ՚ուրիշ բառեր կը դնէ մէջը։

Ֆաուսթ.— Աշխարհի վրայ ամէն սրտեր ամէն տեղ կը կրկնեն այդ բանը, իւրաքանչիւրն իր լեզուով, ինչու ես ալ իմ լեզուովս չխօսիմ զայն։

Մարկրիդ.— Եթէ այդպէս կը հասկնան՝ այդ խօսքը կրնայ խելքի մօտ ըլլալ. սակայն մութ կէտ–

մը կը մնայ տակաւին. դուն չես հաւտար քրիստոնէութեան։

**Ֆաուսթ**.— Սիրո՛ւն զաւակ։

**Մարկըրիդ**.— Ատկէ զատ վաղուց սոսկում կ'զգամ տեսնելով զքեզ անանկ մէկու մը հետ...։

**Ֆաուսթ**.— Ի՞նչ ըսել կուզես։

**Մարկըրիդ**.— Քեզ ընկերացող անձը...։ Ո՜հ կ'ատեմ զան իմ բոլոր սրտովս։ Կեանքիս մէջ չէ եղած բան մ'որ զիս այն աստիճան քստմնեցուցած ըլլայ՝ որքան այդ մարդուն խորշելի կերպարանքը։

**Ֆաուսթ**.— Բան չկայ վախնալու, հոգւոյս հատո՛րը։

**Մարկըրիդ**.— Այդ մարդուն ներկայութիւնը արիւնը գլուխս կը հանէ։ Ամէնուն նկատմամբ վարմունքս թեպէտ բարեսէր է՝ այլ սակայն զքեզ դիտելը որքան հաճելի է ինձ՝ նոյնչափ և անոր երեսը տեսնելը՝ սոսկալի։ Ես անզգամ մէկը կը համարիմ զինքը. Աստուած մեղք չսեպէ ինձ եթէ անիրաւ է կասկածս։

**Ֆաուսթ**.— Այո՛, աշխարհի վրայ անզգամ մարդիկ ալ կը գտնուին անշուշտ։

**Մարկըրիդ**.— Անոր նման մէկու մը հետ չպիտի ուզէի բնաւ կենակցիլ։ Ներս մտած կէտին նայուածք մը կը ձգէ վրան՝ ուր թէ՛ հեգնութիւն կայ ու թէ՛ կէս մ'ալ ցասում։ Յայտնի կը տեսնուի թէ բան մը հոգ չըներ. երեսին վրայ գրուած է կարծես թէ ինք կարող չէ ոչ մէկը սիրել։ Թե՛ւս թեւիդ անցուցած ժամանակս ուրախութիւն և ազատութիւն կ'զգամ. ատոր հակառակ իր ներկայութիւնը տխրութիւն ու տագնապ կ'ազդէ ինձ։

**Ֆաուսթ**.— *Հրեշտակի՛ նախազգացումներ։*

**Մարկըրիդ**.— *Այդ զգացումը այն աստիճան կը տիրապետէ վրաս՝ որ մեզ մօտենալուն պէս՝ կարծես կը դադրիմ քեզ սիրելէ. հոս եղած ժամանակը չեմ կարող երբէք աղօթել, և այս բանս ցաւ կ'ըլլայ սրտիս։ Ըսէ՛, Հանրի, վրադ ալ միևնոյն վատ ազդեցութիւնը չընե՞ր։*

**Ֆաուսթ**.— *Այդքան հակակրութի՞ւն ունիս անոր դէմ։*

**Մարկըրիդ**.— *Հանրի. ժամ է որ տուն երթամ։*

**Ֆաուսթ**.— *Ա՜հ, չպիտի՞ կրնամ երբէք պահ մը հանգչիլ քու կուրծքիդ վրայ..... սիրտս սեղմել քու սրտիդ, և հոգիս խառնել հոգւոյդ հետ։*

**Մարկըրիդ**.— *Եթէ սենեակս առանձին պառկէի՝ դրան պարզունակները բաց կը ձգէի այս գիշեր. այլ մօրս քունը թեթև է, և եթէ յանկարծ աչքերը բանալով մեզ տեսնէր՝ սրտիս յուզումէն հոն պիտի մնայի անշունչ։*

**Ֆաուսթ**.— *Այսպիսի բան երբէք չպիտի պատահի, անուշիկս։ Ա՛ռ սա պզտի սրուակը, ու կը բաւէ որ իր խմած ջուրին մէջ երկու կաթիլ միայն թափես. անով խորունկ քուն մը պիտի մտնէ, և արթննալու վախ չըլլար։*

**Մարկըրիդ**.— *Կա՞յ բան մ՝ որ չընեմ քեզ համար. այլ միթէ տուածդ կրնա՞յ վնասել իրեն։*

**Ֆաուսթ**.— *Եթէ այդպէս ըլլար՝ քեզ այդ խորհուրդը կուտայի՞, ո՛վ իմ հրեշտակս։*

**Մարկըրիդ**.— *Զքեզ տեսած ատենս, սիրելիդ իմ, չգիտեմ ի՞նչ բան կ'ստիպէ զիս որ երբէք չէ չըսեմ.*

արդէն սիրոյդ համար ա՛յնչափ բաներ ըրած եմ՝ որ ա՛լ աւելին ընելու բան մնացած չէ գրեթէ։

Դուրս կ՚ելլէ։

**Մեֆիսթոֆելէս, կը մնայ.**— Մեկնեցա՞ւ գառնուկը։

**Ֆաուստ.**— Ինչ՞, լրտեսեցի՞ր նորէն։

**Մեֆիս.**— Պարագայիւք լսեցի ամէն ինչ։ Դուն, պարոն վարդապետ, քրիստոնէականի լաւ դաս մ՚ընդունեցար՝ որ յուսամ թէ օգտակար ըլլայ քեզ։ Աղջիկները մեծ կարեւորութիւն կու տան որ մարդ ջերմեռանդ ըլլայ, և հնազանդ՝ հին ունակութեան։ Անոնց մտածածը սա՝ է. «Եթէ ունակութեան խոնարհի՝ ըսել է մեզ ալ պիտի հնազանդի հեշտեաւ»։

**Ֆաուստ.**— Հրէշը և ոչ իսկ կարող է զգալ որ այդ սիրատենչ անմեղ հոգին՝ որ լիակատար հաւատք ունի, և որ անհունապէս երջանիկ է հաւատքով, ո՛րքան կը տանջուի իր բարեպաշտ սրտին մէջ որ մի գուցէ սիրած մարդը մատնուի կորստեան։

**Մեֆիս.**— Ո՛ զգայուն՝ կարի զգայո՛ւն տարփածու, ինչպէս դեռատի աղջիկ մը՝ քթէդ բռնած կ՚առաջնորդէ զքեզ։

**Ֆաուստ.**— Անօ՛րդ բաղադրած տղմի և հրոյ։

**Մեֆիս.**— Եւ ինչպէս դէմքէ ալ քաջ կը հասկնայ այդ անմեղ արարածը. զիս տեսած ատեն չգիտեմ ի՛նչ բաներ կ՚ըլլայ. կերպարանքս թաքուն ոգի մը կը յայտնէ անոր. կ՚զգայ անտարակոյս թէ գերմարդկային էակ մ՚եմ, նոյն իսկ սադայէլը թերեւս։ — Եւ այս գիշե՞ր...։

**Ֆաուստ.**— Քեզի ի՞նչ։

**Մեֆիս.**— Ես ալ իմ հրճուանքի բաժինս ունիմ անոր մէջ։



# ԼՈՒԱՑԱՐԱՆԻ ՄԷՋ

*ՄԱՐԿԸՐԻԴ ԵՒ ԼԻԶԷԴ*, մէյմէկ թակոյկ բռնած

Լիզէդ.— *Պզտի Սուրբիկին վրայ լսեցի՞ր բան մը։*

Մարկըրիդ.— *Ո՛չ, բան մը չլսեցի, ես ընկերութիւններ յաճախող չեմ։*

Լիզէդ.— *Շուշանը կ՚ըսէր ինծ այսօր որ այդ Սուրբիկն ալ վերջապէս գլխէ ելեր է. կը տեսնե՞ս սա բարի-պտուղները. ազնիւ ձեւեր ունին, այլ միւս կողմէ ասանկ ապուրներ կ՚ուտեն։*

Մարկըրիդ.— *Ի՞նչպէս։*

Լիզէդ.— *Ամօ՛թ և սոսկո՛ւմ. գիտցի՛ր ուրեմն թէ այդ Չլթիկին կերածն ու խմածը երկու հոգիի համար է այսօր։*

Մարկըրիդ.— *Ի՞նչ կ՚ըսես։*

Լիզէդ.— *Այսպէս ահա վերջացաւ բանը. ո՛րքան ժամանակէ իվեր կախուեր մնացեր էր այդ ստահակին օձիքէն. ճեմեր՝ շրջագայութիւններ կ՚ընէր գիւղին մէջ. պարի առիթ մ՚ալ չէր փախցներ. ամէն տեղ առաջին գտնուողը ինք կ՚ըլլար միշտ. տարփածու սրիկան քաքարով ու գինիով կը բռնէր զինքը։ Մեր Սրբուհին կամ լրբուհին որ իր գեղեցկութեան ու հրապոյրներուն վրայ մեծ համարում ունէր, առանց խպնելու-հոմանիին պարգեւները կ՚ընդունէր սիրով. նախ՝ զգուանք մը, յետոյ համբոյր և վերջապէս իր կուսութեան պատիւը վրայ տուաւ։*

Մարկըրիդ.— *Խե՜ղճ աղջիկ։*

Լիզէդ.— *Տակաւին մեղքցի՛ր զինքը։ Երբ մենք*

մինակուկ մեր կտաւը կը մանէինք մեր մայրերէն հրամամբ լոկ չունենալով իրիկունը վար իջնելու, անիկա իր սիրողին հետ դրան նստարանին վրայ կը բազմէր պատուականապէս, և մթագին ծառուղիներու մէջ ժամերը կարճ կ'երեւային իրենց։ Հիմայ պէտք է որ ապաչաւողի խարազով եկեղեցին երթայ իր մեղքը լալու։

Մարկրիդ.— Հարկաւ երիտասարդը պիտի պսակուի իրեն հետ։

Լիզեդ.— Խե՞նդ է որ ընէ այդ բանը. կայտառ երիտասարդ մը ուրիշ կողմեր ալ կրնայ զուարճութիւն գտնել, ինչպէս որ արդէն ալ գրեր է կծիկը։

Մարկրիդ.— Աղէկ բան չէ՛ այդ ըրածը։

Լիզեդ.— Եթէ Սուրբիկը նորէն զան ձեռք անցընէ անգամ՝ օգուտ չունի։ Երիտասարդք պատրաստուած են պսակը գլխէն խլելու, իսկ մենք ջարդուփշուր յարդ պիտի ցանենք անոր դրան առջեւ։

Մարկրիդ, տուն դառնալով.— Ի՞նչպէս ատեն մը կրնայի յանդուգն լեզուով բամբասել խեղճ աղջիկ մը՝ երբ դժբաղդ անզգուշութեամբ սխալանաց մէջ իյնար. Ի՞նչպէս կ'ըլլար որ ուրիշներու գործած մեղքերուն համար ծանր խօսքեր ելլէր բերանէս։ Գործը որքան ապերելի ալ երեւար ինծ՝ կ'աշխատէի ա՛լ աւելի ապերելի ցուցնել՝ ամէն ճիգ թափելով որ բանը մեծցնեմ, և՝ որքան ալ մեծնար՝ դարձեալ բաւական չէր սեպեր. ու հիմա ես ինքս մարմնացումն եմ մեղքի։ Եւ սակայն... ո՛րքան պարագաներ եկան միացան զիս սխալեցնելու համար։ Բարէ՛, ո՛րքան ազնիւ, ո՛րքան սիրուն էր Հանրին։



**ՊԱՏՆԷՇՆԵՐ.— Որմի խոռոչի մը մէջ Ցաւագին Մօր (Աստուածածնի) պատկերը՝ դիմացը ծաղիկի թաղարներ.։**

Մարկըրիդ, ծաղիկի թաղար մը կը բերէ (*).

*Մա՛յր թախծութեան, խոնարհեցո՛ւր*
*Անոյշ նայուածք մը կարեկցող.*
*Տառապանքներս իմ են անլուր,*
*Որոնց տանիլ ա՛լ չեմ կարող։*

*Դանակը կուրծքդ՝ դու աղեկէզ՝*
*Քու զաւակիդ դժնդակ մահ*
*Արտասուալից կը նկատես.*
*Սրտիդ խորէն արի՜ւն կ'երթայ։*

*Հեծեծանօք դէպ անոր Հայր*
*Լալագին աչքդ կը դարձընես՝*
*Աղերսելով խոնարհաբար*
*Որ օգնութեան ժամանէ քեզ։*

*Ո՞վ պիտ' զգայ թախիծն հոգւոյս,*
*Հնհնուքներս ու անձկութիւն.*
*Ո՞վ իմ յուզմունք տագնապ և յոյս*
*Գիտ' հասկնայ՝ բայց միայն դո՛ւն։*

*Ուր որ երթամ՝ տխուր և գիշեր*
*Վիշտ դժնդակ, տուայտ անքաւ*
*Ինձ անբաժան կ'ըլլան ընկեր.*
*Հանգիստ ինչ է՝ չունիմ բնաւ։*

---

(*) Այս հատուածս ալ դարձեալ ոտանաւորի շրջուած է մեզմէ։

Իմ ժամերուս մէջ առանձին
Կը թափեմ ես յորդ արցունքներ.
Կը խորտակուի իմ խեղճ հոգին
Իմ կուրծքի մէջ այրեացաւեր:

Այս ծաղիկներ՝ պատուհանի
Իմ մօտ բացուած՝ արտասուօք եւ
Այս առաւօտ ժողովեցի՝
Մա՛յր Աստուծոյ, ու բերեմ քեզ:

Արեգական առաջին լոյս
Մահճիս վրայ ամէն առտու
Զիս կը գտնէ նստած անյոյս,
Նշաւակ բիւր տուայտներու:

Եղի՛ր նեցուկ եղկելիիս.
Նախատինքէ ու մահուանէ՝
Որք ժամէ ժամ կ՚սպառեն զիս,
Ո՜հ, հասի՛ր ինձ, զիս ազատէ՛:

Մա՛յր թաղծութեան, խոնարհեցո՛ւր
Անոյշ նայուածք մը կարեկցող՝
Տառապանքներս իմ են անլուր
Որոնց տանիլ ա՛լ չեմ կարող:

---

ԳԻՇԵՐ.— Փողոց մը Մարկըրիդի դրան առջեւ:

Վալանդէն, զինուոր, եղբայր Մարկըրիդի.— Երբ խնճոյքի մը գտնուէի՝ ուր իւրաքանչիւր ոք կը սիրէ պարծիլ, և ընկերներս իրենց սիրոյ գաղտնիքները հպարտ ձեւով մը կը պարզէին իմ առջեւ, և իրենց արմուկները սեղանին կռթնցուցած՝ զեղուն բաժակ-

ներ պարպելով իրենց սիրուհիներու գովեստները կը հիւսէին՝ ես խաղաղիկ նստած իմ տեղս՝ անոնց պարծենկոտ խօսքերը մտիկ կ'ընէի, և նոյն ժամանակ՝ գինւոյ բաժակը ձեռքս մօրուքս կը քերէի ժպտելով։ «Ամէն մարդ տէր է իր ճաշակին, կ'ըսէի. այլ միթէ կա՞յ քաղաքին մէջ մէկը՝ որ քրոջս՝ սիրելի Մարկըրիդին հաւասարի, որ անոր ոտքի ամաններն հանելու արժանի ըլլայ։» «Տրի՛նկ, տրի՛նկ» բաժակի ձայները չորս կողմ կը հնչէին հաւանութեան ձայներով։ «Իրա՛ւ է, կը գոչէին ոմանք, Մարկըրիտ մեր գաւառին զա՛րդն է, իրաւցընէ մարգարի՛տն է։» Այն ժամանակ պարծենկոտք պապանձած կը մնային։ Իսկ հիմա՞յ ... մազերս փեթթելս կուգայ, կ'ուզեմ գլուխս պատերուն զարնել։ Ամենէ անպիտանն անգամ կրնայ զիս նշաւակ ընել իր կատակներու և հեգնութեանց, և ես իբր յանցաւոր կը մնամ անոր առջև, պատահմամբ ըսուած ամէն մէկ խօսք ոլոռ ոլոռ քրտինքներ կը հոսեցնէ ճակտէս, և եթէ բռողներն կոտր կոտր ընեմ իսկ՝ դարձեալ սուտխօս անունը չեմ կրնար տալ անոնց։ Այլ ո՞վ է ան՝ որ պատին երկայնութեամբ սողոսկելով կուգայ։ Անո՛նք են՝ եթէ չեմ սխալիր։ Եթէ նոյն ինքն է՝ իր պատիժը պիտի տամ. թող գիտնա՛յ թէ երկար ժամեր չունի ապրելիք երկրի վրայ։

## ՖԱՈՒՍՏ, ՄԵՖԻՍՏՈՖԵԼԷՍ

**Ֆաուստ**.— Կը տեսնե՞ս վե՛րը՝ աւանդատան պատուհանէն՝ ներսի մշտավառ կանթեղին լոյսը՝ որ կը դողդղայ, կը տժգունի՝ հետզհետէ աւելի մարմրուն,

ու մութը կը պարուրէ զայն ամէն կողմէ. այսպէս սրտիս մէջ ալ խաւարը կը տիրէ։

Մեփիս.— Իսկ ես ինքզինքս լուրջ և սթափ կ'ըզգամ կատուի մը նման՝ որ սանդուղին վրայէն սահելով՝ կ'երթայ կը շփշփուի պատին. խիստ պարկեշտ երևոյթ մ'ունի նա՝ թեպէտ փոքր ինչ հակամէտ գողութեան ու բղջախոհութեան։ Կախարդական ցայգաժողովի սքանչելի գիշերը կը ներգործէ արդէն իմ բոլոր անդամոցս վրայ. վաղայաջորդ օրը պիտի գըտնուինք հոն, և փուճ տեղը չէ՛ որ մէկը անքուն կ'անցունէ այդ գիշերը։

Ֆաուսթ.— Գետնի տակ շողացող այն գանձը երևան պիտի հանե՞ս ընդ հուպ։

Մեփիս.— Այո՛, գոհարներու տուփը ձեռքիդ մէջ շօշափելու ուրախութիւնը պիտի վայելես ընդ հուպ. պահ մը յառաջ դիտեցի հեռուէն, մէջը պատուական ակիներ կան փայփլուն։

Ֆաուսթ.— Ի՞նչ, գոհար մը՝ մատնի մը չկա՞յ ամենևին՝ իմ սիրուհիիս նուիրելու համար։

Մեփիս.— Մարգարտեայ մանեակի նման բան մ'աչքիս զարկաւ տուփին մէջ։

Ֆաուսթ.— Լա՛ւ. ծանր պիտի գար ինծ առանց ձեռքս ընծայ մ'ունենալու ներկայանալ իրեն։

Մեփիս.— Ըստ իմ կարծեաց գէշ չես ըներ ուրիշ հաճոյք մը ևս վայելելով։ Հիմայ որ երկինքը կը փողփողայ աստեղազարդ՝ ճշմարիտ հրաշակերտ մը մըտիկ պիտի ընես. երգ մը բարոյական՝ զոր պիտի նուագեմ Մարկըրիդը խապա հրապուրելու համար։



**Փանդիռի ձայնակցութեամբ կ՚երգէ։**

*Տարփածուիդ տանը դիմաց,*
*Ո՛ Վառվառէ,*
*Առտու կանուխ այդպէս եկած՝*
*Միտքըդ ի՞նչ է։*

*Երբ հաճոյից նշանն տուիր՝*
*Կրնաս մտնել իր խուցին մէջ*
*Իբրև անբիծ կոյս նազելի,*
*Այլ ո՛չ՝ այնպէս ելլել անկէց։*

*Թեւերը քեզ կը կարկառէ,*
*Դուն ալ շուտով մը կը փազես։*
*Բարի՛ գիշեր, ո՛ Վառվառէ,*
*Քեզի սրտով կը մաղթեմ ես։*

*Դու վճռական սև րոպէին*
*Ընդդիմացի՛ր, կոյս Վառվառէ՛,*
*Ամուսնութեան սուրբ մատանին*
*Անցընել մատդ եթէ չուզէ։*

*Վաղանիկեն, կը յառաջանայ.— Հօ՛ւր ու չո՞նթ. դո՞վ այդպէս հրապուրելու ելեր ես, ո՛ ոնլըքօր. նախ գործիքը փշրե՛նք յետոյ գործողը։*

*Նէֆիս.— Մէ՛ղք. փանդիռս երկու կտոր եղաւ. ա՛լ մէկ փարայ չարժեր այն։*

*Վաղանիկեն.— Փողոտման ժամն է հիմայ։*

*Մեֆիստոֆելես, Ֆաուստին.— Հա՛ նայիմ, տէր վարդապետ, արիացի՛ր։ Հապա՛, քովս կեցի՛ր որ առաջնորդեմ քեզ։ Մերկացո՛ւր թուրդ. Օ՜ն, մղէ՛ զայն. ես հակառակորդիդ թուրին շարժումները կը խոտորեմ։*

Վալանդեն.— Խոտորէ՛, նայիմ։

Մեֆիս.— Ահա՛։

Վանլանդեն.— Խոտորէ՛ այս հարուածն ալ։

Մեֆիս.— Ահա՛ դարձեալ։

Վալանդեն.— Կարծես սատանան ինքն եղած ըլլայ դիմացինս։ Ի՞նչ է այս. ձեռքս թմրեր է, չբռներ։

Մեֆիստոֆելես, Ֆաուստին.— Մղէ՛ թուրդ։

Վալանդեն, կ'իյնայ.— Երկի՜նք։

Մեֆիս.— Անզգամ կոպիտը զգաստացաւ ահա։ Հիմայ փախչի՛նք նայի՛նք. պէտք է շո՛ւտ կծիկը դնել, քանզի «մարդասպա՛նը, մարդասպա՛նը» գոչիւններ կը լսեմ։ Գործը ոստիկանութեան հետ կը շտկեմ առանց դժուարութեան, այլ եղեռնադատ ատեանին քով երբեք չունիմ։

Մարթա, իր պատուհանէն.— Վազեցէ՛ք, օգնութի՜ւն։

Մարկրիդ, իր պատուհանէն.— Շուտո՛վ լոյս հասցուցէ՛ք հոս։

Մարթա, աւելի ուժգին ձայնով.— Կռիւ կայ. մարդ կը կանչեն, կը պօռան, կը ծեծկուին։

Ժողովուրդ.— Մէկը զարնուեցաւ մեռաւ արդէն։

Մարթա, ելնելով.— Իսկ մարդասպանք փախա՞ն։

Մարկրիդ, ելնելով.— Գետին իյնողն ո՞վ է։

Ժողովուրդ.— Մօրդ զաւակը։

Մարկրիդ.— Սո՜ւրբ Աստուածածին, այս ի՜նչ ձիւն է որ եկաւ գլուխս։

Վալանդեն.— Այո՛, կը մեռնիմ. խօսքը դիւրին է, գործադրութիւնն ա՛լ աւելի դիւրին։ Ի՞նչ այդպէս կը պոռչտաք, ո՛վ կիներ։ Եկէ՛ք քովս ու միտ դրէ՛ք ը-

սածներուս։ (Ամենքը Վալանդէնի չորս կողմը կը պատեն)։ Ինծ լսէ՛, Մարկըրիդ, թեպէտ դեռատի՝ այլ տակաւին չունիս յաճախորդ, և գործդ աղէկ չես բռներ։ Ջլթիկ մ'ես արդէն, խորհրդաբար կ'ըսեմ քեզ. այլ գէթ սորվէ՛ շնորհքով գործ տեսնել։

Մարկըրիդ.— Տէ՛ր Աստուած, այդ ի՞նչ խօսքեր կ'ըսես ինծ, եղբայր իմ։

Վալանդէն.— Աստուածը՝ մեր Տէրը այս գործերուս մէջ մի՛ խառներ։ Եղածը եղած է, ու հետեւանքը ինչ որ է՝ ան պիտի ըլլայ։ Նախ և յառաջ անծանօթ մարդու մը պատիւդ ծախեցիր, ետքէն ուրիշներ ալ պիտի գան, և երբ տասնեակ մը մարդիկ ճանչնան զքեզ՝ ա՛լ բոլոր քաղաքին ձեռքէն պիտի անցնիս։ Երբ ամօթը ծնաւ՝ այս աշխարհը բերին զան գաղտնի, գիշերուան թանձր քօղը նետեցին գլխուն ու ականջներուն վրայ, ու՝ եթէ կարելի ըլլար՝ պիտի խեղդէին զան. այլ սակայն աճեցաւ նա ու զարգացաւ, յետոյ ցորեկուան լոյսին ինքզինք յայտնեց մերկանդամ առանց սակայն ատով գեղեցիկ երեւալու. այլ որչափ ժահադէմ էր ինք՝ ա՛յնչափ աւելի հետամուտ կ'ըլլար արեւու լոյսին։

Կը տեսնեմ արդէն այն ժամը՝ ուր քաղաքին պարկեշտ բնակիչները իբր հոտած դիակէ մը՝ երես պիտի դարձընեն քեզմէ, ո՛ անպատիւ անառակ աղջիկ։ Արիւն պիտի քտլէ սրտէդ՝ երբ աչքերուդ մէջ նային։ Ա՛լ այն ժամանակ չպիտի գործածես ոսկի շղթայ, չը պիտի երեւաս եկեղեցւոյ խորանին առջեւ, և ոչ ալ բանուած աղուոր փոթօձիքով պիտի սիգաս կաքաւի մէջ։ Ասոր հակառակ աղտոտ հիւան-

դանոցներու մէջ պիտի փտիս՝ մուրացիկներու և խեղանդամներու կարգ անցած։ Եւ եթէ Աստուած քեզ ներէ անգամ՝ նորէն անիծեալ պիտի ըլլաս միշտ աշխարհի երեսը։

*Մարթա*.— Հոգիդ աստուածային շնորհքի յանձնելու տեղ՝ նոր մեղքերու տէր կ'ընես ինքզինքդ։

*Վալանդին*.— Ա՛խ, գարշելի՛ կաւատ, եթէ կարենայի՛ անգամ մ'իյնալ քու պիղծ մարմնոյդ վրայ՝ պիտի յուսայի իմ բոլոր մեղքերուս և անկէ աւելին ալ քաւութիւնը գտնել։

*Մարկըրիդ*.— Ո՜հ, եղբա՛յր իմ, եղբա՛յր իմ, ի՜նչ ահռելի ցաւ է այս։

*Վալանդին*.— Թո՛ղ, թո՛ղ այդ փուճ արցունքները։ Պատիւէ հեռանալով՝ զայն խայտառ կորսնցնելով՝ սոսկալի հարուած մը տուած եղար սրտիս...։ Մահու քունիս հիմայ զիս Աստուծոյ քով պիտի առաջնորդէ՝ իբր զինուոր և իբր կտրիճ մը։

*Կը մեռնի։*

---

ԵԿԵՂԵՑԻ.— *Պատարագ, երգեհոն եւ ժամերգութիւնք.*
Մարկըրիդ, *բազմութեան մէջ.* Չար Ոգին, *անոր ետեւի կողմը։*

*Չար ոգի*.— Ո՜րչափ փոխուած ես, ո՛ Մարկըրիդ, այն ատենէն՝ ուր անբիծ և անմեղ՝ այս սեղանին վըրայ կ'ելլէիր, թերամաշ աղօթագրքիդ մէջ մաղթանքներ մրմռալով, և սրտիդ գրաւուած կէս մը մանկական խաղերով և կէս մ'ալ Աստուծոյ սիրով։ Ո՞ւր է խելքըդ, ո՛ Մարկըրիդ, ո՜րչափ մեղքեր եկեր խառներ են

սրտիդ մէջ։ Արդեօք մորդ հոգւոյն համա՞ր կ'աղօթես՝ զոր դժոխըմբեր երկար տուայտանքով գերեման իջեցուցիր։ Մտածէ՛, որո՞ւ է դրանդ առջև թափուած արիւնը։— Եւ միթէ կուրծքիդ մէջ չարագուշակ բան մը չխլտի՞ր թէ՛ իր և թէ քու դժբաղդութեանդ համար։

Մարկըրիդ.— Վա՜յ ինձ, վա՜յ ինձ. ո՞ւր փախչիմ, ի՞նչպէս ազատիմ զիս տուայտող մտածումներէ։

ՊԱՐԸ

Աստուածային սրտմտութիւն
Պիտ՝ դարձընէ զաշխարհ յաճիւն (*)։

Երգեհոնը կը հնչէ։

Չար ոգին.— Աստուծոյ բարկութիւնը վրադ կը ծանրանայ. փողը կը հնչէ՛, դամբանք կը դողան, և սիրտդ՝ յաւիտենական հուրի մէջ այրելու համար մահուանէ արթնցած կը սարսռի տակաւին։

Մարկըրիդ.— Ա՜խ հեռանայի ասկէ. այս երգեհոնը կարծես պիտի խղդէ զիս. այս երգերը սիրտս կը խոցոտեն։

ՊԱՐԸ

Երբ դատաւորն աթոռ բազմի՝
Ամէն ծածուկ պիտ՝ յայտնուի,
Ու ամէն մեղք ալ պատժուի (**)։

---

(*) *Dies irae, dies illa,*
*Solvet saeclum in favilla.*

(**) *Judex ergo cum sedebit,*
*Quidquid latt apparebit,*
*Nil inultum remanebit.*

Մարկըրիդ.— Թշուառս. ի՜նչ հնհնուքի՝ ի՜նչ անձկութեան մէջ կը գտնուիմ։ Այս մարդակները կը սեղմեն զիս ամէն կողմէ, այս գմբէթը գլխիս վրայ կը փլչի։— Ո՜հ, քի՜չ մը օդ, քի՜չ մը օդ առնել կ'ուզեմ։

Չար ոգի.— Պահուէ՛, պահուէ՛՝ թէ բան չունիս։ Յանցանքն ու ամօթը չեն կրնար պահուիլ։ Օ՜դ.... լո՞յս.... վա՜յ՝ հազար վա՜յ քեզի։

ՊԱՐԸ

Աստուծոյ ի՞նչ տամ պատասխան,
Ո՞վ պիտ՝ ըլլայ խեղճիս պաշտպան՝
Երբ արդարն իսկ սարսափահար
Պիտի դողայ անձին համար (*)։

Չար ոգին.— Ընտրեալ հոգիներն երես կը դարձընեն, արդարները կը վախնան իրենց ձեռքը քեզ երկընցնելու. վա՜յ, բիւր վա՜յ քեզի։

ՊԱՐԸ

Աստուծոյ ի՞նչ տամ պատասխան։

Մարկըրիդ.— Սրուա՛կդ՝ սրուակդ հասցո՛ւր ինծի, ո՛ դրացուհի։

Նուաղած կ'իյնայ։

---

Կախարդաժողովի գիշեր.— Հարծ լեռը.— Շիրքի նովիս, եւ ամայաս։

Մեֆիս.— Ի՞նչ, աւելի կոթ մը չե՞ս ուզեր վրան հեծնելու համար։ Իմ մասիս կայտառ նոխազ մ'ունե-

---

(*) *Quid sum miser tuns dicturus,*
*Qued patronum rogaturus,*
*Cùm vie justus sit securus.*

նալ կ'ուզէի (*)…. Եւ տակաւին խիստ հեռի կը գտնուինք յառաջադրեալ տեղէն։

Ֆաուստ.— Որչափ ատեն որ ծունկերուս վրայ ոյժ զգամ՝ այս փարակոտ գաւազանս պիտի բաւէ ինծի։ Ի՞նչ օգուտ ունի, կը հարցնեմ, կարճեցնել ճամբան՝ քանի որ սահիլ սողոսկիլ հովիտներու լաբիւրինթոսէն, յետոյ ելնել այս ժայռը՝ որու վրայէն աղբիւր մը վար կը թափի պճպճալով,— ասո՛նք են ահա այն հաճոյքներն՝ որք կրնան այսպիսի ճամբորդութիւն մը ախորժելի ընծայել։ Գարնան ազդեցութիւնը ցարասիներու վրայ կը տեսնուի արդէն, և չոճերն իսկ կը սկսին կրել անոր կենսատու ներգործութիւնը. և մեր անդամոց վրայ ալ չպիտի՞ ազդէ։

Մէֆիս.— Իմ մասիս բան չեմ հասկնար ես, ընդհակառակն ցուրտ ձմեռը կը տիրէ բովանդակ մարմնոյս մէջ. կ'ուզէի որ ձիւն ու սառոյց պատած ըլլար բոլոր ճամբան։ Կարմրորակ լուսնի թանձր սկաւառակը ի՞նչպէս տխրօրէն կը բարձրացնէ իր անկատար պայծառութիւնը։ Այնքան տկար է իր շողը՝ որ գլուխս ամէն անգամ ծառի կամ քարի կը զարնէ։ Կեցի՛ր նայիմ, շրջմոլիկ հուր մը կը տեսնեմ հեռուանց՝ որ տարօրինակ կերպով մը կը վառի. կանչե՛նք զան մեր քով։— Էհ, ինծի նայէ՛, բարեկամ, կրնա՞ս դէպ ի մեր կողմը.

(*) Ընթերցողք գիտեն թէ առասպելական կախարդաժողովի ներկայ գտնուողք որպէս թէ նոխազներու, էշերու, աւելի կոթերու ևն. վրայ հեծած կ'երթային իրենց խորհրդաւոր ժողովատեղին։ Գերմանիոյ Պրոքէն լեռը կախարդական ակումբի կայան համարուած էր երկար ժամանակ։ Ծ. Թ.

գալ։ Ի՞նչու ի զուր բոցեր արձակես այդպէս. հաճէ՛ լուսաւորել զմեզ՝ մինչև որ հոն՝ վերը ելլենք։

Շրջմոլիկ.— Առ քաղաքավարութեան թերևս կարենամ զսպել իմ թեթևսօլիկ բնութիւնս, զի մեր սովորութիւնն է օձապտոյտ շաւիղ մը բռնել մեր արշաւներու մէջ։

Մեֆիս.— Վա՜յ, վա՜յ, տե՛ս սա անպիտանը՝ որ կ'ուզէ իր շարժումները մարդիկներու նմանցնել։ Յանո՛ւն սատանայէն՝ շիտակ գծի վրայ քալէ՛. ապա թէ ոչ՝ կենացդ բոցը կը մարեմ մէ՛կ շունչով։

Շրջմոլիկ.— Կը հասկնամ որ տէր և իշխան ես հոս, և հրամանիդ կը համակերպիմ մտադիւր։ Այլ խորհէ՛ անգամ մը թէ լեռը չափազանց դիւթուած ըլլալով այսօր՝ շրջմոլիկ հուր մ'եթէ ձեզ ճամբայ ցուցնէ՝ չէք կարող ճշդիւ հետևիլ անոր։

---

Ֆաուսթ, Մեֆիսթոֆելես, Շրջմոլիկ
Փոխն ի փոխ երգ

Ցնորքներու երկրին վրայ
Հա՛, կանգ առաւ արշաւը մեր.
Հապա՛, ցուցու՛ր մեզի ճամբայ՝
Կարել անցնիլ այս թաւուտներ,
Այս քանդուն դաշտ և պարեխներ։

Տե՛ս սա անթիւ ծառոց գումար՝
Որք մութին մէջ կը շփշփուին.
Տե՛ս սա ժայռերն սոսկավիթխար՝
Որք ի հիմանց կը տատանին.
Միւս կողմէն հով կը գոռայ յար։

Այս ժայռերու մէջ՝ մոլեգին
Գետք ու վտակք կը խառնուին։
Կը լսեմ ես ջրի կարկաչ՝
Երազանքի քաղցրարմար,
Երերածուփ իղձք անհամար,
Սիրոյ ձայներ տխրահառաչ....։ —
Եւ արձագանք՝ իբըր վէպ հին
Կը կրկնէ զայնս մեր ականջին։

Ու հո՛ւ, շու հո՛ւ հնչեն ձայներ,
Կը հեծեծեն բու և ճայեր՝
Խառնելով երգն իրենց տխուր.
Խոխներէ իւրաքանչիւր
Կ'ելլեն արմատք զարմանազան.
Թեւեր նիհար,
Ոտներ նիհար,
Եւ որովայնք սողուն, գլորուն.
Փլատակաց մէջ կը վխտան
Օձ ու կարիճ, որդ ու զեռուն։

Ոլորածոյ բիւր հանգոյցի
Ոտք միշտ կ'երթայ ու կառչի։
Հո՛ս՝ խարակի մամռուտին մէջ
Կ'երթեւեկեն մուկեր մեծ մեծ։
Հո՛ն՝ թրթռուն ճանճեր հազար
Մեր առջեւէ կը սրանան,
Ու բոցերով իրենց պայծառ
Լուսաւորեն ուղի՛ կածան։

Սակայն այս տեղ՝ ուր կ'առնունք կայ,
Արդեօք մնա՞նք կամ արշաւենք.
Մեր շուրջ ամէն ինչ կ'սպառնայ,

Կը շարժուկի, կը ծռէ դէմք,
Կը մոլորէ, կուտայ հալուած.
Նենգաւոր են թէ՛ վէմ թէ՛ ծառ.
Դողդոջ հուրեր այս սրընթաց
Կը փալփլին, այլ լոյս չե՛ն տար...։

Մեֆիս.— Ամուր մը բռնէ զգեստիս ծայրէն. ահա՛ սար մը միջանկեալ՝ ուսկից Մամոնայի (*) բոլոր շքեղութիւնները կը շողշողան լերան մէջ. սքանչելի՜ տեսարան։

Ֆաուսթ.— Վերջալուսի տխուր շողը ի՜նչպէս տարօրինակ կերպով կը փայլի հովտին մէջ՝ անդունդին մինչև խորը թափանցելով։ Անդիէն ծուխ մը կ'ելլէ, անդիէն՝ վատառողջ գոլորշիներ. միւս կողմէ՝ մառախուղի քօղին տակէն բոց մը կը փալփլի՝ մերթ նեղուկ կածանի մը նման գալարելով օձապտոյտ, մերթ իբր աղբիւրակն՝ եռալով, պճպճալով։ Հոս մարգագետնի մէջտեղէն խիստ հեռուները կը վտականայ այն բիւրաւոր շառաւիղներով, յետոյ յանկարծ ի մի կ'ամփոփուի կուռ ապառաժներու միջև։ Մեր քովիկը կայծեր կը ցայտեն՝ ոսկեղէն փոշի մը ցանելով ամենուրեք։ Այլ դիտէ՛, ի՜նչպէս ժայռերու պատուարը կը բորբոքի, կրակ կ'առնու վերէն վար։

Մեֆիս.— Ի՞նչ կ'ըսես. Մամոնա իշխանը հանդէսին պատշաճ շքեղութեամբ լուսաւորած չէ՞ իր պալատը. զայս տեսնելը բա՛ղդ մ'է քեզի համար։ Աղմկայոյզ կոչնականներն հասած պիտի ըլլան արդէն։

Ֆաուսթ.— Ի՜նչպէս հովը կը խլրտի օդին մէջ.

---

Մամոն՝ չաստուած հարստութեան։ Ծ. Թ.

ի՜նչպիսի սաստկութեամբ կը զարնէ ուսերուս։

Մեֆիս.— Ժայռերու հինօրեայ սարերուն կառչէ՛, եթէ ոչ ամպրոպը մինչև անդունդին խորը կրնայ ընել զքեզ դարահոս։ Ի՜նչպիսի թանձր ամպ գիշերը կը մըթընցնէ։ Մի՛տ դի՛ր ի՜նչպէս ծառերը կը գոռան անտառներու մէջ։ Բուերը կը փախչին ահաբեկ։ Կը լսե՞ս այս դալարագեղ պալատներու սիւներուն ճարճատիւնները, կը լսե՞ս ջարդուփշուր ոստերու չաչիւնը։ Ի՜նչ ուժգին չարժում ցօղուններու մէջ—ի՜նչ սոսկալի սուլում ու սասանում արմատներու։ Իրենց խառնիխուռն զարհուրելի գլորման մէջ՝ կը չաչեն՝ կը ճայթին՝ իրար վրայ տապալած։ Հապա՞ մրրիկներու սուլումն ու գոռումը քարուքանդ անտառներու մէջ։ Կը լսե՞ս հեռուն կամ մեզ մօտ բարձրաւանդակներու մէջի ձայները...։ Է՜հ, լեռն է այն՝ որ իր բոլոր երկայնութեան մէջ թունդ կ'ելլէ դիւթական մոլեգին նուագով մը։

Կախարդուհիք՝ միաձայն

Կախարդուհիք Պրոքէն կ'երթան։
Կանանչ է ունդ, դեղին՝ խոզան։
Հո՛ն մինակուկ՝ այդ լերան վրայ
Բոլոր կաճառ կը միանայ։
Հոն բազմելով իբրև իշխան՝
Մեզ կ'ընդունի վեհ Ուրիան։

Ձայն մը

Պառաւ Պօպօ գայ հունէն՝
Շո՜ւտ, տեղ բացէ՛ք խոզի՛ն, իրե՛ն։

Պարը

Ներոց ըլլանք մենք ակնածու։

Անցի՛ր պատուտ մարդերով քու...։
Կախարդուհին խողին վրայ,
Ցետոյ բոլոր խումբը կուգայ։

Ձայն.— Դուն ո՞ր ճամբէ կ՚երթաս։

Ուրիշ ձայն մը.— Իլսենդէյնի ճամբէն՝ ուր բու մը կը տեսնեմ որ իր բոյնէն կը սաստէ գէշ աչքերով։

Ձայն մը.— Ո՛հ դժոխքի ծնունդ, ի՞նչու այդպէս շուտ կը վազես։

Ուրիշ ձայն մը.— Անպիտանը խածաւ զիս. տե՛ս աս բացած վէրքը։

Կախարդուհիք. Պար

Ճամբան երկար, անցորդք շատուոր.
Եւ ո՛րքան մեծ՝ իրենց ժխոր.
Աւելն կոթ չդիմանար.
Կուլայ տղեկ, կը տոտէ մայր։

Կախարդք. Կէս-պար

Կ՚աշտանակենք մենք խեղճօրէն.
Կանայք մեզմէ միշտ առջև են։
Անոնք մղմամբ սատանային
Բիւրաւոր քայլ յառաջ կ՚անցնին։

Ուրիշ կէս-պար

Իրաւ է խօսքդ այդ ապաքէն.
Կանայք բիւր քայլ առնել պէտք են՝
Արշաւելու առիոյ՝ պալատ,
Մինչ մէ՛կ ոստմամբ կը հասնի մարդ։

Ձայներ, վերեն.— Ցառա՛ջ, յառա՛ջ. դուրս ելէ՛ք ապառաժներու այդ ծովէն։

Ձայներ, վարեն.— Որքան կը փափաքինք կատա-

րը ելլել. այլ մեր բոլոր ջանքերու հակառակ՝ տիղմին մէջ թաթղուած կը մնանք միշտ։

### Երկու պարերը

Ա՛լ չկայ աստղ, հովն իջած է.
Լուսին քօղով է ծածկուեր,
Այլ պարն ուրախ կը վազվռտէ՝
Արձակելով պայծառ լոյսեր։

**Ձայներ՝** *վարէն.*— Կեցի՛ր, կեցի՛ր։

**Ձայն՝** *վերէն.*— Ձիս հետդ ա՛ռ, հետդ ա՛ռ զիս, կ՚աղաչեմ։ Երեք հարիւր տարիէ հետէ կ՚ելլեմ ու կ՚ելլեմ, ու դարձեալ չեմ կարող կատարը հասնիլ. ո՛րքան կը փափաքիմ նմաններուս հետ գտնուիլ։

### Երկու պարեր

Աւելի կոթ, քաղ, երկժանին
Պատրաստ են. թող հեծնէ ձէն մին։
Ով անդրուար չունի այսօր՝
Նա կորսուած է իրաւ որ։

### Կէս կախարդուհի. *վարը*

Որքան և մեծ ձիգեր թափեմ՝
Միշտ եղած տեղս կը մնամ իմ.
Մինչ ուրիշներն յառաջադէմ՝
Ես վարն յաւէտ կը գտնուիմ։

### Կախարդուհեաց *պար*

Շաղախի տաշտն (*) խիստ լաւ նաւ մ'է,
Իբր առագաստ քուրջ կը պարզէ։

---

(*) *Գր. Auge:*

Ով չնաւեր սոյն այս ժամուս՝
Նաւարկելէ ա՛լ կարէ յոյս։

Երկու պարեր

Աւասիկ ա՛լ կը հանինք վեր.
Ուրեմն ամենքս իջնա՛նք գետին.
Եւ ասկէ մեր քաջ ընկերներ
Ամենուրեք թող տարածուին։

*Մեփիս.*— Տե՛ս, ինչպէս իրար կը հրեն կը հրմըշտըկեն, կը ցատքեն, կ՚ոռնան, կը սուլեն ու կը խըլըրտին, կը քալեն ու կը շաղփաղփեն, կը փողփողան, կը շողշողեն, կը հոտին ու կ՚այրին։ Կախարդուհիներու իսկական տարր մ՚է այս...։ Հապա՛, ամուր մ՚ինձ բռնէ՛, ապա թէ ոչ շատ չանցած կը կորսնցնենք զիրար։ Ո՞ւր ես, Նայիմ։

*Ֆաուսթ, հեռուէն.*— Հո՛ս եմ։

*Մեփիս.*— Ի՞նչ, մինչև հո՛ս քշուեր ես արդէն։ Պէտք է ուրեմն որ տանուտիրական իրաւունքս գործածեմ շուտով։— Տեղ բացէ՛ք, տեղ բացէ՛ք՝ Նայիմ. տեսէ՛ք ահա Պ. Փետրագունդը (*) կուգայ։ Տե՛ղ բաց, տեղ բաց, ո՛ խուժան։— Հոս եկո՛ւ, պարոն վարդապետ. բռնէ՛ զիս, ու մէ՛կ ոստումով ազատինք այս խառնաղանձէն. շա՛տ անհեթեթ տեսարան մ՚է այս նոյն իսկ իմ նմաններուս համար։ Հո՛ն, վա՛րը, տարօրինակ շողիւնով բան մը կը փայլի. կ՚ուզեմ դէպ ի այն մացառը դիմել։ Եկո՛ւ, եկո՛ւ սողոսկի՛նք մինչև հոն։

() Տեսակ մը խաղալիկ, ֆր. Volant.

Ֆաուսթ .— Օ՜ն, տա՛ր զիս հոն, ո՛վ ոգի հակառակութեան։ Ի՞նչ իմաստուն ընթացք, կախարդաժողովի գիշեր մը Պրոքէն լեռը կ'ելլենք՝ որպէս զի առանց պատճառի մեկուսացած մնանք հոս։

Մեֆիս — Ի՞նչ կը տեսնեմ. դիտէ՛ ատ խայտապտուն բոցերը. չէն ու զուարթ ակումբ մ'է այն։ Այդ արարածներուն մէջ գտնուիլը՝ մեկուսանալ չէ կարծեմ։

Ֆաուսթ .— Սակայն կը նախընտրեմ վե՛րը գտնուիլ։ Արդէն կը տեսնեմ բոցի ու մուխի յորձանքներ. խուժանը հոն չարութեան ոգւոյն կը դիմէ։ Մէկ շատ հանելուկներ կարծեօք լուծում պիտի գտնեն այնտեղ։

Մեֆիս .— Մէկ շատ հանելուկներ ալ հոն ծնունդ ու գոյութիւն կ'առնուն։ Այդ ժխորալի խառնաղանճը թողլով հոս պիտի հանգչինք լռին։ Վաղուց ընդունուած ճշմարտութիւն մ'է թէ բարձր ընկերութեան մէջ գտնուողք փանաքի ընկերութեանց գործեր կը կատարեն...։ Ի՞նչ է այդ. դեռահաս կախարդուհիներ կը տեսնեմ՝ մերկ բոլորովին, մինչ պառաւուկ կախարդուհիներ քօղարկուած են զգուշութեամբ։ Ո՛ դուք, իմ սիրոյս՝ հաճոյալի վարմունք ունեցէ՛ք, ինչ որ մեծ նեղութիւն չէ ձեզ, և միևնոյն ժամանակ կ'օգնէ կատականքի։ Մի քանի նուագարաններ կը հնչեն. անիծեա՜լ խառնաձայնութիւն՝ որու հարկ է վարժուիլ։ Եկո՛ւ, եկո՛ւ ինձ հետ. այդպէս պէտք է ըլլայ, ես առջևէդ կը քալեմ ու նորս կը հրամցնեմ քեզ։ Իմ կողմէ նոր ծառայութիւն մ'է՝ զոր կը մատուցանեմ։ Ի՞նչ կ'ըսես, բարեկամ, պզտի տեղ մը չէ այս. նայէ՛ անգամ մը, հազիւ ծայրը կը տեսնուի։ Հարիւրի չափ հուրեր կը վառին շրջանակին մէջ. կը պարեն, կը

չաղփաղփեն, կը խոհակերեն, կ'արբենան ու կը սիրեն․ ըսէ՛ նայիմ, ասկէ աւելոր բան ո՞ւր կրնայ գտնըւիլ։

Ֆաուստ․— Զմեզ այս տեղս մտցնելու համար՝ իբրև սատանա՞յ պիտի ներկայանաս։

Մեֆիս․— Թեպէտ քաջավարժ եղած ըլլամ ծըպտեալ մնալ ելնելու՝ սակայն հանդիսաւոր օր մը հա՛րկ է անշուշտ որ մէկն իր պատուոյ ժապաւէնները ցուցնէ։ Ծնրակապի շքանշան չունիմ այլ սատանի յատուկ ձիւոտքը խիստ մեծ պատիւ ունի հոս։ Կը տեսնե՞ս սա խըղունջը՝ որ կու գայ սող ի սող, և միևնոյն ժամանակ կը քննէ կը փորձէ իր եղջիւրներով, պէտք է փոքր ինչ ճանչցած ըլլայ զիս։ Սակայն հոգ չէ։ եթէ ուզեմ՝ հոս ինքզինքս կրնամ յայտնել։ Եկո՛ւ հետս, մէկ հուրէ միւսը անցնինք․ ես խնդրակը կ'ըլլամ, դու ալ տարփածուն։ (Կիսովի սպառած ածուխներու շուրջ բազմող խմբի մ'անձամբ ։) Սիրելի պարոններ, ինչ կ'ընէք հոս․ պիտի հաւնէի ձեր ընթացքը եթէ ճիշդ մէջտեղը՝ ժխորին մէջ՝ աղմկասէր երիտասարդութեան հետ շնորհքով տեղաւորուած տեսնէի զձեզ․ ո՛րչափ ժամանակներ ունի մէկը՝ իր տան մէջ մեկուսացած մնալու։

### Զօրապետ

Անմիտ յիմար մ'է հաւատացողն ազգին․
Զո՞ւր ջանք է անոր սիրոյն աշխատիլ։
Թէ՛ ժողովրդեան, թէ՛ կանանց աչքին
Գերիվեր է միշտ տարիք նորածիլ։

Պաշտօնեայ

*Հիներ ընտրելի են ինձի համար.*
*Հիմա լաւ ճամբէ հեռու են ամենք.*
*Երբ որ ունէինք իշխանութիւն մենք՝*
*Աշխարհ կ'ողջունէր իրեն ոսկեդար:*

Ապահաս (*)

*Մենք չէինք անմիտ, կը վկայէ Տէր,*
*Մեր ընթացք ու գործ լաւ կը յաջողէր:*
*Սակայն մեր արուեստ հիմայ գէշ կ'երթայ,*
*Ամէնքը կ'ուզեն բռնել նոյն ճամբայ:*

Հեղինակ

*Ո՞վ այսօրուան օր յօժարի կարդալ*
*Երկար այլ ընտիր չէնք շնորհք գրուած:*
*Երիտասարդաց սեպէ ամէնքն ալ՝*
*Յանձնապաստան են ինքզինքնին հաւնած:*

Մեֆիսթոֆելես, *յանկարծ սատանի ձեւ երեւալով.*

*Կեանքիս ա՛լ վերջն է. ա՛լ վերջին անգամ*
*Դէպ ի Պլոքսպերկ ես ճամբայ կ'ելլամ:*
*Իմ տկար մտքով կը հասկնամ թէ*
*Երկրի կործանում խիստ մօտալուտ է:*

Կախարդուհի, *հին քաներ ծախող.*— *Պարոննե՛ր, մի՛ անցնիք այդպէս առանց առիթը փախցնելու: Տեսէ՛ք իմ ուտեստեղէններս. ամէն տեսակէն ալ ունիմ: Կրպակիս մէջ չկայ բան՝ որու նմանը գտնուի, չկայ բան՝ որու գէթ անգամ մը՝ վնասը տեսած չըլլան աշխարհ ու մարդիկ. չկայ դաշոյն մ'որ արիւնա-*

(*) *Parvenu.*

թաթառ չըլլայ, ինչպէս չկայ բաժակ մ'որ կայտառ մարմնոյ մը մէջ լափլփիչ անարկու. Թոյն մը չըլլայ թափած: Այս զարդերէ մէն մին առաքինի կին մը գլխէ հանած է. այս թուրերէ մէն մին դաշինքներ խզած է և կամ թշնամին զարկած ետևէն:

Մեֆիս.— Խնամի՛, կը տեսնեմ որ ժամանակիս ընթացքը չես ըմբռնած. եղածը եղած լմնցած է: Նորոյթներ ձախու հանէ՛, քանզի այսօրուան օրս ա-նո՛նք միայն ունին պատիւ:

Ֆաուստ.— Ըլլայ թէ ինքզինքս մոռնամ...: Տօ-նավաճառ մ'է այս, ոչ այլ ինչ:

Մեֆիս.— Բազմութեան յորձանքը դէպ ի վեր կ'արշաւէ: կը հրուիս՝ ու կը կարծես թէ հրողը դու ես:

Ֆաուստ.— Ո՞վ է սա կինը:

Մեֆիս.— Աղէկ դիտէ՛. Լիլիթն է:

Ֆաուստ.— Ո՞վ, ըսիր:

Մեֆիս.— Ադամի առաջին կինը: Զգուշացի՛ր անոր գեղեցիկ վարսերէն, զի ատով կը փայլի միայն: Անգամ մ'որ երիտասարդ մը բռնուի անոր՝ ա՛լ իրեն համար ազատում չկայ:

Ֆաուստ.— Հոն երկու հոգի կը տեսնեմ. պառաւ մը ու մանկամարդ մը՝ որք երկար պարելէ ետք նըս-տած են ուժասպառ:

Մեֆիս.— Այսօրուան օրս դուլ դադ որ ըսուած բանը չկայ. միշտ նոր կաքաւ մը կը գտնեն: Օ՛ն, ի պար հրաւիրե՛նք զանոնք:

Ֆաուստ, *մանկամարդին հետ պարելով.*

Երէկ երազ մը հաճելի
Ցոյց տուաւ ինձ խնձորենի.

Երկու պտուղ կը կրէր ան.
Անմիջապէս ելայ վրան։

Մանկամարդը

Քու երազի խնձորք կրկին
Են խնձորներ մայր Եւային.
Այլ կը տեսնես թէ իմ պարտէզ
Երկու խնձոր ունի նոյնպէս։

Մեֆիստոֆելէս, *պառաւին հետ.*

Երէկ երազ մը ահռելի
Մի հերձուն ծառ ցուցուց ինծի.
Ստոյգ... մը, մի՛ բարկանար,
Ուրախութեանս չափը չկար։

Պառաւը

Բարով եկար, հազար բարով,
Ո՛ իմ ասպետ ձիու ոտքով

. . . . . . . .

. . . . . . . .

*Ցեսոյհայեցեան* (*). — Ի՞նչ կ՚անցնի կը դառնայ ձեր

---

(*) Խիստ երկար պիտի ըլլար բացատրել հոս այն հազարումէկ ակնարկութիւններն՝ որք այս անձինքներուն անուանց ու վերագրեալ խօսուածոց ներքեւ պահուած կը գտնուին։ Հեղինակը՝ գրքին բոլոր այս մասին մէջ, ի մասնաւորի անկէ վերջ եկող միջախաղին (Intermède) մէջ՝ իր ժամանակի հին հին վեհապետներու, պաշտօնեաներու ու քերթողներու երգիծանքն ըրած է՝ Արիստոփանի ոճով։ Թարգմանիչը Ֆաուստի այս առաջին մասին անթերի մէկ թարգմանութիւնը ընծայած ըլլալու համա՛ր միայն չյապաւեց այս հատուածները՝ որոնց հեգնական իմաստն անհասկանալի է նոյն իսկ...։

միջև, ո՛ անիծեալ արարածներ։ Միթէ ձեզ հասկցուած չե՞ն վաղուց թէ ոգիներն հասարակ մահկանացուաց պէս չեն շարժիր։ Ի՞նչպէս ուրեմն ելեր մեզ՝ մարդկանցս նման՝ կը պարե՞ք։

Գեղուհին, *պարելով*.— *Այդ մարդը ինչ կը խառնուի մեր պարելուն։*

Ցասուք, *պարելով*.— *Չկայ բան՝ ուր այս մարդն իր քիթը չխօթէ։ Հարկ է որ ուրիշներուն պարելը կշռէ ու դատէ։ Եթէ մէն մի քայլի վրայ իր կարծիքը չյայտնէ՝ այդ քայլն իբրև առնուած չհամարուիր։ Իրեն ամենէ ծանր եկածն ուրիշներու յառաջդիմութիւնն է։ Եթէ՝ ինչպէս ինք իր հին ջաղացքին մէջ կը դառնայ ու կը դառնայ՝ դու ալ նոյնպէս բոլորակի դառնայիր՝ և մանաւանդ զինք բարևէիր յորդանօք՝ այն ատեն ամէն ինչ ճիշդ և կարգաւոր պիտի գտնէր։*

Սրբաներեւոյթեան.— *Ի՞նչ, կը պարէ՞ք տակաւին. անլուր բան մ՚է աս ձեր ըրածը։ Կորի՛ք ասկէ։ Մենք ամէն ինչ պարզած լուսաբանած ենք արդէն. սատանաներու անլիքոր մասը չափ կամ թուոմբ ինչ է՝ չգիտեր. յոյժ զգօն ենք մենք, այլ սակայն մէկտեղ աշխարհ տակաւին լի է այդ յիմարներով։ Ո՛րքան երկար ժամանակներ նուիրած եմ այս գաղափարին. և սակայն ամէն ինչ տակաւին խառնակ է ու չփոթ։ Զարմանալի՜ բան, զարմանալի՜։*

Գեղուհի.— *Թո՛ղ զմեզ ու մի՛ գլուխ ցաւցներ այդպէս։*

Սրբաներեւոյթեան.— *Ոգինե՛ր, բացէ ի բաց կը զրուցեմ ձեզ. չեմ կրնար տանիլ մտքի բռնակալութեան, և ես չեմ ուզեր երբեք ի գործ դնել զայն։*

(Պարերը կը շարունակեն։) Կը տեսնեմ թէ ինչ որ ըսեմ այսօր՝ զուր է, սակայն և այնպէս համբերութիւն մը կ'ընեմ միշտ, և կը յուսամ հուսկ յետոյ նուաճել սատանայ ու պուէտ։

Մեֆիս.— Հիմայ ճահիճի մը մէջ պիտի երթայ սուզուի. այդ կերպով ահա կը պաղշտկի սիրտը։ Եւ, երբ տզրուկները անոր յետոյքը ըմբոշխնելով ծծեն՝ թէ՛ ոգիներէ ու թէ՛ ոգեկից խօսքերէ պիտի բուժուի։ (Ֆաուստի որ դադրած է պարելէ։) Ինչու թողուցիր որ մեկնի այդ աղջիկը՝ որ գեղեցիկ կ'երգէր պարի միջոցին։

Ֆաուստ.— Ա՜հ, իր երգած պահուն՝ կարմրագոյն մուկ մը դուրս ելաւ բերնէն։

Մեֆիս.— Է՜հ, ի՞նչ կ'ըլլայ եղեր. խիստ բնական է այդ։ Պէտք չէ այդպիսի բաներու ուշադրութիւն ընել։ Բաւական է որ մուկը գորշագոյն չըլլայ։ Մութընուլուսին ո՞վ կարևորութիւն կուտայ ատանկ բանի մը։

Ֆաուստ.— Ո՜հ, ի՞նչ կը տեսնեմ։

Մեֆիս.— Ի՞նչ։

Ֆաուստ.— Կը տեսնե՞ս, ո՛ Մեֆիսթօ, կը տեսնե՞ս թալկահար գեղանի աղջիկ մ'որ հեռուն կեցած է առանձին. նուաղկոտ կերպով մը կը քաշուի կը հեռանայ, և իր ոտքերը կաշկանդուած են շղթաներով։ Բարի և անոյշ Մարկըրիդն է կարծես։

Մեֆիս.— Թո՛ղ զայդ. օգուտ մը չկայ անկէ։ Անշունչ պատկեր մ'է այն, ցնորական, ուրուական մը։ Անոր նայիլն անգամ աղէկ չէ. իր անքթիթ նայուածքը արիւնը կը սառեցնէ դիտողին։ Մեդուսայի անու-

նը լա՞ծ ես երբէք։

Ֆաուստ.— Իրաւցընէ մեռելի աչքեր են անոնք՝ զորս սիրեցեալ աջ մը չէ փակած՝ հոգին աւանդած միջոցին։ Սակայն կուրծքը ճիշդ Մարկըրիդին է. այն անոյշ մարմինն է ճշդիւ՝ զոր վայելեցի։

Մեֆիս.— Կախարդական երեւոյթ մ'է այդ, խե՛ղճ յիմար. դիտողը կը կարծէ իր սիրածը տեսնել։

Ֆաուստ.— Ի՜նչ հեշտութիւնք... և ի՜նչ տառապանք։ Չեմ կրնար վայրկեան մը աչքս հեռացնել անկէ։ Սակայն զարմանալի՜ բան. ի՞նչ է իր չքնաղ կուրծքը զարդարող այն կարմիր ժապաւէնը՝ որուն լայնքը դանակի մը կռնակէն աւելի չէ։

Մեֆիս.— Է՜հ, ես ալ կը տեսնեմ. նա կրնայ թեւին տակ առնուլ տանիլ իր գլուխը, զի Պերսէոս կտրած է զայն։— Այդ ցնորքը միտքդ պիտի պաշարէ՞ միշտ։ Եկո՛ւ սա պզտի բլուրը ելլենք՝ որ Բրադերէ աւելի զուարթ է ու զեղատեսիլ։ Ո՜հ, չեն խաբած զիս. թատրոն մը կը տեսնեմ։ Է՜հ, ի՞նչ ներկայացուած կուտան արդեօք։

Սերվիպիլիս — Նոր խաղ մը կը շարունակեն ներկայացնել, եօթին վերջինն է այն։ Սովորութիւն է հոս որ եօթը խաղ տեսարան հանեն։ Զայն գրողը արուեստասէր մ'է, և ներկայացնողք ալ նոյնպէս արուեստասէրներ։ Ներեցէք, պարոններ, եթէ կը թողում զձեզ, զի իմ արուեստասիրութիւնս ալ վարագոյրը բանալու վրայ կը կայանայ։

Մեֆիս.— Պլօքսպերկի վրայ քեզ հանդիպելս խիստ բնական կը գտնեմ. ճիշտ քու տեղդ է Պլօքսպէրկ։

# ՄԻՋԱԽԱՂ(*)

Կախարդաժողովի գիշերուան մը երազ
կամ
Ոսկի հարսնիք Օպերոնի եւ Տիտանիայի (**)

## Տնօրէն Թատրոնի

*Մէքէտէնկի (***) որդի՛ք, այսօր*
*Հանգիստ կ'առնենք մեր յոգնենքէն.*
*Հինաւուրց լեռ, զով հովիտներ*
*Տեսարանի վայր կը կազմեն։*

---

(*) Ֆաուսթի մի շատ հատուածները եւ մանաւանդ այս տեսարանի թարգմանութեան ժամանակ՝ հարկ եղաւ մեզ բաց ի Ժերար տը Ներվալի աշխատութենէն՝ (որ նոյն ինքն օգտուած է Մօզլէեան ապագրութենէ), շարունակ մեր աչաց առջ ունենալ նաեւ Հանրի Պլազի թարգմանութիւնը, եւ բաղդատել՝ ճշդել ու լրացնել զանոնք իրարմով։ Կրնանք առանց պարծանաց հաւատալ թէ Ֆաուսթի հայ թարգմանութիւնը կարդացողները Գէօթէի այս վեհ ու անմահ գործին տարօրինակ կերպով մութ ու անիմանալի կէտերուն վրայ շատ աւելի որոշ եւ լուսաբանեալ գաղափար մը պիտի ունենան քան թէ այլ երկրին թարգմանութիւններէ մին կարդացող լեզուագէտ ազգայիններս, եւ կ'աւելցնենք՝ քան նոյն իսկ այն Գերմաններուն մեծամասնութիւնը՝ որք բնագրին վրայ կը կարդան իրենց պանծալի հեղինակին խրթին հրաշակերտը։

(**) Թէպէտեւ Օպերոնի եւ Տիտանիայի անունները ընթերցողին միտքը կը տանին Շէքսփիրի Ալեկոծութիւն եւ Ամառնային Գիշեր Երազներուն՝ այլ սակայն Գէօթէի այս միջախաղը Անզ—

(***) Վէյմարի Թատրոնի տնօրէն։

## Մունետիկ

Ոսկի հարսնիք կատարելու
Յիսուն տարի պէտք է անցնի.
Սակայն կռիւք դադրած են ա՛լ,
Ու խիստ հաճոյ է ինձ ոսկի։

## Օպերոն

Այս դէպքի մէջ, ո՛ պարոններ,
Ցուցէ՛ք ձեր խելք ինձի նման.
Ձեր թագաւորն ու թագուհի
Այսօր կրկին կը միանան։

---

(**) լիացի բանաստեղծին յիշեալ երկերուն հետ բնաւ յարաբերութիւն մը չունի։ Այս Ոսկի Հարսնիքը (Եւրոպացիք այս անունը կուտան ամուսնութեան յիսներորդ տարին լրանալուն առթիւ կատարուած հանդէսին), պարզապէս երգիծանք մ'է՝ ուր Կէօթէ կը ծաղրէ ու կ'այպանէ իր դարուն գրական եւ իմաստասիրական այլանդակութիւնները։ Մեզ համար որ չենք ճանչնար այս միջախաղի մէջ յիշուած անձինքը՝ անշուշտ այնքան մեծ շահեկանութիւն մը չընծայեր այս տեսարանս։ Այլ սակայն եթէ անծանօթ են մեզ անձինք՝ սխալ սիսդէմներ եւ արտառոց վարդապետութիւններ ամէն տեղ ու ամէն ժամանակ կը տեսնուին, ու յարձակումն ալ անոնց վրայ է աւելի։ Խռէյապաշտք, ցերընապաշտք, միպականք, ուղղափառք եւն. կարգ առ կարգէ կուգան եւ իրենց միտքը կամ դաւանանքը կը պարզեն քանի մը տողով, եւ որպէս զի երեւակայութիւնն ալ իր մասն ունենայ՝ Արիէլ, Օպերոն, Փուք, Տիտանիա միջախաղիս մէջ տեսարան կուգան՝ զուտ երեւակայական նկարագիր մը տալով այս ամէն բաներու։ Ինչպէս կը տեսնէ ընթերցողը՝ գերմանական նոյն երգիծանութիւն մ'է այս՝ որ իրականին զօրութիւնը կամ կարծրութիւնը բաղերել կը ձգտի՝ ցոլի ու մռայլի մէջ պարուրուած։

### Փուք (*)

*Կը հանէ Փուք խիստ անշնորհ,*
*Ցատքռտելով ծուռիկ մուռիկ.*
*Իր ետեւէն արշաւակի*
*Կուգան ուրիշ մի շատ ոգիք։*

### Արիէլ (**)

*Իր հրաշքանչ երգոց համար*
*Կ'ուռեցնէ Արիէլ ձայն.*
*Ստէպ նուագն է ծաղրելի,*
*Այլ յաջողուած կը գտնէ այն։*

### Օպերոն

*Մեր միութիւն ի՜նչ գեղեցիկ.*
*Թող օրինակ առնուն մեզմէ։*
*Երբ ընդ երկար էրիկ կնիկ*
*Բաժնեն՝ յայնժամ սէր կը տիրէ։*

### Տիտանիա

*Էրիկ կնիկ կը կռուըտին.*
*Ջանանք կ'ուզե՞ն հաշտել դիւրաւ...*
*Պարոնը տա՛ր դէպ ի հիւսիս,*
*Իսկ տիկինը՝ դէպ ի հարաւ։*

---

(*) Շէքսփիրի երեւակայութեան մէջ ծնունդ առած ոգի՝ որ Օպերոնի ծառայութեան մէջ՝ անոր կամքերը կը կատարէ ու խեղկատակութիւններով կը զուարճացնէ զինք։

(**) Փոքր ոգի օդային՝ որ Աչկինծուրիւն խաղին մէջ կը ծառայէ կախարդին։

Նուագախումբ, սաստկաձայն

*Կնճիթք ճանճի, կտուցք թռչնոց՝*
*Սայլակերպուած տարբեր տարբեր,*
*Կրկոան գորտք, ճչող ծղրիդք,*
*Բաղ երաժիշտք տա՛նք են մեր։*

Մենանուագ

*Հովուականին (*) անուանի*
*Մեղեդիներն նուագաւոր.*
*Շրնկֆշրնափն ըրէ՛ք մտիկ*
*Ուռած փքած քթին անոր։*

Նորակազմ Ոգի

*Նորոգ ծնունդ առած սաղմի*
*Պէտք կցեն թեւ, որովայն.*
*Միջատէ ալ պակաս բան մ՚է,*
*Այլ սակայն միշտ քերթուած մ՚է այն։*

Նորասէր Ամոլ (**)

*Մռայլներու ու ցօղի մէջ։*
*Կ՚առնուս քայլեր դանդաղ կամկար.*
*Գէշ չէ քալուածքդ ծանր ու զգօն,*
*Սակայն երբէք բարձրը չելլար։*

Հեստաբերիր ուղեւոր

*Դիմակաւոր խումբ մը չէ՞ սա.*
*Հաւատալ պէ՞տք եմ իմ աչքի։*
*Տեսնե՞մ պիտի ես զՕպերոն,*
*Քան չաստուածներ իսկ գեղանի։*

---

(*) *Cornemuse.*

(**) Նորատի ամոլի խօսքերը Մ. Թեւս Վիէլանտի ուղղուած ըլլան, զի զարմանալի կերպով կը յարմարին այս բանաստեղծին՝ որ իր Օպերոն քերթուածեան մէջ մախող հետեւող մէ Արիոստէի։

### Ուղղափառ

Զունկին եղջիւր, մազիլ ու պոչ,
Ինծի կասկած կ'առթեն սակայն,
Քանզի ամէնքըն աստուածոց
Կը նմանին հին յունական (*):

### Արուեստագէտ հիւսիսի

Ուրուագիծներ ու նախարտակ,
Ահա՛ ըրածս մինչև հիմա.
Սակայն ունիմ ես նպատակ
Ուղևորիլ դէպ Իտալիա:

### Ձեւապաշտ

Գթացէ՛ք դուք իմ վատ բաղդի.
Ո՞ւր ձեր շանթեր, աստուա՛ծք վսեմ:
Միայն երկու վհուկք՝ փոշի
Գործածած են իրենց վարոց:

### Դեռահաս Վհուկ

Պառաւներու համար են պէտք
Պարեզօտներ, կերպ կերպ փոշի,
Ես քաղիս վրայ նստած եմ մերկ,
Զի պակասութիւն մարմինս չունի:

---

(*) Շիլլէր տաղ մը յօրինած էր խիստ գեղեցիկ՝ ուր իբր բանաստեղծ՝ յունական գեղածիծաղ դիցաբանութեան զովեստը կ'ընէր: Ասոր վրայ մեծ աղմուկ մը փրթաւ գ'րմանացի աստուածաբաններուն մէջ որք Շիլլերի բանաստեղծական գաղափարին լուրջ նշանակութիւն մը տալով՝ կը բողոքէին անոր ամբարշտութեան դէմ: Շիլլերի այս քերթուածին ահա ակնարկութիւն կ'ընէ **Ֆաուստի** հեղինակը:

## Խաբուն

Դո՛ւ ալ ընդ հուպ, մատղա՛շ աղջիկ,
Ճիշդ մեզի պէս ըլլաս պիտի.
Այդ քու մարմին աղուոր՝ փափկիկ
Օր մը, այո՛, պիտի փտի։

## Եկեղեցւոյ Երաժշտապետս

Կո՛ւցք թռչնոյ, ձանձր կնճի՛թք,
Մի՛ բնութիւնն ինձ սքօղէք.
Կրկռան գո՛րտք, ճչող ծղրի՛դք,
Ո՛հ, գոնէ չափն ճիշդ պահեցէ՛ք։

## Հողմացոյց՝ մէկ կողմ դարձած

Լա՛ւ և ընտի՛ր ընկերութիւն.
Գեղ ու շնորհ ամենուրեք.
Արք և տիկնայք՝ ամենքն ազնիւ.
Ասկէ աւել ի՞նչ կը փնտռէք։

## Հողմացոյց՝ ուրիշ կողմ դարձած.

Եթէ երկիր ճեղքուելով
Ձկլլէ այս անարգ խուժան՝
Ես մտադիր մինչև գեհեան
Պիտի նետուիմ մէ՛կ ոստումով։

## Ընծայք (xénies), (*)

Տեղւոյս յարմար միջատներ մենք՝
Մկրատներով ենք լաւ զինուած՝

(*) Կէօթէ ու Շիլլ՛ըր հրատարակուած կծու ոտանաւորներու հաւաքածոյ՝ ուր Գերմանիոյ բոլոր հեղինակները նշաւակ եղած էին իրենց հեգնութեանց. Ինչպէս հոս՝ նոյնպէս եւ այդ գըրուածքի մէջ՝ տեսարանը դժոխքի մէջ է։

Որ մեր մեծ–Հօր Սատանայի
Իշխանութեան պատիւ ընենք:

Հենինկս (*)

Ո՛հ, ի՛նչպէս մեզ կ'առնուն ծաղրի,
Անմեղունակ ի՛նչ կատակներ.
Մտիկ ընողք կարծեն պիտի
Թէ ըլլան լաւ սրտերու տէր:

Մուզայածին (**)

Բոլոր սրտով ՚ես կը սիրեմ
Տխուր ակումբն վհուկներուն՝
Զոր կը վարեմ խիստ լաւագոյն
Քան Մուզայից խումբը վսեմ:

Երբեմն ոգի ժամանակի (***)

Բարի հոգւոց՝ գռներ բաց են.
Պլօքսպերկ է մի վեհ Պառնաս.
Դուն կեղծամիս բռնէ՛ ծայրէն՝
Որ հոն կոկիկ տեղ մը գտնաս:

Հետաքրքիր ուղեւոր

Ըսէ՛ք ինծ, այս մարդ աննման (****)
Որո՞ւ ետին ինկած վազէ.
Ամէն անկիւն կը քրքրէ ան՝
Որ վեր հանէ մի Յիսուսեան:

---

(*) «Ընծայններու» մէջ նշաւակուած հեղինակներէ մին:

(**) «Մուզայք» անուն գրական հանդէսի մը խմբագիր:

(***) Հէնինկսէ խմբագրուած ուրիշ օրագիր՝ ուր չարաչար նշանակուած է Կէօթէ:

(****) Այս տողերս ուղղուած են Նիքօլաիի դէմ՝ որ «Ուղեւորութիւն յԵւրոպա» գրքին մէջ հետաքրքրութեամբ կը փնտռէր ու մատնանիշ կ'ընէր այն անձինքը՝ որոնց վրայ կասկած ունէր թէ ճիզվիթներու ընկերութեան մասնակցութիւն ունենան:

### Կռունկ

Ջինջ թէ պղտոր ջուրերու մէջ
Ձուկ կ'որսամ ես ամէն ատեն.
Այլ ջերմեռանդ անձինք ստէպ
Դեւերու հետ խառնուած են։

### Աշխարհասէր

Ջերմեռանդներ միշտ կը գտնեն
Հաւատքի մէջ միջոց ու զէն.
Պլօքսպերկի վրայ ապահով
Ունին անոնք գաղտաժողով։

### Պարող

Ահա կուգան պարել նոր նոր.
Զարհուրիչ ի՞նչ է այս գոչիւն.
Եղէգանց մէջ միօրինակ
Տառեղի է այդ քրթմնջիւն։

### Վարդապետական (*)

Երկուանքի դէմ քննութի՛ւն կայ,
Չեմ վարանիր ես վճիռ տալ.
Զի եթէ բան մ'է սատանայ՝
Ի՞նչպէս կրնայ բան մը չըլլալ։

### Իտէալիստ

Ցնորք, երազ՝ իր ճամբէն դուրս
Մարդուս միտքը կը շեղեն յար.

(*) Հոս հեղինակը զԳերմանիա յառաջացող զանազան աղանդները իմաստասէրներու շարք մը կը հանէ ի հանդէս. աղանդներ որք ատեն ատեն բոլոր աշխարհի մէջ ալ ունեցած են իրենց կուսակիցները։

Թէև մեծ անձ մ'ըլլամ՝ այսօր
Կը սեպուիմ ես անխելք յիմար։

### Իրապաշտ

Լութեան խորն զննելով ես՝
Իմ միտք խոտոր ճամբայ առաւ.
Այսօր կ'զգամ ստուգապէս
Թէ իմ գնացք ճիշդ չէ՛ բնաւ։

### Գերբնապաշտ

Այս ի՜նչ ակումբ, ի՜նչ ցնծութիւն.
Կ'ուրախանամ բոլոր սրտիւ.
Զի դժոխքին վրայ կրնամ ես
Արքայութիւնն դատել ճշտիւ։

### Սկեպտիկեան

Հոս գտնուող այս բազմութեան
Հաճելի են ցնորք, պատրանք.
Դեւ ու երկբայ են նոյնայանգ (1),
Պէտք է ուրեմն որ մնամ հոս։

### Եկեղեցւոյ երաժշտապետ

Կտո՛ւցք թռչնոց, ճանճի կնճի՛թք,
Յարգեցէ՛ք չափն երգոց մէջ ձեր.
Կրկուան գո՛րտք, ճչող ծղրի՛դք,
Ո՜հ, ի՜նչ խեղճուկ նուագողներ։

### Ճապուկք

Մեզ խոչընդոտ չէ ո՛չ մէկ բան,
Շոյտ ու ճապուկ են մեր անդամք.

---

(1) Գերմաներէն Zwetfel եւ Teufel։

Երբ ոտուըներ տկարանան՝
Նա՛և գլխով մենք կ՚ընթանամք։

### Անճրկածք

*Մենք կ՚ապրէինք ուրախ, զուարթ,*
*Մեզ համար էր ամէն հարկիք.*
*Այլ մեր մուճակք հիննալով արդ՝*
*Ստիպուած ենք քալել բոպիկ։*

### Տրջմոլիկներ

*Թեպէտ ազմի մենք զաւակներ՝*
*Անցնի՛նք առջև միշտ անվեհեր.*
*Քանի որ մեզ գովեն ամենք՝*
*Արժանի դիրք առնուլ պէտք ենք։*

### Աստղ՝ ինկած

*Երկնքէ վար ինկած, բաբէ՛,*
*Կը մնամ ես պատկառ բաղդին.*
*Ո՞վ զիս պիտի բարձրացնէ*
*Աստիճանին իմ առաջին։*

### Թաւուսք

*Տե՛ղ, տե՛ղ բացէք ոգւոց՝ հապա՛,*
*Որք չեշտակի կ՚իյնան գետին. -*
*Թեպէտ ոգիք՝ այլ կապարեայ*
*Ծանրադանդաղ մարմին ունին։*

### Փուք

*Մեծղի փիղե՛ր, կամ՝ որ նոյն է՝*
*Ոգի՛ք, առէ՛ք քայլեր թեթև.*
*Ամենէ ծանրն ահա Փուք է՝*
*Ոյր դէմք չարժէ ծաղր արդարև։*

## Արքել

Եթէ բնութիւն ու կամ ոգի
Թեթև թևեր տուին ձեզի՝
Սըլացէ՛ք ինձ հետ այն աշխարհ՝
Ուր վարդ ծաղկի ինձի համար։

### Նուագախումբ՝ ամենադաշն.

Լո՛յս, լո՛յս. պատրանք ամթող մէգեր
Կը փարատին այս լեռներէն.
Եղեգանց մէջ կը սարսռի հով...
Ցնորքն անհետ եղաւ արդէն։



# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

## ՄԹԱԳԻՆ ԼՈՅՍ։ — ԴԱՇՏ ՄԸ

### ՖԱՈՒՍԹ, ՄԷՖԻՍԹՈՖԵԼԷՍ

Ֆաուսթ.— *Խե՜ղճ Մարկըրիդ. Թշուառութեա՜ն մէջ... յուսահատութեա՜ն մէջ։ Երկա՜ր ժամանակներ երկրի վրայ մոլորո՜ւն. և հիմայ՝ շղթաներո՜ւ տակ։ Ոճրագործի պէս զնդան մը նետուած՝ այդ անոյշ ու աննըսեհ արարածը կ'սպասէ անտանելի տանջանքներու։ Գործերը մինչև հո՞ս հասնելու, հասնի՜ն մինչև հոս։— Խաբեբա՜յ մատնի՛չ ոգի...։ Եւ դու կը պահէի՜ր ինձմէ այս բաները։— Կեցի՛ր, կեցի՛ր այժմ. անզգամ գլխուդ մէջ խոլոր մոլոր դարձո՛ւր սարսափելի աչքերդ։ Կեցի՛ր և արհամարհէ՛ զիս քու անհանդուրժելի՜ ներկայութեամբդ։ Բանտի՜ մէջ, անյարիր աղէտքով մը նկուն՝ իմ խե՜ղճ Մարկըրիդս չա՜ր ոգիներու և մարդոց անողոք արդարութեա՜ն մատնուած...։ Եւ անոր այս տուայտներու միջոցին դուն զզուելի հանդէսներո՜ւ կ'առաջնորդէիր զիս, անոր յարաճուն թշուառութիւնը կը պահէի՜ր զգուշութեամբ ու կը թողու՜իր որ կորսուի անոք և անտէր։*

Մեֆիս.— *Ո՛չ առաջինը և ոչ վերջինն է Մարկըրիդ։*

Ֆաուսթ.— *Շո՛ւն, հրէ՜շ զարշելի։— Տո՛ւր, ո՛ անեզր ոգի, տո՛ւր նորէն սա անպիտանին իր շան կերպարանքը՝ որով կ'ախորժէր՝ գիշերային առջևէս քալած պահուն՝ խաղաղ անցորդին ոտից առջև գլորիլ, ու զան տապալելէ ետք նետուիլ անոր ուսերուն վրայ։*

վերադարձո՛ւր անոր իր սիրական կերպարանքը. Թող իմ առջև փորին վրայ սողայ աւազներու մէջ. ու ես այդ անիծեալ պարշելին ճմլե՛մ կոխոտե՛մ ոտքիս տակ։— Ո՛չ առաջինն ու ոչ վերջինն է եղեր Մարկըրիդ։— Ո՛ սոսկում. ո՛ քստմնելի խօսք՝ զոր մարդկային որ և է հոգի չէ կարող հասկնալ։ Ի՞նչ, այդքան բազմաթի՛ւ են ուրիշ այսպիսի աղէտներու մէջ գլորող խե՛ղճ արարածներ. ի՞նչ. առաջին զոհը՝ մահուան ճգնութիւններու մէջ՝ սոսկալի հոգեվարքի մէջ՝ միւսներու մեղքերը քաւելու համար հերիք չթուեցա՞ւ յաւիտենական ողորմութեան առջև։ Միմիայն այդ հէք արարածին՝ Մարկըրիդի տառապանքն ոսկորներուս մինչև ծուծը կը չորցնէ և կեանքս կը փճացնէ առ յաւէտ. և դո՛ւ, անօրէ՛ն, կը ժպտի՛ս անխռով ու անտարբեր՝ խորհելով թէ բիւրաւորներ կան բաղդակի՛ց անոր։

**Մեֆիս**.— Մեր մտքի առաջին սահմաններուն մէջ ենք դեռ, և ահա ձեր՝ մարդկանցդ՝ միտքը կը տկարանայ ու կը կորսուի արդէն։ Ի՞նչու ելեր կ'ընկերանաս մեզ հետ՝ եթէ կարող չես տանիլ այդ ընկերակցութեան հետեւանքներուն։ Դու կ'ուզես թռչիլ, և գլխի պտոյտի դէմ իմքզիմքդ չես պատրաստած։ Մե՞նք քեզի կանչեցինք, կամ դուն մեզի։

**Ֆաուսթ**.— Քու արիւնկզակ ատամունքդ մի՛ այդպէս կրճտեր, զզուանք կը պատճառես ինծի։— Բա՛րձր և վեսե՛մ ոգի, դու որ զիս արժանի դատեցիր դիտել զքեզ հոգեպէս, ինչո՞ւ արդեօք ինձ ընկեր տուիր այս անօրէնը՝ որ արիւնով կը ճարակի ու կ'ախորժի աւերէ ու կործանումէ։

**Մեֆիս**.— Խօսքդ լմնցուցի՞ր։

Ֆառուք.— Փրկէ՛ Մարկըրիդը, ապա թէ ոչ՝ վա՛յ քեզի. անէծքներու ամենէ անհուելին բիւրաւոր տարիներ թող ծանրանա՛յ գլխուդ վրայ։

Մէֆիս.—Ես չեմ կարող քակել արդարութեան շղթաները, և ոչ ալ խորտակել նիգեր։— Փրկէ՛ Մարկըրիդը։— Եւ ո՞վ գահավիժեց զան անդունդի մէջ, ո՞վ եղաւ պատճառ անոր կորստեան...։ Ե՞ս կամ դու։ (Ֆառուք չորս կողմը ահռելի նայուածքներ կը ձգէ։) Շա՞նթ կը փնտռես։ Բարեբաղդաբար անոր գործածութիւնը ձեզ՝ գձուձ մահկանացուացդ՝ չէ թողուած։ Դիմադրող անմեղը ջախջախել՝ բանակալներու յատուկ միջոց մ'է, զոր շատ պարագաներու մէջ կը գործածեն՝ իրենց տեղ բանալու համար։

Ֆառուք.— Տա՛ր զիս Մարկըրիդի գտնուած տեղը. անպատճառ հա՛րկ է որ փրկուի Մարկըրիտ։

Մէֆիս.— Զե՞ս խորհիր անգամ մը թէ ի՛նչ վըտանգներու կ'ենթարկես ինքզինքդ։ Միտքդ բե՛ր թէ արիւն մը՝ քու իսկ ձեռքով թափուած՝ տակաւին կը մխայ քաղաքին մէջ։ Սպանեալին տան վերև կը սաւառնին վրէժխնդիր ոգիք՝ որք կը դիտեն թէ ե՞րբ պիտի վերադառնայ մարդասպանը։

Ֆառուք.— Քեզմէ՞ պիտի լսեմ այդ խօսքը, անօրէ՛ն հրէշ. բոլոր անէծք ու բոլոր աղէտք աշխարհի թող թափին քու անզգամ գլխուդ վրայ։ Տա՛ր զիս Մարկըրիդին, կ'ըսեմ, և փրկէ՛ այդ անմեղ արարածը։

Մէֆիս.— Լա՛ւ, կը տանիմ, իսկ թէ ի՞նչ կարող եմ ընել՝ միտ դի՛ր լսածիս։ Միթէ երկինքի ու երկրի վրայ ունի՞մ ես իշխանութիւն։ Բանտապահին միտքը շփոթելով՝ ձեռքդ պիտի անցընեմ բանտի բանալին,

այլ անկէ վերջ՝ մարդկային ա՛չ մը միայն կարող է փրկել Մարկըրիտը։ Ես հսկողութիւն կ՚ընեմ. մոգական նժոյգներս պատրաստ պիտի սպասեն, և զձեզ կ՚առնեմ կը տանիմ երկուքդ ալ...։ Այսչափս միայն կուգայ ձեռքէս...։

Ֆաուսթ.— Հապա՛, մեկնի՛նք իսկոյն։

---

ԳԻՇԵՐ։— Բաց դաշտի վրայ

Ֆաուսթ, Մեֆիսթոֆելես, *սուրալով սեւ ձիերու վրայ։*

Ֆաուսթ.— *Կախաղանին շուրջ ի՞նչ է այդ խլըրտումը։*

Մեֆիս.— *Թէ՛ ինչ կ՚ընեն՝ ի՛նչ կը պատրաստեն՝ չգիտեմ ես ալ։*

Ֆաուսթ.— *Կ՚երթան, կուգան, վեր կ՚ելլեն, վար կ՚իջնեն։*

Մեֆիս.— *Վհուկներու բազմութիւն մ՚է այդ։*

Ֆաուսթ.— *Ջուր կը սրսկեն ու կը սրբագործեն։*

Մեֆիս.— *Անցնի՛նք, անցնի՛նք դէպ ի յառաջ։*

---

# ԲԱՆՏ ՄԸ

Ֆաուսթ, *բանալիներու տրցակով ու կանթեղով մը՝ երկաթեայ պզտի դրան մ՚առջեւ.— Անսովոր սարսուռ մը կը պատէ զիս. մարդկութեան բոլոր թշուառութիւնը կը ծանրանայ գլխուս վրայ։ Հո՛ս կը գտնուի Մարկըրիտ, այս խոնաւ ու սառնուկ պատին ետեւի կողմը... և խեղճին բոլոր յանցանքը քաղցր վրիպա՛նք մ՚է միայն։ Ֆա՛ուսթ, կը դողա՛ս մօտենալ. կը*

վախնա՞ս զինք տեսնել վերստին ։ Մտի՛ր, մտի՛ր շուտով . երկչոտութիւնդ անոր մահը կը փութացնէ ։

*Կը դարձունէ բանալին. Ներսը երգի ձայն։*

Անօրէն հայրս մորթեց զիս,
Ու քոյրս յիմար մի խոնաւ
Տեղ մ'ոսկորներս իմ դրաւ .
Ու մէկ ամսէն ես ահա
Իբրև թռչուն վերածնայ .
Թռչուն մը յոյժ գեղանի՝
Որ կը թռչի, կը թռչի ։

**Ֆաուսթ**, *դուռը բանալով* ։— Խե՜ղճին մտքէն չանցնիր որ իր սիրականը մտիկ կ'ընէ զինք, իր շղթաներու շառաչիւնը և յարդեայ անկողնին չփչփումը կը լսէ ։

*Կը մտնէ ։*

**Մարկրիդ**, *վերմակին տակ պահուելով* .— Ա՜խ, ա՜խ, կուգա՞ն ահա ։ Ի՜նչ ահռելի մահ ։

**Ֆաուսթ**, *ցածն ձայնով* .— Ո՛հ, լռէ՛, մի՛ հաներ ձայն . ես զքեզ ազատել կուգամ ։

**Մարկրիդ**, *դէպ ի անոր քաշկռտուելով* .— Կարեկից մա՞րդ մ'ես արդեօք, և պիտի գթա՞ս իմ թշուառութեան ։

**Ֆաուսթ** .— Մի՛ պոռար . քու ձայներով բանտի պահապանները պիտի արթնցնես ։

*Շղթաները քակել կ'ուզէ ։*

**Մարկրիդ**, *ծունկի վրայ* .— Դահի՛ճ, ո՞վ տուաւ քեզ այդ իշխանութիւնը իմ վրայ ։ Կէս գիշեր է տակաւին, և զիս տանելո՞ւ կուգաս ։ Գթա՛ ինծի, թո՛ղ

որ ապրիմ։ Վաղը առտուն կանուխ զիս մորթելը ո՞ւշ երեւցաւ քեզի։ (Ոտք կ'ելլէ։) Կենացս գարունին մէջ կը գտնուիմ, և պէտք կ'ըլլայ որ մեռնիմ արդէն։ Գեղանի էի ես, ու կորստեանս պատճառ այդ աղէտալի գեղեցկութիւնս եղաւ։ Իմ սիրականս իմ քովիկ էր, իսկ հիմայ հեռուներ՞ը կը գտնուի. պսակը խըլուած է գլխէս, ծաղիկները ցիրուցան եղած...։ Մի այդպէս բռներ զիս կոշտութեամբ. խնայէ՛ եղկելւոյս. Ի՞նչ ըրի քեզ։ Անգգայ մի՛ ըլլար արցունքներուս. ո՞վ ես դու. ես քու երեսդ չեմ տեսած երբէք։

**Ֆաուստ.**— Ի՞նչպէս սիրտս դիմանայ այս սրտաճմլիկ տեսարանին։

**Մարգրիտ.**— Իմ անձս քու ձեռքիդ տակն է, այլ թո՛ղ որ զաւակս դիեցնեմ տակաւին. կուրծքիս վրայ սեղմեցի զան բոլոր գիշեր։ Զիս վշտահար ձգելու համար ձեռքէս առին իմ սիրական զաւակս, և հիմայ ելեր կ'ըսեն թէ ե՛ս սպաններ եմ զինքը։ Ա՛լ ասկէ ետք երեսս չպիտի խնդայ երբէք։ Վրաս երգեր հաներ են ու կ'երգեն. աղէկ բան չէ՛ ըրածնին։ Հինօրեայ պատմութիւն մը կայ որ այս կերպ կը վերջանայ. այլ ի՞նչու ակնարկութիւն ընէին այդ պատմութեան։

**Ֆաուստ**, *անոր ոտքն իյնալով*.— Սիրականդ ոտքերուդ ինկած է, և կ'ուզէ փրկել զքեզ քու ցաւագին շղթաներէ։

**Մարգրիտ**, *նոյնպէս ծունր դնելով*.— Այո՛, այո՛, երկուքս ալ ծունր կրկնե՛նք սուրբերէն օգնութիւն հայցելու համար։ Դիտէ՛ սեամին վրայ, սանդղորոշներու տակը... հո՛ն կ'եռայ դժոխք. լսէ՛ չարութեան ոգւոյն ակռաներու ահռելի կրճտիւնը...։ Ի՞նչ սառ-

եղածէն աւելի կատարած եմ քու կամքդ։

**Ֆաուստ.** — Կը լուսնա՜յ, կը լուսնա՜յ ահա, սիրելի՛ս, հոգւոյս հատո՛րը։

**Մարկըրիդ.** — Կը լուսնա՜յ. ո՜հ, այո՛, կը լուսնայ ինծի համար. հարսնիքիս համա՛ր լուսնալ պէտք էր։ Մարդու բան չըսես թէ Մարգըրիտ ա՛յդքան կանուխ ներս ընդունած է զքեզ։ Ա՜խ, իմ հարսանեկան պսա՜կըս... մե՜ծ վտանգի մէջ է իմ հարսանեկան պսակս...։ Վերստին պիտի տեսնենք զիրար, այլ ոչ պարու ժամուն։ Բազմութիւնը կը խռնի. անոր ձայնը կը լսուի շարունակ. հրապարակ ու փողոցներ բաւական պիտի գա՞ն արդեօք։ Զանգակը կը կանչէ զիս, ջախջախուա՜ծ է արդարութեան գաւազանը։ Ի՜նչպէս կոշտութեամբ կը բռնեն կը կաշկանդեն զիս։ Արդէն կախաղանին վրայ եմ, վզիս վրայ ինկած դանակին արդէն ամէն մէկու վզին վրայ կ՚իյնայ։ Աշխարհ արարարած մունջ դամբանի նման պապանձեր մնացեր է։

**Ֆաուստ.** — Ա՜խ, ի՞նչու ծնած ըլլայի։

**Մեֆիստոֆելէս**, *դրան առջեւ երեւալով.* — Ելէ՛ք շուտով, ապա թէ ոչ՝ կորսուած էք։ Ո՜րքան փուճ խօսքեր, ո՜րչափ յապաղանք, ո՜րչափ տատամսութիւն։ Ձիերս անհամբեր շարժումներ կ՚ընեն, և արևը ծագելու վրայ է։

**Մարկըրիդ.** — Գետնէն ելլողն ո՞վ է։ Ո՜հ, ա՜ն է, ա՜ն. շո՜ւտ, վռնտէ՛ զինք. ինչ մտքով կուգայ այս սրբավայրս...։ Զի՛ս կ՚ուզէ, գիտեմ։

**Ֆաուստ.** — Հա՛րկ է որ ապրիս, հարկ է որ ապրիս, Մարգըրիտ։

**Մարկըրիդ.** — Արդա՛ր Աստուած, քե՛զ ապաւինած

եմ։

Մեֆիստոֆելէս՝ *Ֆաուստին*.— Եկո՛ւ, եկո՛ւ հետս, եթէ ոչ՝ անոր հետ զքեզ հոդ կը թողում դանակին տակ։

Մարգրիտ.— Քու ձեռքդ իմ, Հա՛յր երկնաւոր, փրկէ՛ զիս։ Հրեշտակնե՛ր, շրջապատեցէ՛ք զիս, պաշտպանեցէք իմ տկար անձս ձեր սուրբ թեւերով...։ Կը սոսկա՛մ քեզմէ, ո՛ Հանրի։

Մեֆիս.— Մարգրիտի դատապարտանը կը տեսնուի։

Ձայն՝ *վերէն*.— Մարգրիտ փրկուա՛ծ է։

Մեֆիստոֆելէս՝ *Ֆաուստին*.— Հո՛ս, եկո՛ւ հետս։

*Կ'աներեւութանայ Ֆաուստի հետ։*

Ձայն՝ *հեռուէն երթալով կը տկարանայ*.— Հանրի՛, Հանրի՛։

